## ՄԵՐ ՀԵՂԻՆԱԿՆԵՐԻՆ

«Լենինյան ուղիով» ամսագրի խմբագրությունը խնդրում է հոդվածներ ուղարկելիս ճշտորեն պահպանել հետևյալ կանոնները. տեսական բնույթի հոդվածները՝ 18 մեքենագրական էջից ոչ ավելի, պրակտիկ աշխատանքը և առաջավոր փորձը լուսաբանող հոդվածները՝ 8—10, նամակներն ու թղթակցությունները՝ 4—6, գրախոսականները և մամուլի տեսությունները՝ 6—8 էջ։

Անդրկովկասի ու Հայաստանի հեղափոխական շարժման թեմաներով գրված և Հայաստանում մարքսիզմ-լենինիզմի տարածմանը նվիրված հոդվածները պետք է ունենան ռուսերեն ամփոփում՝ 8 տողի չափով։

Հոդվածները պետք է մեքենագրված լինեն երկու ինտերվալով, երկու օրինակից, հեղինակի կողմից ստորագրված, նշելով հեղինակի լրիվ անունը, հայրանունը և ազգանունը, հասցեն, աշխատանքի վայրն ու հեռախոսի համարը։ Խմբագրությանը հանձնված հոդվածներից մեկը պետք է լինի մեքենագրվածի առաջին օրինակը։ Հոդվածում անհրաժեշտ է ցույց տալ մեջբերումների և թվական տվյալների աղբյուրները։

Սույն կանոնները խախտողների հոդվածները չեն տպագրվի։ Ներկայացված հոդվածը անհետևանք կմնա, եթե այն ամբողջովին կամ հատվածներով հրապարակված լինի մամուլի և ինֆորմացիայի որևէ օրգանում։

Խմբագրությանն ուղարկված հոդվածները չեն վերադարձվում։




# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

**1**

ՀՈՒՆՎԱՐ 1973

ԼՈՒՅՍ Է ՏԵՍՆՈՒՄ 1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ ԿԿ-Ի ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

«Ленинян угиов»—теоретический и политический журнал ЦК КП Армении


## Բովանդակություն

*Содержание*

## О ПЯТИДЕСЯТИЛЕТИИ СОЮЗА СОВЕТСКИХ СОЦИАЛИСТИЧЕСКИХ РЕСПУБЛИК



### СТАТЬИ



### ЗНАМЕНАТЕЛЬНЫЕ ДАТЫ



### ВОСПОМИНАНИЕ



### НАШИ ПУБЛИКАЦИИ



### ПОБЕДИВШЕЙ ДРУЖБОЙ



### ПИСЬМА И КОРРЕСПОНДЕНЦИИ









# ՍՈՎԵՏԱԿԱՆ ՍՈՑԻԱԼԻՍՏԱԿԱՆ ՀԱՆՐԱՊԵՏՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԻՈՒԹՅԱՆ ՀԻՍՆԱՄՅԱԿԻ ՄԱՍԻՆ

## ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ ԳԼԽԱՎՈՐ ՔԱՐՏՈՒՂԱՐ ԸՆԿԵՐ Լ. Ի. ԲՐԵԺՆԵՎԻ ԶԵԿՈՒՑՈՒՄԸ

### ՍՄԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ, ՍՍՀՄ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ԵՎ ՌՍՖՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ՍՈՎԵՏԻ ՀԱՄԱՏԵՂ ՀԱՆԴԻՍԱՎՈՐ ՆԻՍՏՈՒՄ, 1972 Թ. ԴԵԿՏԵՄԲԵՐԻ 21-ԻՆ

*Թանկագին ընկերնե՛ր։ Հարգելի արտասահմանյան հյուրե՛ր։*

*Այս օրերին սովետական մարդիկ առանձնակի հուզմունքով են ունկնդրում Կրեմլի Սպասկի աշտարակի ժամացույցի զողանջները։ Մոտենում է այն ժամանակը, երբ սովետական տերության գլխավոր ժամացույցը կազդարարի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման հիսուներորդ տարելիցը։ Մենք այսօր հավաքվել ենք, որպեսզի հանդիսավոր պայմաններում, մեր հարգելի արտասահմանյան հյուրերի հետ, նշենք մեր միութենական բազմազգ պետության փառապանծ հոբելյանը* (ծափահարություններ)։

*ՍՍՀՄ ստեղծումը մարդկության զարգացման նոր դարագլուխ բացած մեծ Հոկտեմբերի գործի ուղղակի շարունակությունն է, ազատ ազգերի կամավոր դաշինքի վերաբերյալ մեծ Լենինի գաղափարի պրակտիկ մարմնավորումը։*

*Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կեսդարյա պատմությունը սովետական սոցիալիստական պետության շրջանակներում միավորված բոլոր ժողովուրդների անխախտ միասնության ու բարեկամության առաջացման պատմությունն է։ Դա սոցիալիստական հեղափոխությունից ծնունդ առած և այսօր աշխարհի ամենազորեղ տերություններից մեկը դարձած պետության աննախընթաց աճի ու համակողմանի զարգացման պատմությունն է։ Դա նրա դրոշի ներքո համախմբված բոլոր հանրապետությունների, երկրում բնակվող բոլոր ազգերի և ժողովուրդների առնականացման և նրանց իսկական տնտեսական, քաղաքական ու կուլտուրական ծաղկման պատմությունն է։*

*Թանկագին հայրենակիցնե՛ր։ Ընկերնե՛ր։*

*ՍՍՀՄ հոբելյանի պատմական օրերին մենք խոր հարգանքի ու երախտագիտության խոսքերով ենք դիմում բոլոր սերունդների սովետական միլիոնավոր ու միլիոնավոր մարդկանց։ Մենք դիմում ենք նրանց, ովքեր իրենց հե-*

ղափոխական խիզախությամբ և անձնվեր աշխատանքով ստեղծել ու կառուցել են մեծ Սովետական Միությունը, նրանց, ովքեր վտանգի ժամին հերոսաբար պաշտպանել են նրա ազատությունը, անկախությունը և պատիվը պատմության մեջ եղած բոլոր պատերազմներից ամենածանր պատերազմում, նրանց, ովքեր սովետական երկիրը հասցրել են նրա փառքի ու հզորության ծաղկման և ովքեր այժմ հարթում են համայն մարդկության ուղին դեպի կոմունիստական ապագան. (երկարատև ծափահարություններ):

Մեր խորին հարգանքի և երախտագիտության զգացմունքներն ուղղված են բոլոր նրանց, ովքեր անսահմանորեն նվիրված են ազատ ժողովուրդների լենինյան դաշինքին, ում աշխատանքն ու ոգևորությունը մեր սիրելի հայրենիքը օրավուր ավելի և ավելի հզոր ու գեղեցիկ են դարձնում, պանծալի բանվոր դասակարգին և կոլտնտեսային դաշտերի աշխատավորներին, մեր մտավորականությանը, սովետական բանակի քաջարի ռազմիկներին, մեր երևելի կանանց: Մենք ողջույնի խոսքերով դիմում ենք մեր երիտասարդությանը, որը արժանի կերպով է ընդունում ավագ սերունդների էստաֆետը և որից մեծապես կախված է այն, թե ինչպիսին կլինի Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը մեր դարաշրջանի երրորդ հազարամյակի սկզբում. (ծափահարություններ):

Շնորհավո՛ր բոլորիդ մեծ տոնը, թանկագին ընկերնե՛ր. (ծափահարություններ):

Շնորհավո՛ր մեր բազմազգ միութենական սոցիալիստական պետության ոսկե հոբելյանը. (բուռն ծափահարություններ):

## I ՍՍՀՄ ԿԱԶՄԱՎՈՐՈՒՄԸ ԼԵՆԻՆՅԱՆ ԱԶԳԱՅԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՀԱՂԹԱՆԱԿՆ Է

Ընկերնե՛ր: Այս հոբելյանական օրերին միտքը, բնականաբար, ուղղվում է ժամանակի տեսակետից հեռավոր՝ 1922 թվականի դեկտեմբերյան այն օրերին, երբ Սովետների համամիութենական առաջին համագումարը ընդունեց Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորման Դեկլարացիան ու Պայմանագիրը: Եվ որքան խորամուխ ես լինում պատմական փաստերին, այնքան պարզ է դառնում լենինյան կուսակցության իմաստությունը, որը Հոկտեմբերյան հեղափոխության և նրանից հետո իրականացված սոցիալական արմատական վերափոխումների հաջողությունը ամրապնդեց իրավահավասար սովետական հանրապետությունների անխախտ միության ստեղծմամբ:

Ցարիզմի լծից, բուրժուազիայի և կալվածատերերի լծից ազատագրված ժողովուրդների սերտ համախմբումը անհրաժեշտ էր մեր երկրում հեղափոխության թշնամիների դեմ պայքարելու և սոցիալիզմի հաղթանակի համար: Հին աշխարհի խորտակումը, շահագործողական կարգերի հեղաբեկումը, պրոլետարիատի դիկտատուրայի հաստատումը, արտադրության միջոցների հանրային սեփականության հաստատումը ուղեկցվում էին դասակարգային կատաղի պայքարով, որը վերածվեց քաղաքացիական պատերազմի: Երիտասարդ սովետական երկրի վրա նետվեցին ներքին հակահեղափոխության և համաշխարհային իմպերիալիզմի ուժերը:





Միավորված հակահեղափոխությանը բանվոր դասակարգը հակադրեց հեղափոխությունից ծնված պրոլետարական համերաշխության մեծ ուժը: Երկրի կենտրոնական շրջաններում, Ուկրաինայի և Պովոլժիեի տափաստաններում, Դոնում և Կուբանում, Սպիտակ ծովի մոտ և Կովկասի լեռներում, Միջին Ասիայի ավազուտներում և Հեռավոր մերձամուրյան շրջանում, կարմիր բանակի ալ դրոշների ներքո, ուս-ուսի տված, թշնամու դեմ մարտնչեցին մեր հայրենիքի բոլոր ժողովուրդների զավակները: Նրանք միատեղ կռվի ելան հանուն խաղաղության, հացի և հողի, հանուն Սովետների իշխանության. (ծափահարություններ): Քաղաքացիական պատերազմի տարիներին, ինչպես և մեծ Հոկտեմբերի անմոռանալի օրերին, բանվոր դասակարգի, ամբողջ աշխատավոր ժողովրդի ինտերնացիոնալ համախմբվածությունը հանդիսացավ մեր հաղթանակի կենարար աղբյուրներից մեկը: Արդեն այդ առաջին հետհոկտեմբերյան տարիներին կազմավորվեց այն ժամանակ գոյություն ունեցող բոլոր սո-

վետական հանրապետությունների քաղաքական, ռազմական, տնտեսական, դիվանագիտական սերտ դաշինքը, որը ձևակերպվեց նրանց միջև կնքված մի շարք պայմանագրերով:

Քաղաքացիական պատերազմը վերջացավ: Հեղափոխության թշնամիները ջախջախվեցին: Սկսվեց խաղաղ շինարարության ժամանակաշրջանը: Բնական է, որ սովետական հանրապետություններից յուրաքանչյուրի առջև հարց ծառացավ. ինչպե՞ս անել հետո, պետականության ինչպիսի՞ ձևեր ընտրել, ինչպիսի՞ փոխհարաբերություններ հաստատել եղբայրական հանրապետությունների հետ:

Ռուսաստանի երեք հեղափոխությունների փորձը, բոլշևիկների կուսակցության ինտերնացիոնալիստական լոզունգները, հաշտության ու հողի դեկրետները, կոմունիստների ողջ քաղաքականությունը, Լենինի իսկ անունը աշխատավոր մասսաների համար դարձան հանուն նոր կյանքի մղվող համառ պայքարի խորհրդանիշ. (ծափահարություններ): Բոլոր ազգությունների բանվոր դասակարգը, աշխատավորները ձգտում էին ամրապնդել միասնությունը, որն արդեն այնքան մեծ պտուղներ էր տվել նախորդ տարիներին:

Սոցիալիզմի կառուցման ուղիով առաջ շարժվելու համար սովետական բոլոր հանրապետությունները նախ և առաջ պետք է հաղթահարեին քայքայվածությունը, վերականգնեին պատերազմների կողմից ջլատված արտադրաուժերը, հաղթահարեին հետամնացությունը, բարելավեին աշխատավորների կենսապայմանները: Այդ խնդիրները կարելի էր ավելի արագ և ավելի հաջող լուծել տնտեսությունը զարգացնելով միասնական պլանով, ռացիոնալ կերպով օգտագործելով երկրի առանձին շրջանների միջև աշխատանքի բաժանման հնարավորությունները:

Վերջապես մնում էր նաև իմպերիալիստական նոր ինտերվենցիայի սպառնալիքը: Սովետական իշխանությունը, ռազմական տեսակետից ուժեղ կապիտալիստական տերությունների կողմից շրջապատված հայրենիքի անկախությունը պաշտպանելը դժվար կլիներ առանց եղբայրական հանրապետությունների ամենասերտ դաշինքի, առանց նրանց ռազմական, քաղաքական և դիվանագիտական ջանքերի լիակատար միավորման:

Այսպիսով, բոլոր սովետական ժողովուրդների արմատական շահերը, մեր երկրում սոցիալիզմի համար մղվող պայքարի ամբողջ տրամաբանությունը պահանջում էին միասնական բազմազգ սոցիալիստական պետության կազմավորում: Բայց այդպիսի պետություն ստեղծելու համար հարկավոր էին կուսակցության կազմակերպող դերը, նրա ճիշտ քաղաքականությունը, նրա նպատակասլաց գործունեությունը:

Եվ կոմունիստների կուսակցությունը այդպիսի քաղաքականության համար ուներ անհրաժեշտ տեսական հիմք՝ ազգային հարցի վերաբերյալ մարքս-լենինյան ուսմունքը: Այդ ուսմունքը սոցիալիստական հեղափոխության տեսության կարևոր բաղկացուցիչ մասն էր:

Կոմունիստները ազգային հարցը միշտ արծարծել են դասակարգային պայքարի տեսանկյունից, գտել են, որ նրա լուծումը պետք է բխի հեղափոխության շահերից, սոցիալիզմի շահերից: Հենց դրա համար էլ կոմունիստները, սոցիալիզմի համար պայքարող մարտիկները ազգային հարցի մեջ գլխավորը համարում են ազգային պատկանելությունից անկախ աշխատավորների միավորումը ճնշման բոլոր տեսակների դեմ, նոր, աշխատավորների՝ շահագործումից զերծ հասարակարգի համար մղվող ընդհանուր պայքարում. (ծափահարություններ):



Վլադիմիր Իլյիչ Լենինը այդ մասին ասել է չափազանց պարզ. «...Մենք խորապես ինտերնացիոնալիստներ ենք և ձգտում ենք բոլոր ազգերի բանվորների ու գյուղացիների կամավոր դաշինքին» (Երկեր, հատ. 9, էջ 230):

Բայց ինչպիսի՞ հիմքի վրա կարող էր ստեղծվել այդ դաշինքը: Վ. Ի. Լենինի խոր համոզմամբ այն կարող էր ստեղծվել միայն նրա բոլոր մասնակիցների լիակատար իրավահավասարության և փոխադարձ հարգանքի հիման վրա:

«Մենք ազգերի կամավոր միություն ենք ուզում, այնպիսի միություն,— ընդգծում էր Վլադիմիր Իլյիչը,— որը ոչ մի բռնություն չթույլատրեր մի ազգի կողմից մյուսի վրա, այնպիսի միություն, որը հիմնված լիներ ամենալիակատար վստահության վրա, եղբայրական միասնության պարզ գիտակցության վրա, լիովին կամավոր համաձայնության վրա». (ծափահարություններ) (Երկեր, հատ. 30, էջ 368):

Եվ այսպես, բոլոր ազգերի աշխատավորների միասնությունը հեղափոխության հաղթանակի հիմնական նախադրյալներից մեկն է: Իր հերթին, միայն սոցիալիստական հեղափոխության հաղթանակը կարող է ապահովել ազգային ազատագրության գործի լիակատար հաղթությունը: Այդ մասին միանգամայն որոշակի ասված է արդեն Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի Կոմունիստական մանիֆեստում: «Ազգերի ներսում եղած դասակարգերի հակամարտության հետ միասին վերանալու են նաև թշնամական հարաբերությունները ազգերի միջև»:

Այսպիսին է ազգային հարցի մարքս-լենինյան դրվածքի դիալեկտիկան՝ ազգերի համախմբմանը, միասնությանը, նրանց համակողմանի մերձեցմանը հասնել սոցիալական և ազգային ճնշումից նրանց լիակատար ազատագրմամբ, նրանցից յուրաքանչյուրի զարգացման համար առավելագույն բարենպաստ պայմանների ստեղծմամբ:

Ռուսաստանում, իր յուրահատուկ պայմանների բերումով, ազգային հարցը առանձնապես սուր էր դրված: Ցարական Ռուսաստանի շահագործող դասակարգերը դիտավորյալ կերպով ազգային երկպառակություն ու թշնամանք էին սերմանում, գործելով «բաժանիր, որ տիրես» սկզբունքով, որին բոլոր դարաշրջաններում հետևել են կեղեքիչները: Թեև ցարական Ռուսաստանը այն ժամանակվա խոշորագույն տերություններից մեկն էր, նա ինքն էլ ենթարկվում էր իմպերիալիստական կողոպուտի: Այդ կապակցությամբ սովետների երկրի առջև մի կողմից ծառանում էր երկրի ներսում ազգերի և ազգությունների միջև սկզբունքորեն նոր հարաբերություններ՝ վստահության, բարեկամության, եղբայրական համագործակցության հարաբերություններ հաստատելու հարցը, իսկ մյուս կողմից՝ միջազգային հարաբերություններում սովետական երիտասարդ պետության ազգային անկախությունը պաշտպանելու և ապահովելու հարցը:

Մեր կուսակցությունը պետք է աներ այն, ինչ չէին կարող և չեն կարող անել նույնիսկ ամենազարգացած, իրենց դեմոկրատիզմով պարծեցող կապիտալիստական պետությունները: Չէ՞ որ փաստ է, որ այսօր էլ ազգային հարցը մնում է որպես ամենասուր հարցը ԱՄՆ-ում, Կանադայում, Բելգիայում, չխոսելով Մեծ Բրիտանիայի մասին, որտեղ անգլիական իմպերիալիզմը արդեն

շատ տարիներ կատաղի պատերազմ է մղում Հյուսիսային Իռլանդիայի ժողովրդի դեմ, որը պայքարի է ելել հանուն իր իրավունքների։

Սովետական պետության ծննդից բառացիորեն մեկ շաբաթ անց նշանավոր «Ռուսաստանի ժողովուրդների իրավունքների դեկլարացիայում» որպես սովետական իշխանության ազգային քաղաքականության հիմունքներ վավերագրվեցին՝ Ռուսաստանի ժողովուրդների հավասարությունն ու սուվերենությունը, ժողովուրդների ազատ ինքնորոշման իրավունքը՝ ընդհուպ մինչև անջատվելը և ինքնուրույն պետություն կազմելը, բոլոր և ամեն տեսակ ազգային և ազգային-կրոնական արտոնությունների ու սահմանափակումների վերացումը, ազգային փոքրամասնությունների ազատ զարգացումը, Ռուսաստանի ժողովուրդների կամավոր և աննիվ դաշինքի, նրանց լիակատար փոխադարձ վստահության անհրաժեշտությունը։

Հետհոկտեմբերյան առաջին տարիներին կուսակցությունը Վ. Ի. Լենինի գլխավորությամբ հսկայական աշխատանք կատարեց մասսաների շրջանում, աշխատավորներին պարզաբանելով իր քաղաքականությունը ազգային-պետական շինարարության բնագավառում։

Այդ աշխատանքին ակտիվորեն մասնակցեցին կուսակցության ականավոր գործիչներ Մ. Ի. Կալինինը և Ֆ. Է. Ձերժինսկին, Յա. Մ. Սվերդլովը և Ի. Վ. Ստալինը, Ս. Մ. Կիրովը և Գ. Կ. Օրջոնիկիձեն, Մ. Վ. Ֆրունզեն և Ս. Գ. Շահումյանը, Գ. Ի. Պետրովսկին և Ա. Գ. Չերվյակովը, Ն. Նարիմանովը և Ա. Տ. Ջանգիլդինը, Պ. Ի. Ստուչկան և Մ. Գ. Ցխակայան և ուրիշ շատ ընկերներ։

Սոցիալիստական բազմազգ պետության ստեղծման պատմական գործում կուսակցությունը ներդրեց իր հեղափոխական եռանդը, իր վիթխարի ջանքերն ու կամքը։ ՌԿ(բ)Կ X համագումարը նշեց, որ սովետական կարգերի հաստատումը, կուսակցության իրականացրած միջոցառումները «...վերափոխեցին Ռուսաստանի ազգությունների աշխատավոր մասսաների միջև եղած հարաբերությունները, խարխլեցին հին ազգային թշնամանքը, հիմնազրկեցին ազգային ճնշումը և ռուս բանվորների համար ապահովեցին նրանց այլազգի եղբայրների վստահությունը ոչ միայն Ռուսաստանում, այլև Եվրոպայում և Ասիայում, այդ վստահությունը հասցրին խանդավառության, ընդհանուր գործի համար պայքարելու պատրաստակամության»։ (Երկարատև ծափահարություններ)։

Մասսաների շրջանում կուսակցության կատարած աշխատանքը, ազգային շինարարության փորձը, որ այն ժամանակ արդեն կուտակել էին ՌՍՖՍՀ-ն, Ուկրաինան, Բելոռուսիան, Անդրկովկասյան Ֆեդերացիան, ինքնավար հանրապետությունները, միավորիչ շարժման հուժկու ալիքը, որը գալիս էր բոլոր հանրապետություններից, այս ամենը հարթում էր միասնական սոցիալիստական պետության ստեղծման ուղին։

Սակայն հարկավոր էր գտնել դաշինքի այնպիսի պետական ձևեր, ընդհանուր միութենական մարմինների և հանրապետությունների իրավունքների այնպիսի հարաբերություն, որոնք առավելագույն չափով ապահովեին միասնության գործի հաջողությունը։

1922 թվականի աշնանը այդ հարցերի շուրջը ծավալված դիսկուսիայում ի հայտ եկան տարբեր միտումներ։ Ոմանք հնարավոր էին համարում սահմանափակվել հանրապետությունների կոնֆեդերացիայի նման ինչ-որ բանով, չստեղծելով մեծ լիազորություններով օժտված միասնական համապետական մարմիններ։ Ուրիշները առաջարկում էին այսպես կոչված «ավտոնոմիզացիա», այսինքն՝ եղբայրական բոլոր հանրապետությունների մուտքը ՌՍՖՍՀ-ի կազմի մեջ՝ ինքնավարության իրավունքներով։ Հարկավոր եղավ Լենինի հանճարը, որպեսզի հաղթահարվեին այդ երկու սխալ միտումները, գտնվեր միակ ճիշտ ուղին. (ծափահարություններ)։



Վլադիմիր Իլյիչը առաջ քաշեց միասնական միութենական պետության ստեղծման պլանը՝ իրավահավասար հանրապետությունների կամավոր միության ձևով։ Այդպիսի միութենական պետության բնական հիմքը հանդիսացավ հեղափոխությունից ծնված սովետների իշխանությունը, որը գործնականում արդեն ապացուցել էր իր կենսական ուժը։ Պաշտպանելով Լենինի նախաձեռնությունը, ՌԿ(բ)Կ Կենտկոմի 1922 թվականի հոկտեմբերի 6-ի պլենումը անհրաժեշտ համարեց «պայմանագրի կնքում Ուկրաինայի, Բելոռուսիայի, Անդրկովկասյան հանրապետությունների ֆեդերացիայի և ՌՍՖՍՀ-ի միջև՝ սոցիալիստական սովետական հանրապետությունների միության մեջ նրանց միավորման մասին»։ (ծափահարություններ)։

Դեկտեմբերի 30-ին Մոսկվայում իր նիստերն սկսեց Սովետների համամիութենական առաջին համագումարը, որը, պատասխանելով Ուկրաինայի, Բելոռուսիայի, Անդրկովկասի և ՌՍՖՍՀ-ի սովետների համագումարների արած առաջարկություններին, ընդունեց պատմական որոշումը, աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության ստեղծման մասին. (Երկարատև ծափահարություններ)։

Այդ իրադարձությունը հանդիսացավ սովետական իշխանության, բանվորների և գյուղացիների իշխանության գոյության առաջին հինգ տարիների արժանի արգասիքը։ Չնայած բոլոր փոթորիկներին, ձախորդություններին ու վտանգներին, հեղափոխությունից ծնված իշխանությունը ոչ միայն դիմացավ, այլև մեր բազմազգ հայրենիքի աշխատավորներին համախմբեց միասնական, հզոր Սովետական Միության մեջ։

Նույն օրը, 1922 թվականի դեկտեմբերի 30-ին, մեր փառապանծ Մոսկվան հռչակվեց Սովետական Միության մայրաքաղաք. (ծափահարություններ)։

Մի խոսքով, 1922 թվականի դեկտեմբերի 30-ի օրը հիրավի պատմական տարեթիվ է մեր պետության կյանքում, կարևոր ուղենիշ սովետական բոլոր ժողովուրդների ճակատագրում, նրանց մեծ տոնը։ Մենք ունենք Սահմանադրության օր։ Գուցե արժե հետագայում միացնել այդ երկու տոնը և դեկտեմբերի 30-ը նշել որպես ՍՍՀՄ-ի կազմավորման օր. (բուռն, երկարատև ծափահարություններ)։ Դա կլինի մեր ժողովուրդների բարեկամության ու եղբայրության օր, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի տոն. (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Սովետական Միության ստեղծումը, մի շարք նոր միութենական հանրապետությունների կազմավորումը և ապա Միության մեջ մտնելը բազմապատկեցին մեր երկրի ժողովուրդների ուժերն ու հնարավորությունները սոցիալիզմի կառուցման գործում։ Սոցիալիստական մեծ տերությունը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, արժանավայել տեղ գրավեց համաշխարհային ասպարեզում, հսկայական օգուտ բերելով

խաղաղության, աշխարհի բոլոր ժողովուրդների ազատության և անկախության գործին. (ծափահարություններ):

Փակելով Սովետների Համառուսաստանյան X համագումարը, Մ. Ի. Կալինինը ասաց. «...Մի՞թե մեզ համար թանկ չէ ՌՍՖՍՀ-ի անունը: Նա մեզ համար թանկ է: Այդ անունը նվաճված է ռազմամարտերի բոցերում... Ես տեսնում եմ, թե ինչպես մեր գլխավերևում ծածանվում է կարմիր դրոշը հինգ սրբազան տառերով՝ ՌՍՖՍՀ: Եվ մենք, Սովետների 10-րդ համագումարի պատգամավորներս, ամբողջ Սովետական Ռուսաստանյան Ֆեդերացիայի լիազոր ներկայացուցիչներս, այս թանկ, ճակատամարտերով ու հաղթանակներով օծված, բանվորների և գյուղացիների զոհերով ամրապնդված դրոշը խոնարհում ենք Սովետական Հանրապետությունների Միության առջև. (բուռն ծափահարություններ): Մենք տեսնում ենք, թե ինչպես արդեն բարձրանում է Սովետական Հանրապետությունների Միության նոր կարմիր դրոշը: Ես, ընկերներ, այդ դրոշը տեսնում եմ, ընկեր Լենինի ձեռքին: Եվ այսպես, ընկերներ, առա՛ջ, ավելի բարձր պահենք այդ դրոշը, որպեսզի այն կարողանան տեսնել աշխարհի բոլոր աշխատավորներն ու ճնշվածները». (բուռն, երկարատև ծափահարություններ):

Ահա արդեն կես դար է, ինչ հպարտ ծածանվում է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության հաղթական կարմիր դրոշը, մարմնավորելով կոմունիստական իդեալների՝ սոցիալական արդարության, խաղաղության, ժողովուրդների բարեկամության ու եղբայրական համագործակցության իդեալների վեհությունը: Նա, այդ դրոշը, մեզ ոգեշնչել է աշխատանքում ու մարտում, մեծ ուրախությունների օրերին և ծանր փորձությունների ժամերին: Եվ մեր այժմյան հոբելյանը ասես սովետական ամբողջ ժողովրդի հանդիսավոր երդումն է՝ հավատարմության երդում մեր փառապանծ դրոշին, մեր մեծ Միությանը, հավատարմության երդում կոմունիզմի սրբազան իդեալներին. (բուռն, երկարատև ծափահարություններ):

## II ՍՍՀՄ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ԱՆԽԱԽՏ ՄԻԱՍՆՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԵՂԲԱՅՐԱԿԱՆ ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆԸ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՄԵԾ ՆՎԱՃՈՒՄՆ ԵՆ

Ընկերնե՛ր: Երկրի բոլոր ժողովուրդների միավորումը միասնական միության մեջ, միասնական բազմազգ սոցիալիստական պետության ստեղծումը ընձեռեցին մեր հայրենիքի սոցիալական, տնտեսական և կուլտուրական առաջընթացի չտեսնված հնարավորություններ: Ասես, ինքը՝ պատմությունը արագացրեց իր վազքը:

Լա՛վ խորհեցեք, ընկերներ: Սովետական Միության հիմնադրումից հետո անցած տարիներին մեր երկրի արդյունաբերական արտադրանքի ընդհանուր ծավալը աճել է 320 անգամ: Իհարկե, կարող են ասել 1922 թվականի հետ կատարված համեմատությունը հատկանշական չէ. չէ՛ որ դա հետպատերազմյան քայքայման ու սովի տարի էր: Այո՛, դա այդպես է: Բայց այդ դեպքում եկեք 1972 թվականը համեմատենք նախապատերազմյան 1940 թվականի հետ, երբ մեր երկիրն արդեն մեծապես գերազանցել էր նախահեղափոխական մակարդակը: Միայն այդ ժամանակամիջոցում Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի ծավալը աճեց 14 անգամ: Այժմ մեկ ամսում



սովետական արդյունաբերությունը ավելի շատ արտադրանք է թողարկում, քան ամբողջ 1940 թվականին. (ծափահարություններ):

Սովետական Միության տնտեսական բուռն աճը հուսալի հիմք ստեղծեց մեր երկրի բոլոր ժողովուրդների բարեկեցության և կուլտուրայի անշեղ վերելքի համար: 1940 թվականի համեմատությամբ բնակչության ռեալ եկամուտները աճեցին ավելի քան չորս անգամ, մանրածախ ապրանքաշրջանառությունը աճեց ավելի քան յոթ անգամ: Երկրում 4,7 անգամ ավելացել է բժիշկների թիվը, 6,5 անգամ՝ բարձրագույն, լրիվ և ոչ լրիվ միջնակարգ կրթություն ստացած քաղաքացիների թիվը:

Այս թվերի ետևում արտահայտվում են էկոնոմիկայում, հասարակական-քաղաքական հարաբերություններում, գաղափարախոսության և կուլտուրայի ասպարեզում կատարված այն խորագույն վերափոխումները, որոնք փոխեցին մեր ամբողջ հասարակության կերպարանքը: Դրանց թվում կարևոր տեղ են գրավում մեր երկրի բոլոր ժողովուրդների միջև կյանքում հաստատված նոր, սոցիալիստական հարաբերությունները:

Մեր կուսակցությունը լավ էր հասկանում, որ ազգային ճնշման և անհավասարության բոլոր հետևանքները հաղթահարելու համար քիչ է նույնիսկ ամենալավ, ամենաարդարացի օրենքներ ընդունելը: Հարկավոր է նաև հաղթահարել առաջներում ճնշված ազգերի և ազգությունների տնտեսական ու կուլտուրական հետամնացությունը: Այլ խոսքով, քիչ է վերացնել ազգերի իրավական անհավասարությունը, հարկավոր է վերջ տալ նաև նրանց միջև եղած փաստական անհավասարությանը: Այդ խնդրի լուծումը դարձավ կուսակցության գլխավոր քաղաքական նպատակներից մեկը:

Ամփոփելով անցած կես դարի հերոսական մեծագործությունների արդյունքները, մենք բոլոր հիմքերն ունենք ասելու, որ ազգային հարցը այնպես, ինչպես նա մեզ հասավ անցյալից, լուծված է լիակատար կերպով, լուծված է վերջնականապես և անդառնալիորեն. (բուռն ծափահարություններ): Դա մի նվաճում է, որը իրավամբ կարելի է նույն շարքը դասել ՍՍՀՄ-ում նոր հասարակարգի կառուցման այնպիսի հաղթանակների հետ, ինչպիսիք են ինդուստրացումը, կոլեկտիվացումը, կուլտուրական հեղափոխությունը:

Մեր երկրում ծնվեց և ամրապնդվեց աշխատավոր մարդկանց մեծ եղբայրությունը, որոնք, անկախ ազգային պատկանելությունից, միավորվել են դասակարգային շահերի ու նպատակների ընդհանրությամբ, ստեղծվեցին պատմության մեջ չտեսնված հարաբերություններ, որոնք մենք իրավամբ անվանում ենք ժողովուրդների լենինյան բարեկամություն. (ծափահարություններ): Այդ բարեկամությունը, ընկերներ, մեր անգնահատելի նվաճումն է, սոցիալիզմի ամենանշանակալի և յուրաքանչյուր սովետական մարդու սրտի համար ամենաթանկ նվաճումներից մեկը: Եվ այդ բարեկամությունը, մենք սովետական մարդիկ, մի՛շտ կպահպանենք աչքի լույսի պես. (երկարատև ծափահարություններ):

Այժմ, մեր Միության 50-ամյակի օրերին, ազգային հարցի լուծումը, առաջներում ճնշված ազգերի հետամնացության հաղթահարումը սովետական մարդիկ ընկալում են որպես ինքնըստինքյան հասկանալի և սովորական մի բան: Բայց պետք է վերհիշել կատարված աշխատանքի մասշտաբներն ու բարդությունը՝ գնահատելու համար բոլշևիկների կուսակցության ոչ միայն իմաստությունը, այլև նրա համարձակությունն ու հետևողականությունը, կուսակ-

*ցություն, որն իր առջև այդպիսի նպատակ դրեց և հասավ դրան.* (ծափահարություններ)։

*Մի րոպե պատկերացնենք, թե իրենցից ինչ էին ներկայացնում մեր երկրի ազգային ծայրամասերը հեղափոխության սկզման պահին։ Միջին Ասիան և Ղազախստանը իրենց տնտեսական զարգացմամբ գտնվում էին գաղութային երկրների համար սովորական մակարդակի վրա։ Բնակչության գերակշռող մեծամասնությանը վիճակված էին աղքատությունը, հիվանդությունները, տգիտությունը։ Բավական է ասել, որ տարրական գրագիտություն չունեցող մարդիկ 20-ական թվականների սկզբներին Միջին Ասիայի հանրապետություններում կազմում էին 90—96 տոկոս, իսկ Ղազախստանում՝ 82 տոկոս։ Հասարակության սոցիալական կառուցվածքը ըստ էության ֆեոդալական էր։*

*Տնտեսական հետամնացությամբ աչքի էին զարնում նաև Անդրկովկասի շատ շրջաններ և նույնիսկ կենտրոնին մոտիկ գտնվող Բելոռուսիան։ Այդ բոլոր շրջանները, բացառությամբ միայն փոքրաթիվ խոշոր քաղաքների, թե՛ իրենց տնտեսությամբ, թե՛ իրենց սոցիալական կերպարանքով, թե՛ կուլտուրայով, թե՛ աշխատավոր բնակչության կենսապայմաններով կարծես ապրում էին անցյալ դարերում։*

*Այո՛, ընկերներ, այդպիսին էր պատկերը ընդամենը կես դար առաջ, այն ժամանակներում, որոնք դեռ միլիոնավոր կենդանի վկաներ ունեն։ Մենք հարկադրված եղանք սկսելու դրանից, ընդ որում, սկսելու առաջինը, քանի որ այդ բարդագույն խնդիրների լուծման գործում Ռուսաստանի պրոլետարիատը և նրա կուսակցությունը չէին կարող հենվել որևէ մեկի փորձի վրա։ Այդպիսի փորձ այն ժամանակ պարզապես գոյություն չուներ։*

*Հենց այդ պայմաններում կուսակցությունը Լենինի նախաձեռնությամբ վերցրեց ազգային ծայրամասերի տնտեսական, կուլտուրական և սոցիալ-քաղաքական արագ զարգացման կուրս։*

*Կուսակցությունը տեսնում էր, որ այդ կուրսի պրակտիկ իրականացումը հնարավոր է միայն, եթե երկրի առավել զարգացած շրջանները և ամենից առաջ ռուս ժողովուրդը, նրա բանվոր դասակարգը մեծ և համակողմանի օգնություն ցույց տան անցյալում ճնշված ազգերին ու ազգություններին։*

*Այդպիսի օգնությունը, հանուն ազգային ծայրամասերի հետամնացության հաղթահարման, հանուն նրանց ավելի արագ զարգացման հսկայական ջանքերի և, ասենք ուղղակի, զոհաբերությունների դիմելու պատրաստակամությունը Ռուսաստանի պրոլետարիատին պատգամել էր Լենինը, որպես նրա ինտերնացիոնալ վեհ պարտքը.* (ծափահարություններ)։ *Եվ ռուս բանվոր դասակարգը, ռուս ժողովուրդը այդ պարտքը պատվով կատարեցին.* (ծափահարություններ)։ *Դա, ըստ էության, մի ամբողջ դասակարգի, ամբողջ ժողովրդի փառահեղ սխրանքն էր, որը կատարվեց հանուն ինտերնացիոնալիզմի։ Եվ դա, այդ սխրանքը, երբեք չեն մոռանա մեր հայրենիքի բոլոր ժողովուրդները.* (երկարատև ծափահարություններ)։

*Այդ սխրագործության պատմությունն սկսվեց բառացիորեն հեղափոխության առաջին օրերից։ Սովետական Ռուսաստանը, ինքը լինելով ավերված և սովահար, տակավին 1918 թվականին տասնյակ միլիոնավոր ռուբլիներ է հատկացնում Թուրքեստանում ոռոգացիոն աշխատանքներ կատարելու համար։ Դեռևս քաղաքացիական պատերազմի տարիներին որոշումներ են ընդունվում Ադրբեջանին ֆինանսական, պարենային ու տեխնիկական օգնություն ցույց տալու մասին, զգալի միջոցներ են փոխանցվում Խարկովի երկաթուղայիններին և Դոնբասի ածխահատներին, լուրջ աջակցություն է ցույց տրվում Բելոռուսիայի, Հայաստանի, Սովետական Լիտվայի և Սովետական Լատվիայի տնտեսությանը։*

*Մեր կուսակցության X համագումարը, որը ուշադրության կենտրոնում դրեց խաղաղ շինարարության խնդիրները, իր բանաձևում արձանագրեց. «Այժմ, երբ կալվածատերերն ու բուրժուազիան տապալվել են…, կուսակցության խնդիրն է օգնել ոչ վելիկոռուս ժողովուրդների աշխատավոր մասսաներին՝ հասնելու առաջ անցած կենտրոնական Ռուսաստանին…» («ՍՄԿԿ-ն համագումարների, կոնֆերանսների և Կենտկոմի պլենումների բանաձևերում ու որոշումներում», հատ. 2, էջ 252)։ Այդ կապակցությամբ համագումարի դիրեկտիվներից մեկն էր «ծայրամասերում արդյունաբերության պլանաչափ արմատավորումը՝ ֆաբրիկաները հումքի աղբյուրներին մոտեցնելու միջոցով» (նույն տեղ, էջ 253)։ Դրան համապատասխան, Անդրկովկասի, Միջին Ասիայի հանրապետություններին և Ղազախստանին անհատույց կերպով հանձնվեցին շատ ֆաբրիկաներ ու գործարաններ, այդտեղ ուղարկվեցին ինժեներա-տեխնիկական աշխատողներ, որակյալ բանվորներ ու մասնագետներ, գիտնականներ, դասատուներ, կուլտուրայի աշխատողներ։*

*ՍՍՀՄ կազմավորումը նոր էտապ նշանավորեց ազգային ծայրամասերի զարգացման գործում։ Նրանց ցույց տրվող օգնությունը ընդունեց ընդհանուր միութենական տնտեսական քաղաքականության հետևողական և համակողմանի կուրսի ձև։ Բավական է ասել, որ մի շարք միութենական հանրապետությունների բյուջեները տարիներ շարունակ իրենց ծախսային մասում ծածկվում էին գլխավորապես ի հաշիվ ընդհանուր-միութենական բյուջեից տրվող դոտացիաների։ Օրինակ, 1924—1925 թվականներին Թուրքմենական ՍՍՀ-ի բյուջեում նրա սեփական եկամուտների բաժինը կազմում էր 10 տոկոսից փոքր-ինչ ավելի։ Նույնիսկ այնպիսի խոշոր հանրապետություն, ինչպիսին է Ուկրաինան, այն ժամանակ իր սեփական միջոցների հաշվին իր բյուջեի ծախսային մասի 40 տոկոսն էլ չէր ծածկում։*

*Առավել ծանր նյութական դրության մեջ գտնվող հանրապետությունների և շրջանների բնակչությունը երկար տարիներ լրիվ կամ մասնակիորեն ազատվում էր գյուղատնտեսական և ընդհանուր-քաղաքացիական հարկերից։ Միևնույն ժամանակ գյուղատնտեսական մթերքների գնման գները սահմանվում էին այնպիսի մակարդակով, որպեսզի նպաստեին երբեմնի հետամնաց շրջանների տնտեսության զարգացմանը։*

*Եղբայրական միութենական հանրապետություններին հսկայական օգնություն ցույց տրվեց կուլտուրական շինարարության, կրթության վերելքի, կադրերի պատրաստման գործում։ Երկրի խոշորագույն կենտրոնների բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում էին ազգային հանրապետությունների, մարզերի և օկրուգների պատվիրակների մեծ ջոկատները։ Բուն հանրապետություններում բացվեցին տասնյակ համալսարաններ և ինստիտուտներ։ Կուսակցության կամքով սոցիալիստական կուլտուրական հեղափոխությունը արագորեն ծավալվեց ամենահեռավոր ծայրամասերում։*

*Կուսակցության և պետության բազմամյա աշխատանքը հրաշալի պտուղներ տվեց։ Նայեցեք այսօրվա Միջին Ասիային և Ղազախստանին։ Դուք կտեսնեք ոչ միայն Ուզբեկստանի և Թուրքմենիայի բամբակի առաջնակարգ դաշ-*

տերը, ղազախների հերկված խոպանը, Կիրգիզիայի և Տաջիկստանի ծաղկուն այգիները և անասնապահական նոր ֆերմաները։ Այդ հանրապետությունները այսօր հռչակված են ժամանակակից այնպիսի մեծ գեղեցկատես մի ամբողջ շարք քաղաքներով, ինչպիսիք են Տաշքենդը, Ալմա-Աթան, Դուշանբեն, Ֆրունզեն, Աշխաբադը։ Այստեղ աճեցին մետալուրգիայի, լեռնահանքային և ծանր արդյունաբերության այնպիսի խոշոր կենտրոններ, ինչպիսիք են Ջեզկազգանը և Կարագանդան, Պավլոդարը և Նավոյին, առաջնակարգ հիդրոկառուցվածքներ՝ Նուրեկի հիդրոէլեկտրակայանը, Կարակումի ջրանցքը և այլն։ Միջին Ասիան և Ղազախստանը դարձել են մեծ քիմիայի, նավթի ու գազի և զարգացած մեքենաշինության երկրներ։

Միության գոյության տարիներին Ղազախստանի արդյունաբերական արտադրանքի ծավալը աճել է 600 անգամ, Տաջիկստանինը՝ ավելի քան 500, Կիրգիզիայինը՝ ավելի քան 400, Ուզբեկստանինը՝ գրեթե 240, Թուրքմենիայինը՝ ավելի քան 130 անգամ։ Բամբակի համախառն բերքը 120 անգամ ավելացել է Ուզբեկստանում, 90 անգամ՝ Թուրքմենիայում։ Ղազախստանը այժմ տալիս է գրեթե 30 անգամ շատ հացահատիկ, քան 1922 թվականին։

Պակաս զարմանալի չեն Ղազախստանի և միջինասիական հանրապետությունների կուլտուրական զարգացման արդյունքները։ Նրանք փաստորեն հասել են հարյուրտոկոսանոց գրագիտության։ Նրանցից յուրաքանչյուրի բնակչության գրեթե կեսը բարձրագույն միջնակարգ (լրիվ և ոչ լրիվ) կրթություն ունեցող մարդիկ են։ Միմիայն Ուզբեկական ՍՍՀ-ում այժմ բարձրագույն և միջնակարգ մասնագիտական կրթությամբ ավելի շատ մասնագետներ են աշխատում, քան ամբողջ Սովետական Միության ժողովրդական տնտեսության մեջ 20-ական թվականների վերջերին։ Ծնվեց և ամուր կերպով ոտքի վրա կանգնեց մեծ գիտությունը. հանրապետական ակադեմիաներում բեղմնավոր կերպով աշխատում են բազմահազար գիտնականներ։

Կապիտալիստական աշխարհում շատ ավելի համեստ նվաճումները հաճախ անվանում են «հրաշք»։ Բայց նրանում, ինչ տեղի է ունեցել Սովետական Միջին Ասիայում, Սովետական Ղազախստանում, մենք, կոմունիստներս, ոչ մի գերբնական բան չենք տեսնում։ Դա, այսպես ասած, բնական հրաշք է, բնական՝ սովետական իշխանության համար, սոցիալիզմի համար, ժողովուրդների բարեկամության և եղբայրության այն հարաբերությունների համար, որոնք հաստատվել են մեր երկրում. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Դրա վկայությունն են ոչ միայն Միջին Ասիան և Ղազախստանը։ Սովետական իշխանության տարիներին հսկայի քայլերով առաջ շարժվեց Անդրկովկասյան հանրապետությունների՝ Վրաստանի, Ադրբեջանի, Հայաստանի էկոնոմիկան։ Նրանցից յուրաքանչյուրում ստեղծված են արդյունաբերության ամենաժամանակակից ճյուղեր, մեծ հաջողությունների է հասել մերձարևադարձային գյուղատնտեսությունը։ Ծաղկել ու հարստացել են Անդրկովկասի ժողովուրդների հինավուրց կուլտուրան և արվեստը։ Այստեղ գործում են ամբողջ երկրին հայտնի խոշոր գիտական ինստիտուտներ։

Սովետական ժողովուրդների եղբայրական ընտանիքում ծաղկեց Բելոռուսիան, որին առանձնապես ծանր փորձություններ վիճակվեցին Հայրենական պատերազմի տարիներին։ Բելոռուսական հողում, որը վառվում էր օկուպանտների ոտքերի տակ, նորից բարձրացան հիասքանչ քաղաքներն ու գյուղերը, աճեցին արդյունաբերական խոշոր նորակառույցներ։ Բելոռուսական արդյու-



նաբերությունը այսօր արտադրում է հրաշալի էլեկտրոնային-հաշվողական մեքենաներ, ծանր բեռնատար մեքենաներ, ժամանակակից ռադիոապարատներ, հանքային պարարտանյութեր, սինթետիկ թել։ Հանրապետությունում աշխատում է գիտնականների և կուլտուրայի գործիչների մի խոշոր ջոկատ։

Դեռ վերջերս հետամնաց ծայրամաս էր նաև Մոլդավիան։ Եթե հաշվի չառնենք պատերազմը և հետպատերազմյան առաջին այն տարիները, որոնց ընթացքում վերացվեցին ավերածության հետևանքները, ապա սովետական ժողովուրդների ընտանիքում այդ հանրապետության զարգացմանը ընկնում է քառորդ դարից ոչ ավելի։ Բայց ինչպիսի՜ վիթխարի ուղի է անցել նա այդ կարճ ժամանակամիջոցում։ Հանրապետությունը դարձել է երկրի շտեմարաններից մեկը, այգեգործության և գինեգործության խոշորագույն կենտրոններից մեկը։ Իսկ նրա արդյունաբերության արտադրանքի ծավալը աճել է 31 անգամ։

Մի խոսքով, լենինյան ազգային քաղաքականության կիրառմամբ, ամբողջ սովետական ժողովրդի լարված աշխատանքի գնով մենք հասանք այն բանին, որ հին Ռուսաստանի համար այնքան սովորական հասկացողությունը, ինչպիսին է հետամնաց ազգային ծայրամասը, դադարեց գոյություն ունենալուց. (ծափահարություններ)։ Սա, ընկերներ, մեր կուսակցության հոյակապ նվաճումն է, սոցիալիզմի, ժողովուրդների սոցիալիստական բարեկամության նվաճումը. (երկարատև ծափահարություններ)։

Դա ծառայեց նախ և առաջ մեր երկրում առաջներում ճնշված ու հետամնաց ժողովուրդների բարօրությանը։ Դա ծառայեց մեր ամբողջ մեծ սովետական հայրենիքի բարօրությանը, քանի որ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը դարձրեց է՛լ ավելի հզոր ու համախմբված, հիրավի անխորտակելի դարձրեց եղբայրական հանրապետությունների միասնությունը։

Սոցիալիստական հասարակարգը, ժողովուրդների բարեկամության և եղբայրության հարաբերությունները շատ լայն հնարավորություններ բացեցին նաև այն հանրապետությունների ու շրջանների արագ զարգացման համար, որոնք հեղափոխության սկսվելու պահին գտնվում էին տնտեսական զարգացման համեմատաբար բարձր մակարդակի վրա։

Դրանց թվին է պատկանում Ուկրաինան։ Նա առաջ էլ երկրի արդյունաբերական ու գյուղատնտեսական զարգացած մասերից մեկն էր։ Ուկրաինական կուլտուրան հենվում էր վաղնջական և հարուստ ավանդույթների վրա։ Բայց այդ բնագծերից որքա՜ն առաջ է անցել Սովետական Ուկրաինան։

Վերցրեք թեկուզ մեր նշանավոր բանվորական Դոնբասը։ Հիշեցեք հին Յուզովկան՝ հյուղակների այդ խառնակույտը, ցեխը, նեղվածքն ու անբարեկարգությունը։ Եվ համեմատեցեք նրան այսօրվա Յուզովկայի՝ Դոնեցկ ժամանակակից խոշոր քաղաքի հետ, որն ունի լայն պողոտաներ ու կանաչ զբոսայգիներ, բարեկարգ բնակելի տներ, գեղեցիկ ստադիոններ և կուլտուրայի պալատներ։ Հիշեցեք Դոնեցկի ածխահատի կյանքը հեղափոխությունից առաջ, նրա աշխատանքի ու կենցաղի ահավոր պայմանները։ Համեմատեցեք այդ կյանքը Դոնեցկի ածխահատի կամ Կրիվոյ Ռոգի հանքագործի այսօրվա կյանքի հետ։ Դրանք մարդիկ են, որոնք հպարտ են իրենց մասնագիտությամբ, շրջապատված են համաժողովրդական հարգանքով, արժանի կերպով գնահատվում են իրենց փառավոր աշխատանքի համար, վայելում ժամանակակից կուլտուրայի բոլոր բարիքները. (ծափահարություններ)։ Նման համեմատու-

թյունների հիմքեր կան ամենուրեք՝ Զապորոժիեում, Խարկովում, Դնեպրոպետրովսկում, Խերսոնի մարզում և Անդրկարպատյան մարզում։

Հզոր մետալուրգիա, բազմաճյուղ մեքենաշինություն, խոշոր նավաշինություն, քիմիական, թեթև և սննդի զարգացած ինդուստրիա՝ ահա թե ինչ է ժամանակակից ուկրաինական արդյունաբերությունը, որը ՍՍՀՄ-ի գոյության տարիներին աճել է 176 անգամ։ Այսօր Սովետական Ուկրաինան ունի նաև բարձր մեքենայացված խոշոր գյուղատնտեսություն, ունի և գիտության նշանավոր կենտրոններ, կուլտուրայի և արվեստի հոյակապ նվաճումներ։

Այս ամենը Ուկրաինայի աշխատավորության մեծ ջանքերի արգասիքն է և միևնույն ժամանակ Սովետական Միության մյուս բոլոր հանրապետությունների աշխատավորների հետ նրանց եղբայրական համագործակցության արգասիքը։ Առանց չափազանցության կարելի է ասել, որ Ուկրաինայի ժողովուրդը սովետական հանրապետությունների համագործակցությամբ միայն, նրանց հետ միավորվելով և դրանով իսկ սեփական ուժերը տասնապատկելով, կարողացավ ինչպես հարկն է դրսևորել իր ունակությունները, ասպարեզ գտնել իր աշխատանքային եռանդի և տաղանդների համար. (Երկարատև ծափահարություններ)։

Մեկ այլ ակնբախ օրինակ են մերձբալթյան հանրապետությունները՝ Լիտվան, Լատվիան և Էստոնիան։ Ինչպես հայտնի է, Միության կազմի մեջ մտնելու պահին նրանց չէր կարելի դասել հետամնաց ազգային ծայրամասերի թվին։ Բայց, բռնելով սոցիալիստական ուղին, նրանք ցույց տվեցին Միության մեջ զարգացման ամենաարագ տեմպերը։ Արդյունաբերական արտադրանքի ծավալը, 1940 թվականի համեմատությամբ, Լատվիայում աճել է 31, Էստոնիայում՝ 32, Լիտվայում՝ 37 անգամ։ Զարգացել է նրանց գյուղատնտեսությունը, ծաղկել կուլտուրան, որն ազատագրվել է գավառայնության կապանքներից և կապիտալիստական Եվրոպայի հետնաբակերում իր գոյությունը քարշ տալուց։ Այսպիսի պաշեցուցիչ աճը հնարավոր եղավ Միության մյուս հանրապետությունների հետ այդ հանրապետությունների միավորմամբ միայն։

Առանձնապես կկամենայինք խոսել զարգացման այն արդյունքների մասին, որոնց հասել է Ռուսաստանի Ֆեդերացիան՝ մեր հանրապետություններից ամենախոշորը, հավասարների մեջ առաջինը, ինչպես որ նրան իրավամբ անվանում են մեր բազմազգ երկրի բոլոր ժողովուրդները։

Այդ հանրապետությանը վիճակվել է առանձնահատուկ պատմական դեր։ Մի կողմից՝ որպես ամենազարգացածն ու խոշորը, նա դարձել է մյուսների զարգացման հենարանը, նրանց ցույց տվել անգնահատելի եղբայրական օգնություն։

Բայց, մյուս կողմից, Ռուսաստանի Ֆեդերացիան ոչ միայն Մոսկվան ու Լենինգրադն է, Գորկին և կենտրոնական Ռուսաստանի մյուս հին արդյունաբերական քաղաքները։ Դա նաև այն հանրապետությունն է, որն անցյալից ժառանգել էր իր սեփական հետամնաց ազգային շրջանները՝ սովետական իշխանության օրոք առաջին անգամ իրենց պետականությունն ստացած 16 ինքնավար հանրապետություններ, 5 ինքնավար մարզեր և 10 ազգային օկրուգներ։ Նրա տերիտորիայում բնակվում են մի քանի տասնյակ ժողովուրդներ, այդ թվում՝ բազմաթիվ այնպիսի ժողովուրդներ, որոնց ցարական ժամանակներում սպառնում էր ֆիզիկական մահացումը։

Ավելին, արդյունաբերական ու կուլտուրական կենտրոններին զուգընթաց



բազմաթիվ վաղնջական ռուսական շրջաններ ցարական Ռուսաստանից ժառանգություն էին ստացել հետամնացության մեջ թաղված խուլ ծայրագավառներ, անհամար «պոշեխոնյան վայրեր» ու «օկուրովյան քաղաքներ», որ դառն մորմոքով նկարագրել են հայրենական գրականության դասականները։

Այդ պատճառով էլ Ռուսաստանի Ֆեդերացիայի զարգացումը պահանջեց ջանքեր գործադրել տարբեր ուղղություններով։ Դա նրա առավել զարգացած կենտրոնների ու շրջանների արագ առաջադիմությունն էր, որոնք խաղում էին և շարունակում են խաղալ այն հիմնական բազայի դերը, որն ապահովում է ամբողջ սովետական հասարակության առաջընթաց շարժումը։ Դա միաժամանակ հանրապետության նշանակալի մասի հետամնացության հաղթահարումն էր, ազգային հարցի, իսկ ավելի ճիշտ՝ բազում ազգային հարցերի լուծումը, որոնք անցյալից ժառանգություն էին մնացել բուն ֆեդերացիայում։ Վերջապես, դա Սիբիրի, Հեռավոր Արևելքի ու Հյուսիսի հսկայական տերիտորիաների յուրացումն էր։

ՌՍՖՍՀ-ի աշխատավորները պատվով կատարեցին այդ մեծ խնդիրները։ Հանրապետության լայնարձակ տարածություններում՝ Ուրալի երկու կողմերին ծնունդ առան հարյուրավոր նոր, ժամանակակից քաղաքներ և արդյունաբերական կենտրոններ։



Երկրորդ երիտասարդությունը ձեռք բերեցին հանրապետության նաև հին խոշոր քաղաքները, սկսած մեր մայրաքաղաք Մոսկվայից և հեղափոխության օրրան Լենինգրադից։ Հայտնաբերվեցին և հասարակությանը ի սպաս դրվեցին նավթի, գազի, ածխի, մետաղահանքերի, ոսկու և ալմաստի բազմահարուստ բնական գանձարաններ։

Ֆեդերացիայի արդյունաբերությունը առաջ է ընթացել վիթխարի քայլերով. հիսուն տարում նրա արտադրանքի ծավալը մեծացել է ավելի քան երեք հարյուր անգամ։ Ընդ որում, միայն հետպատերազմյան տարիներին՝ ավելի քան 11 անգամ։ Պատկերացրեք, թե դա ինչ է նշանակում հանրապետության տնտեսության հսկայական մասշտաբների դեպքում։ Երկու-երեք անգամ ավելացել է գյուղատնտեսական արտադրանքի հիմնական տեսակների արտադրությունը։ Հանրահայտ են Սովետական Ռուսաստանի նվաճումները նաև գիտության, կուլտուրայի, կրթության բնագավառներում։

Ընկերնե՛ր։

Մեր կեսդարյա փորձը ակնբախորեն հաստատում է լենինյան գաղափարների իսկությունը այն առավելությունների վերաբերյալ, որ խոշոր, կենտրոնացված ժողովրդական տնտեսությունը ունի մանրատվածի համեմատությամբ։ Բոլոր հանրապետությունների տնտեսական հնարավորությունների ու ռեսուրսների միաձուլումը արագացնում է նրանցից յուրաքանչյուրի թե ամենափոքրի և թե՛ ամենախոշորի զարգացումը։ Ընդհանուր միութենական տնտեսավարումը և պլանավորումը հնարավորություն ընձեռեցին ռացիոնալ մոտեցում ցուցաբերել արտադրաուժերի տեղաբաշխմանը, ապահովեցին տնտեսական մասերի ազատություն, թույլ տվեցին խորացնել կոոպերացումն ու մասնագիտացումը, որի դեպքում ընդհանուր օգուտը մեծապես գերազանցում է գումարելիների՝ յուրաքանչյուր հանրապետության, շրջանի ու մարզի, ջանքերի սոսկական թվաբանական գումարը։

Այդ ուղին ստուգված է, այն հուսալի է, և մենք դրանով կընթանանք դեպի

նոր հաջողություններ, դեպի կոմունիստական շինարարության նոր նվաճումներ. (Երկարատև ծափահարություններ)։

Անցած կես դարում կատարված խոր ու բազմակողմանի սոցիալ-քաղաքական փոփոխությունների հիման վրա մեր հասարակությունը բարձրացել է որակապես նոր մակարդակի։ Կատարվել է մեծ Լենինի կանխատեսությունը, որն շեշտում էր, թե սոցիալիզմը «ստեղծում է մարդկային համակեցության նոր, բարձրագույն ձևեր» (Երկեր, հատ. 21, էջ 33)։ Ինչպես նշեց ՍՄԿԿ XXIV համագումարը, մեզ մոտ հաստատվել, ռեալ իրողություն է դարձել մարդկանց պատմական նոր հանրությունը՝ սովետական ժողովուրդը։

Այս հանրությունը հիմնվում է երկրի կյանքում տեղի ունեցած ինչպես նյութական, այնպես էլ հոգևոր կարգի օբյեկտիվ խոր փոփոխությունների վրա, մեր երկրում սոցիալիստական ազգերի առաջացման ու զարգացման վրա, որոնց միջև ստեղծվել են նոր տիպի հարաբերություններ։

Սովետական Միության էկոնոմիկան առանձին հանրապետությունների ու մարզերի էկոնոմիկայի գումարը չէ։ Դա վաղուց ի վեր մի միասնական տնտեսական օրգանիզմ է, որը գոյացել է բոլոր ազգերի ու ազգությունների ընդհանուր տնտեսական նպատակների ու շահերի հիման վրա։

Օրինակ՝ Ուզբեկստանի տնտեսական դրությունը կախված է ոչ միայն այդ հանրապետության բամբակի բերքից, այլև Ուրալի ու Լենինգրադի մեքենաշինարարների, Կուզբասի ածխահատների, Ղազախստանի հացահատիկային սովխոզների աշխատողների, Բելոռուսիայի էլեկտրոնային հաշվիչ մեքենաներ արտադրողների աշխատանքից։

Ճիշտ այդպես էլ Ուկրաինայի բարգավաճումը կախված է ոչ միայն նրա աշխատավորների հաջող աշխատանքից, այլև Թաթարիայի ու Բաշկիրիայի նավթագործների աշխատանքի, Կոմիի անտառային արդյունաբերության, Մոսկվայի, Գորկու և Կույբիշևի մեքենաշինության արդյունքներից։ Եվ այսպիսի հարյուրավոր ու հազարավոր օրինակներ կարելի է բերել։ Մեր աշխատանքների մասշտաբները դուրս են գալիս ոչ միայն տնտեսական շրջանների, այլև միութենական հանրապետությունների սահմաններից։

Անցած 50 տարում արմատական տեղաշարժեր են կատարվել նաև սոցիալական հարաբերությունների բնագավառում։ Սովետական Միությունում վաղուց և մեկընդմիշտ վերջ է տրված մարդու կողմից մարդու շահագործմանը։ Այժմ ամբողջ սովետական ժողովուրդը բաղկացած է սոցիալիստական դասակարգերից ու սոցիալական խմբերից։ Նա զոդված է նպատակների ու աշխարհայացքի ընդհանրությամբ։ Նրա նպատակն է կոմունիզմը, աշխարհայացքի հիմքը՝ մարքսիզմ-լենինիզմը. (ծափահարություններ)։

Այլ են դարձել բանվոր դասակարգը՝ հասարակության հիմնական արտադրուժը, արդի դարաշրջանի առավել առաջադիմական դասակարգը, կոլտնտեսային գյուղացիությունը, որը հրաժարվել է մասնավոր սեփականատիրական հոգեբանությունից, սովետական ինտելիգենցիան, որն իր բոլոր ստեղծագործական ուժերը նվիրաբերելու է կոմունիստական շինարարության գործին։

Բոլոր հանրապետություններում՝ թե՛ միութենական և թե՛ ինքնավար, բոլոր ազգային մարզերում և օկրուգներում կազմավորվել են բանվոր դասակարգի նշանակալից ջոկատներ։ Հենց բանվոր դասակարգը՝ իր էությամբ ամենաինտերնացիոնալիստական դասակարգն է վճռական դեր խաղում մեր երկ-



րի բոլոր ազգերի ու ժողովուրդների մերձեցման պրոցեսում. (ծափահարություններ)։

Արտադրական համերաշխ կոլեկտիվներում միավորված բոլոր ազգությունների բանվորները՝ ահա թե ովքեր են ստեղծում արդյունաբերական օբյեկտները, որտեղ էլ դրանք գտնվելիս լինեն, կառուցում երկաթուղիներ, գցում ջրանցքներ, նավթամուղներ ու էլեկտրահաղորդման գծեր, որոնք միասնական տնտեսական ամբողջության մեջ են միացնում մեր երկրի տարբեր շրջանները. միութենական ու ինքնավար հանրապետությունները, երկրամասերն ու մարզերը։

Սովետական հանրապետություններից յուրաքանչյուրում, յուրաքանչյուր մարզում և յուրաքանչյուր խոշոր քաղաքում կողք-կողքի ապրում ու աշխատում են շատ ազգությունների ներկայացուցիչներ։ Երկրում աճում է խառը ամուսնությունների թիվը, որը միլիոնների է հասնում։

Որքան ինտենսիվ է ազգային հանրապետություններից յուրաքանչյուրի տնտեսական ու սոցիալական զարգացումը, այնտեղ այնքան ցայտունորեն է երևան գալիս մեր բովանդակ կյանքի ինտերնացիոնալացման պրոցեսը։ Վերցնենք, օրինակ, բուռն կերպով աճող Սովետական Ղազախստանը։ Այժմ այնտեղ ղազախների հետ միասին բնակվում են միլիոնավոր ռուսներ, հարյուր հազարավոր ուկրաինացիներ, ուզբեկներ, բելոռուսներ և այլն։ Ղազախական կուլտուրան զարգանում ու հարստանում է, իր մեջ ավելի ու ավելի ներառնելով ռուսական, ուկրաինական ու մյուս կուլտուրաների ողջ լավագույնը։ Սա վա՞տ է, թե՞ լավ։ Մենք՝ կոմունիստներս, վստահությամբ պատասխանում ենք. լա՛վ է, շա՛տ լավ է. (բուռն ծափահարություններ)։

ՍՍՀՄ գոյության կես դարի ընթացքում մեզ մոտ ստեղծվել ու ծաղկել է իր ոգով և իր սկզբունքային բովանդակությամբ միասնական սովետական սոցիալիստական կուլտուրա։ Այդ կուլտուրան ներառնում է մեր հայրենիքի ժողովուրդների յուրաքանչյուր կուլտուրայի ու կենցաղի առավել արժեքավոր հատկանիշներն ու ավանդույթները։ Միևնույն ժամանակ սովետական ազգային կուլտուրաներից ամեն մեկը սնվում է ոչ միայն սեփական աղբյուրներից, այլև մյուս եղբայրական ժողովուրդների հոգևոր հարստությունից և, իր հերթին, բարերար ազդեցություն է գործում նրանց վրա, հարստացնում է նրանց։

Սովետական սոցիալիստական կուլտուրայի ազգային ձևերի բազմազանության մեջ ավելի ու ավելի նկատելի են դառնում ընդհանուր ինտերնացիոնալիստական հատկանիշները։ Ազգայինը ավելի ու ավելի է արգասավորվում մյուս եղբայրական ժողովուրդների նվաճումներով։ Սա առաջադիմական պրոցես է։ Այն համապատասխանում է սոցիալիզմի ոգուն, մեր երկրի բոլոր ժողովուրդների շահերին։ Հենց այսպես են դրվում նոր, կոմունիստական կուլտուրայի հիմքերը, որը չգիտե ազգային պատնեշներ և հավասար չափով է ծառայում բոլոր աշխատավոր մարդկանց. (ծափահարություններ)։

Այսօր մենք արդեն լիակատար իրավունքով կարող ենք ասել. մեր կուլտուրան սոցիալիստական է բովանդակությամբ, իր զարգացման գլխավոր ուղղությամբ, բազմազան է իր ազգային ձևերով և ինտերնացիոնալիստական է իր ոգով ու բնույթով։ Այսպիսով, այն բոլոր ժողովուրդների կողմից ստեղծվող հոգևոր արժեքների օրգանական համաձուլվածքն է. (երկարատև ծափահարություններ)։

Եվ դրանք, ընկերներ, վերացական ֆորմուլաներ չեն։ Դա ինքը կյանքն է։

Արդեն այսօր Թուրքմենիայում կամ Մոլդավիայում տասնյակ ու հարյուր հազարավոր մարդիկ կարդում են, գիտեն և իրենց հայրենի գրողների պես սիրում են Պուշկինին ու Չեխովին, Գորկուն ու Մայակովսկուն, Շոլոխովին ու Տվարդովսկուն, Ֆեդինին և Սանիմախին, իսկ ռուսի կամ ուկրաինացու կուլտուրայի պաշարի անկապտելի սեփականությունն են դարձել Շոթա Ռուսթավելու հնավանդ ու հավերժ ջահել էպոսը, Վիլիս Լացիսի, Աբայ Կունանբաևի, Չինգիզ Այթմատովի հիանալի ստեղծագործությունները, Յանկա Կուպալայի, Սամեդ Վուրղունի, Ռասուլ Համզատովի, Էդուարդաս Մեժելայտիսի, Մուստայ Քարիմի և շատ ու շատ ուրիշների հոյակապ բանաստեղծությունները։

Ազգամիջյան կապերի ու համագործակցության արագ աճը հանգեցնում է ռուսաց լեզվի դերի բարձրացմանը, որը դարձել է Սովետական Միության բոլոր ազգերի ու ժողովուրդների փոխադարձ հաղորդակցության միջոցը։ Եվ մեզ բոլորիս, ընկերներ, իհարկե, ուրախացնում է, որ ռուսաց լեզուն դարձել է համաշխարհային հանրաճանաչ լեզուներից մեկը. (ծափահարություններ):

Այսպիսով, ազգային միջնորմների խորտակումը, որի նշանակության մասին քանիցս խոսել է Լենինը, ՍՍՀՄ ժողովուրդների հետագա մերձեցման նախադրյալների ձևավորումը տեղի են ունենում թե՛ նյութական և թե՛ հոգևոր ոլորտներում։

Միավորող հզոր հիմք դարձան ամբողջ սովետական ժողովրդի, նրա կազմի մեջ մտնող բոլոր ազգությունների ու ազգային խմբերի պատմական ճակատագրերի ընդհանրությունը, կեսդարյա համատեղ պայքարում և համատեղ աշխատանքում ծնունդ առած ընդհանուր ավանդույթները, հայացքները, կենսափորձը։

Սովետական ժողովրդի միասնությունը իր ամենահամոզիչ արտահայտությունը գտավ հանուն սոցիալիստական հայրենիքի պաշտպանության կատարված հերոսական սխրագործություններում։

Մեր երկրի բոլոր ազգերի ու ազգությունների դաշինքն ու բարեկամությունը դիմացան այնպիսի ծանրագույն փորձության, ինչպիսին էր Հայրենական մեծ պատերազմը։ Միասնական սովետական հայրենիքի որդիներն ու դուստրերը այդ պատերազմում ոչ միայն պատվով պաշտպանեցին իրենց սոցիալիստական նվաճումները, այլև համաշխարհային քաղաքակրթությունը փրկեցին ֆաշիստական բարբարոսությունից, դրանով իսկ հզոր աջակցություն ցույց տալով ժողովուրդների ազատագրական պայքարին։ Այդ հերոսների փառքը, մեր հայրենիքի քաջարի պաշտպանների փառքը կապրի դարեդար. (բուռն, երկարատև ծափահարություններ):

Այսօր էլ մեր զինված ուժերը՝ սոցիալիստական հայրենիքի հուսալի վահանը, կոմունիզմ կառուցող ժողովրդի խաղաղ աշխատանքի երաշխիքն են։ Սովետական ժողովուրդը բարձր է գնահատում և սիրում է իր բանակը, հասկանալով, որ քանի դեռ աշխարհում գոյություն ունեն ագրեսիայի ուժեր, անկարելի է առանց լավ զինված բանակի։ Մեր բանակը հատուկ բանակ է նաև այն առումով, որ նա ինտերնացիոնալիզմի դպրոց է, Սովետական Միության բոլոր ազգերի ու ժողովուրդների եղբայրության, համերաշխության ու փոխադարձ հարգանքի զգացմունքների դաստիարակության դպրոց։ Մեր զինված ուժերը մի միասնական համերաշխ ընտանիք են, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի կենդանի մարմնավորումը. (ծափահարություններ):

Բոլոր ազգությունների սովետական մարդկանց, մարտական փառքի հի-



շատակին զուգընթաց, միավորում են նաև առաջին հնգամյակների հարվածայինների լեգենդար գործերը և հետպատերազմյան վերականգնման աշխատանքային հերոսապատումը, խոպանանվաճների սխրագործությունը և մեր օրերի մեծ կառույցներում աննախադեպ մասշտաբներով կատարվող մեծագործությունները, հյուսիսային ու արևելյան շրջանների յուրացումը։ Աշխատանքում և մարտում են ծնունդ առել ամբողջ սովետական ժողովրդի ընդհանուր ավանդույթները։ Դրանցով հպարտանում, դրանք թանկ է գնահատում ամեն մի սովետական քաղաքացի. (երկարատև ծափահարություններ):

Մեր երկրում մարդկանց պատմական նոր հանրության՝ սովետական ժողովրդի գոյավորումը մեր մեծ նվաճումն է, ընկերներ։ Մենք իրավունք ունենք դա համարելու տնտեսական ու սոցիալ-քաղաքական այն վերափոխումների յուրօրինակ ընդհանրացված արդյունքը, որ կես դարի ընթացքում կատարվել են մեր երկրում։

Լենինի կուսակցությունը, նրա կոլեկտիվ բանականությունն ու աներեր կամքը, նրա կազմակերպող և ուղղություն տվող դերը՝ ահա այն ուժը, որը նախապատրաստել է Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների մեծ Միության ստեղծումը, ղեկավարել նրա զարգացումը կես դար շարունակ և նրան վստահորեն տանում է առաջ. (բուռն ծափահարություններ):

ՍՄԿԿ-ն ինտերնացիոնալիստ լենինյանների կուսակցություն է թե՛ իր գաղափարախոսությամբ ու քաղաքականությամբ և թե՛ իր կազմով ու կառուցվածքով։ Քաղաքական կուսակցությունների պատմության մեջ բոլշևիկների կուսակցությունը առաջինն է, որը կառուցված է այնպիսի պրոլետարական կազմակերպությունների միավորման սկզբունքով, որոնցում բոլոր ազգությունների բանվորները ի մի են ձուլվել որպես միասնական մարտական ուժ։

«Կուսակցությունը,— գրել է Վ. Ի. Լենինը, դեռևս 1905 թվականին,— որպեսզի բացառի իր ազգային բնույթի վերաբերյալ ամեն մի միտք, իրեն կոչեց ոչ թե ռուսական, այլ ռուսաստանյան» (Երկեր, հատ. 8, էջ 636)։ Սովետական Միության ստեղծումից հետո ընդգծելով իր այդ առանձնահատկությունը, մեր կուսակցությունը իրեն կոչեց նոր անվամբ՝ Համամիութենական կոմունիստական (բոլշևիկների) կուսակցություն, իսկ ապա՝ Սովետական Միության կոմունիստական կուսակցություն. (երկարատև ծափահարություններ):

Կուսակցությունը միավորում է երկրի բոլոր ազգերի ու ժողովուրդների առաջավոր ներկայացուցիչներին։ Նա ՍՍՀՄ աշխատավորների մարտական ընկերության ու բարեկամության, ամբողջ սովետական ժողովրդի անխախտ միասնության առավել վառ մարմնավորումն է։ Մեր բոլոր կոմունիստները, ինչ ազգության էլ որ պատկանելիս լինեն, լենինյան միասնական կուսակցության անդամներ են։ Նրանք ունեն նույնանման իրավունքներ ու պարտականություններ, հավասար պատասխանատու են երկրի բախտի համար։

Կուսակցությունը հասավ այն բանին, որ ինտերնացիոնալիզմը մի բուռ կոմունիստների իդեալից դարձավ բոլոր ազգերի ու ժողովուրդների միլիոնավոր ու միլիոնավոր սովետական մարդկանց խոր համոզմունքն ու վարքագիծը. (ծափահարություններ): Սա իսկական հեղափոխական հեղաշրջում է հասարակական գիտակցության մեջ, որի նշանակությունը դժվար է գերագնահատել։ Եվ եթե կուսակցությանը հաջողվեց անել այդ հեղաշրջումը, ապա դա հսկայական չափով կապված է այն բանի հետ, որ նա անհաշտ է վերաբերվել իր

սեփական շարքերում լենինյան ազգային քաղաքականությունից ամեն կարգի շեղումներին, այն բանի հետ, որ կուսակցությունը վճռականորեն պայքարել է բոլոր և ամեն տեսակ թեքումների դեմ, հաստատակամորեն պաշտպանելով և ստեղծագործաբար զարգացնելով մարքսիզմ-լենինիզմի մեծ ուսմունքը։

Ինչպես հայտնի է, Լենինը, բազմիցս ընդգծելով ազգային պրոբլեմների լուծման բարդությունը, խոսել է ազգային զգացմունքների, առանձնապես փոքր ժողովուրդների ազգային զգացմունքների նկատմամբ համբերատարություն և նրբանկատություն ցուցաբերելու անհրաժեշտության մասին, աստիճանաբար նրանց ինտերնացիոնալիզմի ոգով դաստիարակելու անհրաժեշտության մասին։ Բայց յուրաքանչյուր ազգության կոմունիստներից Լենինը միշտ էլ հստակ ու սկզբունքային դիրք է պահանջել ազգային հարցում, այդտեղ թույլ չտալով ոչ մի զիջողություն ու ներողամտություն։

Լենինը միշտ էլ անխնա պայքար է մղել կոմունիստների շարքերում նացիոնալիզմի ու մեծապետական շովինիզմի ամեն տեսակ դրսևորումների դեմ։

Կարող են հարց տալ, թե արդյոք առհասարակ օրինաչա՞փ է այդօրինակ պրոբլեմների մասին խոսել հիմա, երբ արդեն 50 տարի գոյություն ունի և հաջողությամբ զարգանում է մեր բազմազգ սոցիալիստական պետությունը, երբ սովետական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիստական հասարակարգի կառուցմանը։ Այո՛, ընկերներ, օրինաչափ է։

Ինչպես արդեն ասացի, մենք ազգային հարցը լիովին լուծել ենք նրա այն կողմերով, որոնցով մեզ ժառանգություն էր մնացել նախահեղափոխական անցյալից։ Բայց ազգային հարաբերությունները հասուն սոցիալիզմի հասարակության մեջ էլ մի այնպիսի իրողություն են, որը մշտապես զարգանում է, հարուցում նոր պրոբլեմներ ու խնդիրներ։ Կուսակցությունը մշտապես այդ հարցերը պահում է իր տեսադաշտում, ժամանակին լուծում դրանք՝ ելնելով ամբողջ երկրի և յուրաքանչյուր առանձին հանրապետության շահերից, կոմունիստական շինարարության շահերից։

Չի կարելի մոռանալ, որ նացիոնալիստական նախապաշարումները, ազգային զգացմունքների ուռճացված կամ խեղաթյուրված դրսևորումը չափազանց կենսունակ, քաղաքականապես խակ մարդկանց հոգեբանության մեջ համառորեն պահպանվող երևույթ են։ Դրանք, այդ նախապաշարումները, շարունակում են պահպանվել նույնիսկ այնպիսի պայմաններում, երբ ազգերի հարաբերություններում որևէ հակամարտության օբյեկտիվ նախադրյալները վաղուց ի վեր դադարել են գոյություն ունենալ։ Չի կարելի աչքաթող անել նաև այն պարագան, որ նացիոնալիստական միտումների դրսևորումները հաճախ միահյուսվում են տեղայնության հետ, որը երբեմն նույնանում է նացիոնալիզմին։

Մենք նաև իրավունք չունենք մոռանալու, որ նացիոնալիստական վերապրուկները ամեն կերպ դրսից հրահրում են բուրժուական աշխարհի քաղաքագետներն ու պրոպագանդիստները։ Մեր դասակարգային հակառակորդները մեծագույն ճիգով են կառչում այդ բնույթի ամեն տեսակ դրսևորումներից՝ ուռճացնելով և խրախուսելով դրանք, հույս ունենալով թեկուզ մի ինչ-որ չափով թուլացնել մեր երկրի ժողովուրդների միասնությունը։

Վերջապես, ընկերներ, մեր միութենական պետության մեջ գոյություն ունեն նաև օբյեկտիվ պրոբլեմներ, ինչպես օրինակ, առանձին ազգերի ու ժողովուրդների զարգացման առավել ճիշտ ուղիներ գտնելը և նրանցից յուրաքանչյուրի շահերը ամբողջությամբ վերցված սովետական ժողովրդի ընդհանուր շահերին առավել ճիշտ կերպով զուգորդելը։ Լուծելով այս խնդիրները, մեր կուսակցությունը լիովին առաջնորդվում է լենինյան այն պատգամով, որ անհրաժեշտ է առավելագույնս ուշադիր լինել յուրաքանչյուր ազգի զարգացման նրա շահերի նկատմամբ։



Մեր երկրի ազգերի ու ժողովուրդների հետագա մերձեցումը օբյեկտիվ պրոցես է։ Կուսակցությունը դեմ է դրա արհեստական արագացմանը, դա ամենևին պետք չէ, այդ պրոցեսը թելադրվում է մեր սովետական կյանքի ողջ ընթացքով։ Կուսակցությունը միևնույն ժամանակ անթույլատրելի է համարում ազգերի մերձեցման պրոցեսը կասեցնելու ամեն մի փորձ, այդ պրոցեսը այս կամ այն պատրվակով խանգարելու, ազգային մեկուսացածությունը արհեստականորեն ամրապնդելու ամեն մի փորձ, որովհետև դա կհակասեր մեր հասարակության զարգացման գլխավոր ուղղությանը, կոմունիստների ինտերնացիոնալիստական իդեալներին ու գաղափարախոսությանը, կոմունիստական շինարարության շահերին. (երկարատև ծափահարություններ)։

Այս առթիվ Լենինը չափազանց պարզ ասել է. «Նացիոնալիզմի ոչ մի ամրապնդում պրոլետարիատը չի կարող պաշտպանել. ընդհակառակը, նա պաշտպանում է այն ամենը, ինչ նպաստում է ջնջելու ազգային տարբերությունները, տապալելու ազգային միջնորմները, այն ամենը, ինչ կապը ազգությունների միջև ավելի ու ավելի է սերտացնում...» (Երկեր, հատ. 20, էջ 25)։

Լուծելով Լենինի նշած ուղիով երկրի հետագա զարգացման հարցերը, կուսակցությունը մեծ նշանակություն է տալիս Սովետական Միության բոլոր քաղաքացիներին մշտապես, սիստեմատիկորեն և խորապես ինտերնացիոնալիզմի ու սովետական հայրենասիրության ոգով դաստիարակելու գործին։ Այս երկու հասկացությունները մեզ համար անխզելի ամբողջություն են։

Անշուշտ, սովետական աշխատավորներին դրանցով դաստիարակում են բուն սովետական կյանքը, մեր ամբողջ իրականությունը։ Բայց այստեղ անհրաժեշտ են կուսակցության, քաղաքական-գաղափարական ճակատի բոլոր աշխատողների նաև գիտակցական ջանքերը։ Այս ասպարեզում տարվող մեր աշխատանքը կոմունիզմի կառուցման ընդհանուր գործի խիստ կարևոր մասն է։

Ընկերնե՛ր։ Մեր անցած հիսնամյա ուղու արդյունքները բոլոր սովետական մարդկանց սրտերը համակում են հպարտությամբ ձեռք բերվածի համար և անսասան վստահություն են ներշնչում մեր մեծ հայրենիքի ապագայի նկատմամբ. (բուռն ծափահարություններ)։

Կեսդարյա անցած ուղին մեզ զինում է մեր կուսակցության, մեր պետության, մեր հիանալի ժողովրդի զորության նկատմամբ հաստատ համոզմունքով։ Եթե անցյալում չեղան այնպիսի արգելքներ, որոնք կանգնեցնեին դեպի սոցիալիզմ մեր հաղթարշավը, ապա այժմ, երբ Սովետական Միությունը հասել է այսօրվա բարձունքներին, արդեն ոչ ոք և ոչ մի բան չի կարող պատնեշել մեր ուղին. (բուռն, երկարատև ծափահարություններ)։ Այն ամենը, ինչ կանխագծել է Լենինի կուսակցությունը, անպայման կկատարվի։

Դարի հողմը, պատմության հողմը իր հզոր շնչով ուռցնում է սոցիալիզմի նավի առագաստները։ Եվ մեր նավը անկասելիորեն սլանում է ավելի ու ավելի հեռու, առաջ, դեպի կոմունիզմի շողշողուն հորիզոններ. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

## III ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ, ԱԶԳԱՅԻՆ ԱՆԿԱԽՈՒԹՅԱՆ ԵՎ ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՀԱՄԱՐ ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԻ ՀՈՒՍԱԼԻ ՊԱՏՎԱՐՆ Է

Ընկերնե՛ր։ Այն կես դարը, ինչ գոյություն ունի ՍՍՀՄ-ը, աչքի է ընկել աշխարհում տեղի ունեցած սոցիալ-քաղաքական այնպիսի փոփոխություններով, որոնք աննախադեպ են իրենց թափով և խորությամբ։

Սոցիալիստական հեղափոխությունը հաղթեց։ Եվրոպայի, Ասիայի ու Ամերիկայի մի շարք երկրներում առաջացավ սոցիալիզմի համաշխարհային սիստեմ։ Կապիտալիզմի աշխարհում հզոր, լավ կազմակերպված և քաղաքականապես ակտիվ ուժ դարձավ միջազգային բանվորական շարժումը։ Աշխարհի երկրների մեծ մասում կազմավորվեց և ամրապնդվեց նրա մարտական ավանգարդը՝ կոմունիստական ու բանվորական կուսակցությունները։ Մեկընդմիշտ փլուզվեց իմպերիալիզմի ստեղծած գաղութային կեղեքման սիստեմը։

Կարճ ասած՝ կես դարում աշխարհը փոխվեց։ Եվ անվիճելի է, ընկերներ, որ այդ բոլոր պատմական վերափոխումների մեջ քիչ դեր չի խաղացել Սովետական Միությունը՝ նրա գոյության բուն փաստը, մեր սոցիալիստական հասարակարգի օրինակի ուժը, մեր պետության ակտիվ միջազգային քաղաքականությունը։

Կյանքը լիովին հաստատեց մեծ Լենինի այն հետևությունը, որ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, նրա ամրապնդումը հարկավոր են «Համաշխարհային կոմունիստական պրոլետարիատին՝ պայքարելու համաշխարհային բուրժուազիայի դեմ և պաշտպանվելու նրա խարդավանքներից» (Վ. Ի. Լենին, Երկերի լիակ. ժող. հատ. 45, էջ 360)։

Այսօր «համաշխարհային կոմունիստական պրոլետարիատը», սոցիալիզմի եղբայրական երկրները, կոմունիստական կուսակցությունները, հեղափոխական-դեմոկրատական առաջադիմական կազմակերպությունները, արհմիությունները, աշխատավորության ամենալայն խավերը բոլոր աշխարհամասերում մեզ հետ միասին նշում են Սովետական Միության 50-ամյակը։

Մենք եղբայրական սոցիալիստական պետությունների մեր ընկերներից ու դաշնակիցներից, մյուս երկրների մեր համախոհներից ու բարեկամներից ջերմորեն շնորհակալ ենք նրանց բարի զգացմունքների ու համերաշխության համար։ Մեր երկրի ողջ պատմության ընթացքում մենք բազմիցս համոզվել ենք, թե մեզ համար ինչպիսի նշանակություն ունի դաշինքը միջազգային բանվոր դասակարգի հետ, կոմունիստական շարժման հետ, ամբողջ աշխարհի ազնիվ, առաջադեմ մարդկանց կողմից մեր խաղաղասեր քաղաքականությանը ցույց տրվող աջակցությունը։ Մենք բարձր ենք գնահատում այդ աջակցությունը. (Երկարատև ծափահարություններ)։

Այս նշանավոր օրերին մենք մեր մարտական զինակիցներին, մեր դասակարգային եղբայրներին, ամբողջ աշխարհի մեր բարեկամներին վերստին հավաստիացնում ենք. Սովետական Միությունը միշտ էլ հավատարիմ կլինի ժողովուրդների ազատության, սոցիալիզմի, երկրագնդի կայուն խաղաղության համար պայքարող մարտիկների ինտերնացիոնալ միասնության մեծ գործին. (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Մեր միջազգային քաղաքականության կոչումն այն է, որ ամրապնդենք խաղաղությունը, որը մեզ հարկավոր է կոմունիզմ կառուցելու համար, հարկավոր է բոլոր սոցիալիստական երկրներին, բոլոր պետությունների ժողովուրդներին։ Ուստի մենք այսուհետև ևս կհակազդենք ագրեսիայի քաղաքականությանը և կնպաստենք ամբողջ աշխարհում այն պայմանների վերացմանը, որոնք ագրեսիվ պատերազմներ են ծնում։

Մեր միջազգային քաղաքականության կոչումն ու դերն այն է, որ նպաստենք բոլոր ժողովուրդների գոյատևման, անկապտելի իրավունքների և ամենից առաջ ինքնուրույն, անկախ զարգացման իրավունքի իրականացմանը, որի պայմաններում նրանք կկարողանային օգտվել ժամանակակից քաղաքակրթության պտուղներից։

Միջազգային ասպարեզում մեր քաղաքականության կոչումն ու դերն այն է, որ միշտ գտնվենք նրանց կողմում, ովքեր պայքարում են իմպերիալիզմի դեմ, ամեն ձևի շահագործման ու ճնշման դեմ, ազատության ու մարդկային արժանապատվության համար, դեմոկրատիայի ու սոցիալիզմի համար. (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

Կարճ ասած՝ մեզ համար թանկ են մեր ժողովրդի ազատությունը, խաղաղությունն ու բարեկեցությունը, և մենք ազատություն, խաղաղություն ու բարեկեցություն ենք ցանկանում աշխարհի բոլոր ժողովուրդներին. (Ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Մեր արտաքին քաղաքականությունը իր բովանդակությամբ ու նպատակներով եղել է և կլինի դասակարգային, սոցիալիստական։ Եվ այդ քաղաքականության հենց սոցիալիստական բնույթը կանխորոշում է նրա խաղաղասիրությունը։ «Մենք գիտենք, մենք չափազանց լավ գիտենք, թե ինչպիսի անասելի թշվառություններ է բերում բանվորներին ու գյուղացիներին պատերազմը»,— ընդգծել է Վ. Ի. Լենինը (Երկեր, հատ. 33, էջ 162)։ Լենինի հետևությունը միանգամայն պարզ էր. բոլոր ուժերով պաշտպանել խաղաղությունը, ձեռնամուխ լինելով մեր խաղաղ շինարարությանը, բոլոր ուժերը գործադրել, որպեսզի այն շարունակվի անընդհատ։ Սովետական պետությունը միշտ էլ հետևել է լենինյան այդ գծին։ Սովետական իշխանության առաջին արտաքին քաղաքական ակտից՝ Հաշտության դեկրետից մինչև ՍՄԿԿ XXIV համագումարի առաջադրած խաղաղության ծրագիրը, մեր կուսակցությունն ու պետությունը անփոփոխ կերպով հետևել են ժողովուրդների խաղաղության, ազատության և անվտանգության պայքարի գլխավոր ուղղություններին։

Համարյա քառորդ դար, այսինքն՝ միութենական սովետական պետության կյանքի մոտավորապես կեսը մենք ընթանում ենք արդեն ոչ թե միայնակ, այլ եղբայրական երկրների հետ ընդհանուր շարքում։ Մենք բազմիցս արդեն հայտարարել ենք, որ միջազգային ասպարեզում մեր կարևորագույն խնդիրը համարում ենք սոցիալիզմի համաշխարհային սիստեմի ամրապնդումն ու զարգացումը։

Ժողովրդական դեմոկրատիայի երկրների գոյության արդեն առաջին, ամենադժվարին տարիներին Սովետական Միությունը վճռական դեր է խաղացել իմպերիալիստների միջամտությունից նրանց պաշտպանելու գործում, բազմիցս նրանց ցույց տվել քաղաքական ու տնտեսական անհրաժեշտ օժանդակություն։ Հաջորդ տարիներին ևս իմպերիալիզմի թշնամական հարձակումներին, այս կամ այն երկրում սոցիալիստական կարգերը խարխլելու նրա փորձերին համատեղ հակահարված հասցնելը եղել և մնում է համաշխարհային սոցիալիստական սիստեմի հաջող զարգացման կարևոր պայմաններից մեկը։

Կոլեկտիվ ջանքերի շնորհիվ, դասակարգային թշնամու դեմ մղված համառ պայքարում կոփվեց սոցիալիստական պետությունների ամրակուռ դաշինքը, գոյացավ նրանց բազմակողմանի եղբայրական համագործակցության հուսալի սիստեմը, որը մեր երկրներից յուրաքանչյուրի համար դարձավ կյանքի մի տեսակ բնական ձև։ Մենք սովորեցինք հաջողությամբ իրականացնել ամենօրյա սովորական աշխատանքը, համբերատարությամբ գտնել այն հարցերի արդարացի լուծումը, որոնք կապիտալիզմի պայմաններում անլուծելի են։ Այդ աշխատանքի ընթացքում մենք սովորեցինք գտնել յուրաքանչյուրի շահերի և ընդհանուր շահերի ճիշտ զուգորդումը, սովորեցինք համագործակցել՝ մեր ճանապարհից վերացնելով այն ամենը, ինչը կարող է խանգարել, կարող է դժվարացնել ընդհանուր առաջընթացը։

Երբ կես դար առաջ ծառացավ սովետական հանրապետությունները միասնական ՍՍՀ Միության մեջ միավորելու հարցը, Վ. Ի. Լենինը մատնանշեց, որ այդ միավորումն անհրաժեշտ է ինչպես այն բանի համար, որ դիմագրավենք իմպերիալիզմի ռազմական ճնշմանը, հեղափոխության նվաճումները պաշտպանելու, այնպես էլ այն բանի համար, որ համատեղ ջանքերով ավելի հաջող լուծենք սոցիալիզմի կառուցման խաղաղ ստեղծագործական խնդիրները։

Սկզբունքորեն նույնը վերաբերում է նաև Վարշավայի պայմանագրի, Տնտեսական փոխօգնության խորհրդի մեջ միավորված սուվերեն սոցիալիստական պետությունների եղբայրական համագործակցությանը։ Մենք այդ համագործակցությունը ստեղծել ենք նախ և առաջ նրա համար, որ դիմագրավենք իմպերիալիզմի սպառնալիքին, նրա ստեղծած ագրեսիվ ռազմական բլոկներին, որ ընդհանուր ուժերով պաշտպանենք սոցիալիզմի ու խաղաղության գործը։ Եվ մենք բոլոր հիմքերն ունենք հայտարարելու, որ սոցիալիզմի դիրքերը այսօր ամուր են, քան երբևէ, իսկ խաղաղության գործը հաղթանակ-հաղթանակի ետևից է նվաճում. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Բայց ներկայիս պայմաններում էլ սոցիալիզմի երկրների համախմբման ու սերտագույն համագործակցության անհրաժեշտությունը ոչ միայն չի նվազել, այլ, ընդհակառակը, աճել է։ Միասնությունը, համագործակցությունը, համատեղ գործողությունները մեզ այժմ հարկավոր են նախ և առաջ նրա համար, որ ավելի արագ ու արդյունավետ լուծենք սոցիալիստական հասարակության զարգացման ու կոմունիզմի կառուցման խնդիրները։ Միասնությունը, համախմբվածությունը, համագործակցությունը մեզ հարկավոր են նաև այն բանի համար, որ որքան կարելի է հաջողությամբ պաշտպանենք ու ամրապնդենք բոլոր ժողովուրդների համար այնքան անհրաժեշտ խաղաղությունը, ամրապնդենք միջազգային լարվածության թուլացումը, գործուն հակահարված հասցնենք իմպերիալիզմի ամեն կարգի ագրեսիվ գործողություններին, սոցիալիզմի շահերը ոտնահարելու ամեն կարգի փորձերին։

Ահա թե ինչու Սովետական Միությունը եղել է, է և կլինի սոցիալիզմի բոլոր երկրների համախմբման ու համագործակցության ակտիվ ջատագովը. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Այսօր այստեղ չի կարելի հատկապես կանգ չառնել եղբայրական սոցիալիստական այն պետության հետ մեր հարաբերությունների վրա, որի անունը ամբողջ աշխարհի համար դարձել է ագրեսիայի դեմ հերոսական



պայքարի խորհրդանիշ։ Ես ի նկատի ունեմ Վիետնամի Դեմոկրատական Հանրապետությունը։

Ամերիկայի պատմության մեջ ամենատևական պատերազմը Վաշինգտոնում անվանում են վիետնամական պատերազմը։ Դա ճիշտ է։ Բայց պետք է ավելացնել, որ դա նաև ամենակեղտոտ պատերազմն է այն բոլոր պատերազմներից, որ գիտե ամերիկյան պատմությունը։

Այժմ աշխարհը վկա է դարձել Վիետնամում ամերիկյան իմպերիալիզմի նոր հանցագործություններին։ Բավական չէ, որ ԱՄՆ-ը արհեստականորեն ձգձգում է պատերազմի դադարեցման համաձայնագրի ստորագրումը, դիմելով անվայել, դատապարտելի մանևրների։ Օրերս նա վերսկսեց Վիետնամի Դեմոկրատական Հանրապետության քաղաքների ռմբակոծումը և նրա նավահանգիստների ականապատումը։

ԱՄՆ-ի կառավարությունը ծանր պատասխանատվություն է կրում այդ բարբարոսական գործողությունների համար, այն բանի համար, որ շարունակում է հեղվել վիետնամական ժողովրդի արյունը։ Սովետական Միությունը, ինչպես և բոլոր խաղաղասեր պետությունները, աշխարհի բոլոր ժողովուրդները վճռականորեն և ցասումով դատապարտում են ագրեսիայի այդ ակտերը. (բուռն ծափահարություններ)։

Ամենքի համար արդեն պարզ է, որ Վիետնամում ԱՄՆ-ի պատերազմական արկածախնդրությունը ձախողում է կրել։ Եվ ոչ մի նոր չարագործություն չի ընկճի հերոսական վիետնամական ժողովրդի կամքը, չի սասանի նրա բարեկամների վճռականությունը՝ նրան համակողմանի օժանդակություն և օգնություն ցույց տալ արդարացի ազատագրական պայքարում. (երկարատև ծափահարություններ)։

Ժամանակակից գաղութարարները ինչպիսի անմիտ դաժանություններ էլ անեն, իմպերիալիզմն այլևս չունի ժողովուրդների ճակատագիրը անարգել տնօրինելու երբեմնի հնարավորությունը։ Սոցիալիզմի գործը, ազգային-ազատագրական շարժման գործը անհաղթահարելի է։ Մեր օրերում հսկայական ուժ է դարձել սոցիալիստական պետությունների, բոլոր հեղափոխականների, խաղաղության ու առաջադիմության բոլոր մարտիկների միջազգային համերաշխությունը. (ծափահարություններ)։

Կարելի էր շատ բան ասել մարտնչող Վիետնամին մեր կողմից ցույց տրվող ռազմական ու տնտեսական և այլ կարգի օգնության մասին։ Բայց այդ մասին ամենից համոզիչ ասում են վիետնամցի մեր բարեկամները՝ ՎԴՀ-ի և Հարավային Վիետնամի Հանրապետության ժամանակավոր հեղափոխական կառավարության ղեկավարները։

Հարկ է այստեղ շեշտել մի բան ևս։ Մենք միշտ համարել ենք, որ Հնդկաչինում պատերազմի օջախի վերացումը՝ Սովետական Միության արտաքին քաղաքականության կենտրոնական խնդիրներից մեկն է։ Ուստի մենք վիետնամցի բարեկամներին ակտիվ աջակցություն ենք ցույց տալիս արդարացի խաղաղ կարգավորման հասնելու նրանց ջանքերում։

Մի խոսքով՝ Վիետնամի ժողովրդի հետ մեր ինտերնացիոնալ համերաշխությունը կոնկրետ գործերի է վերածվում բոլոր գծերով։ Եվ մենք ուժ չենք խնայի, որպեսզի պահպանենք ու ամրապնդենք սովետա-վիետնամական բարեկամությունը. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Այժմ, ընկերներ, Չինաստանի հետ մեր ներկայիս հարաբերությունների

մասին, ավելի ճիշտ՝ սոցիալիստական պետությունների մեծամասնության նկատմամբ Չինաստանի դիրքի մասին։

Ահա արդեն 10 տարուց ավելի է, ինչ Չինական Ժողովրդական Հանրապետության ղեկավարները վարում են ՍՍՀՄ-ի դեմ, իսկ փաստորեն՝ ամբողջ սոցիալիստական համագործակցության դեմ պայքարի կուրս, համագործակցություն, որը նրանց կողմից շարունակում է դիտվել որպես գլխավոր խոչընդոտը իրենց մեծապետական դիտավորությունների ճանապարհին։

Այսօր իրենից ի՞նչ է ներկայացնում Պեկինի արտաքին քաղաքական կուրսը, եթե խոսելու լինենք առանց զունազարդումների։ Դա անմիտ հավակնություններ են սովետական տերիտորիայի նկատմամբ, չարանենգ զրպարտություն ՍՍՀՄ հասարակական ու պետական կարգերի, մեր խաղաղասեր արտաքին քաղաքականության նկատմամբ։ Դա սպառազինությունների մրցավազքի սահմանափակման ջանքերի, զինաթափման և միջազգային լարվածության թուլացման պայքարի բացահայտ սաբոտաժ է։ Դա սոցիալիստական լագերը և կոմունիստական շարժումը պառակտելու, ազգային ազատագրության մարտիկների շարքերում տարընթացություն մտցնելու, զարգացող երկրներին Սովետական Միությանն ու մյուս սոցիալիստական պետություններին հակադրելու մշտական փորձեր են։ Դա, վերջապես, հակասովետական հիման վրա ամեն տեսակ, նույնիսկ ամենառեակցիոն ուժերի հետ անսկզբունք բլոկ կազմելու կուրս է, թեկուզ և դրանք լինեն առավել թունդ սովետատյաց անգլիական տորիները կամ ԳՖՀ-ում գտնվող ռևանշիստական տարրերը, պորտուգալական գաղութարարները կամ Հարավային Աֆրիկայի ռասիստները։

Այժմ ամեն մի խոշոր միջազգային պրոբլեմի նկատմամբ չինական ղեկավարների մոտեցումը որոշող միակ չափանիշը ըստ էության այն ձգտումն է, որ ըստ հնարավորին մեծ վնաս հասցնեն ՍՍՀՄ-ին, ոտնահարեն սոցիալիստական համագործակցության շահերը։

Ի՞նչ կարելի է ասել այդ քաղաքականության առթիվ։

Մենք գտնում ենք, որ այն անբնական է սոցիալիստական երկրների հարաբերությունների համար, ուղղված է ոչ միայն սովետական, այլև չին ժողովրդի դեմ, համաշխարհային սոցիալիզմի շահերի դեմ, ազատագրական, հակաիմպերիալիստական պայքարի դեմ, խաղաղության և ժողովուրդների անվտանգության գործի շահերի դեմ։

Հասկանալի է, որ մենք կտրականապես մերժում ենք այդպիսի քաղաքականությունը. (Երկարատև ծափահարություններ)։

Չինական ղեկավարները հայտարարում են, թե իրենք իբր երկյուղ են կրում ՍՍՀՄ-ի կողմից ինչ-որ սպառնալիքից։ Եթե այդ հայտարարությունները երկերեսանի չեն, ապա անկարելի է հասկանալ, թե հապա ինչո՞ւ Չինաստանը այդ դեպքում անպատասխան է թողել 1969 թվականից ի վեր բազմիցս արված մեր առաջարկությունը՝ ստանձնել պարզ, հստակ և մշտական պարտավորություններ, որոնք բացառեն մի երկրի հարձակումը մյուսի վրա։ Եթե Պեկինում իրոք անհանգստանում են Չինաստանի անվտանգության համար, ապա ինչո՞ւ ՉԺՀ-ի ղեկավարությունը չհամաձայնեց հատուկ պայմանագիր կնքել ուժ չգործադրելու մասին, որի նախագիծը չինական կողմին է հանձնվել 1971 թվականի հունվարի 15-ին։ Չէ՞ որ այդ պայմանագրի նախագծում ամենայն որոշակիությամբ ասված է, որ կողմերը,— ես մեջբերում եմ,— «միմյանց դեմ չեն գործադրի զինված ուժեր և չեն օգտագործի ոչ մի տեսակ



զենք, ներառյալ՝ ա) սովորական, բ) հրթիռային, գ) միջուկային»։ Ոչ, «առասպելական» սովետական սպառնալիքի վերաբերյալ չինական ղեկավարների պնդումների ծայրը ծայրին բացահայտորեն չի բռնում։

Չինաստանի նկատմամբ մեր քաղաքականությունը լավ հայտնի է։ Այն պարզորոշ արտահայտված է կուսակցության XXIV համագումարի որոշումներում։ Մենք այն հետևողականորեն իրականացնում ենք և կիրականացնենք, որովհետև վստահ ենք այդ կուրսի ճշտությանը, որը հիմնված է ներկա և ապագա իրողությունների զգաստ հաշվառման վրա. (ծափահարություններ)։

Սովետական Միությունը Չինաստանի նկատմամբ չունի ո՛չ տերիտորիալ, ո՛չ էլ տնտեսական հավակնություններ։ Սովետական մարդիկ հիշում են, որ ՍՍՀՄ-ի ու Չինաստանի հարաբերությունները բնավ միշտ չէ, որ եղել են այնպես, ինչպես հիմա։ Հայտնի է այն մեծ օգնությունը, որ մեր երկիրը չինական կոմունիստներին ցույց է տվել ճապոնական ագրեսորների ու չինական բուրժուազիայի դեմ նրանց մղած պայքարում։ Հայտնի է նաև այն դերը, որ Չինաստանում ժողովրդա-դեմոկրատական հեղափոխության հաղթանակի համար խաղաց Չինաստանն օկուպացրած ճապոնական զորքերի ջախջախումը սովետական բանակի կողմից։ Չինաստանում երևի հիշում են, որ երիտասարդ Չինական Ժողովրդական Հանրապետության կնքած առաջին միջազգային պայմանագիրը բարեկամության, դաշինքի ու փոխադարձ օգնության պայմանագիրն էր Սովետական Միության հետ։ Այնտեղ հավանաբար դեռ հիշում են նաև այն, թե Սովետական Միությունը ժողովրդական Չինաստանին ինչպիսի հսկայական օգնություն ցույց տվեց ծանր ինդուստրիայի ստեղծման, պաշտպանության ամրապնդման, ազգային կադրերի պատրաստման գործում։

Դրանք լավ ժամանակներ էին սովետա-չինական հարաբերություններում։ Դրանք սոցիալիստական պետությունների համար բնական հարաբերություններ էին։ Եվ մենք հավատում ենք, որ մեր երկու երկրների օբյեկտիվ շահերը, պատմության օրենքները ի վերջո կհաղթեն սուբյեկտիվ քաղաքական խեղաթյուրումներին, և սովետա-չինական բարեկամությունը կվերականգնվի. (Երկարատև ծափահարություններ)։

Մենք ուզում ենք, Չինաստանը տեսնել որպես բարգավաճող սոցիալիստական պետություն, ուզում ենք նրա հետ միասին պայքարել հանուն խաղաղության՝ ընդդեմ իմպերիալիզմի։ Բայց թե դա երբ տեղի կունենա, կախված է հենց Չինաստանից։

Եվ, իհարկե, մեզ ոչ մի բան չի ստիպի նահանջել մեր սկզբունքային մարքս-լենինյան գծից, սովետական ժողովրդի պետական շահերի և ՍՍՀՄ տերիտորիայի անձեռնմխելիության հաստատ պաշտպանությունից, սոցիալիստական աշխարհում և ազատագրական շարժման մեջ ՉԺՀ-ի ղեկավարության պառակտիչ գործունեության դեմ վճռական պայքար մղելուց. (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Ամբողջ աշխարհին հայտնի է, որ, հետևելով Վ. Ի. Լենինի պատգամներին, մեր կուսակցությունը, մեր ժողովուրդը ակտիվորեն զորավիգ են ժողովուրդների ազգային-ազատագրական պայքարին և գաղութային ճնշումից ազատագրված երկրների առաջադիմական քաղաքականությանը։ Կկամենայինք ընդգծել, որ ժամանակակից պայմաններում, մեր կարծիքով, առաջադիմական է այնպիսի քաղաքականությունը, որը նշանակում է վճռական հակահարված նեոգաղութատիրությանը, պայքար երիտասարդ պե-

տությունների սուվերենության ու անկախության ամրապնդման համար, իմպերիալիզմից նրանց տնտեսական ազատագրության համար, պայքար խաղաղության, սոցիալական առաջադիմության համար և մեր ժամանակի մյուս առաջավոր ուժերի հետ, առաջին հերթին սոցիալիզմի երկրների հետ, համերաշխության ամրապնդման համար։

Այն պետությունների հետ, որոնք կանգնած են այդպիսի պլատֆորմի վրա, Սովետական Միությունը զարգացնում է բարեկամական կապերը և բազմակողմանի համագործակցությունը։

Ամբողջությամբ վերցված միջազգային իրադրության վրա դրական մեծ ազդեցություն է գործում Սովետական Միության բարեկամությունը Հնդկաստանի հետ, որը մեր մոլորակի խոշորագույն խաղաղասեր պետություններից մեկն է։

Սովետական Միությունը և Հնդկաստանը արդեն բեղմնավոր համագործակցության բավականաչափ փորձ են կուտակել։ Մենք կարծում ենք, որ այժմ, երբ մեր հարաբերությունները զարգանում են խաղաղության, բարեկամության ու համագործակցության պայմանագրի հիման վրա, դրանք է՛լ ավելի կխորանան։ Դրա օգտին է խոսում առաջադիմական հակաիմպերիալիստական ուժերի դիրքերի ամրապնդումը Հնդկաստանում։ Դրա օգտին է խոսում նաև Ինդիրա Գանդիի գլխավորած հնդկական կառավարության կուրսը. (ծափահարություններ)։

Մենք գոհունակությամբ ենք նշում, որ լավ հարաբերություններ են հաստատվել Ասիայի ու Աֆրիկայի խաղաղասեր շատ պետությունների և առաջին հերթին մեր անմիջական հարևանների՝ Աֆղանստանի, Իրանի ու Թուրքիայի հետ։ Մենք գտնում ենք, որ լավ հեռանկարներ գոյություն ունեն նաև Բանգլադեշի ու Պակիստանի հետ մեր երկրի բարի հարաբերությունների զարգացման համար։

Մենք լայն ու բազմակողմանի հարաբերություններ ենք հաստատել մի շարք արաբական երկրների հետ։ Իրադարձությունների ողջ ընթացքը ցույց տվեց, որ Սովետական Միության հետ բարեկամությունը առաջադիմական արաբական պետությունների համար անհրաժեշտ օժանդակություն և օգնություն է ապահովում նրանց ամենադժվարին պահերին։ Այս մասին լավ գիտեն թե՛ Եգիպտոսում, թե՛ Սիրիայում, թե՛ Իրաքում և թե՛ Եմենում։ Մենք բարեկամության պայմանագրեր ունենք Եգիպտոսի ու Իրաքի հետ, և մենք այդ երկրների հետ մեր հարաբերությունները կզարգացնենք հիշյալ փաստաթղթերի բազայի վրա։ Մենք լի ենք վճռականությամբ ամրապնդելու բարեկամական կապերը նաև Սիրիայի, Ալժիրի և մյուս արաբական երկրների հետ։

Այժմ միջազգային դրությունը այնպես է դասավորվել, որ նրանք, ովքեր ցանկանում են համաշխարհային խաղաղության ռեալ ամրապնդում, պետք է իրենց ջանքերը բազմապատկեն, որպեսզի Մերձավոր Արևելքում մարվի պատերազմի օջախը և վերացվեն արաբական պետությունների դեմ Իսրայելի ագրեսիայի հետևանքները։ Շատ պետություններ արտահայտվեցին Մերձավոր Արևելքի պրոբլեմը ՄԱԿ-ի անվտանգության խորհրդի հայտնի բանաձևերի հիման վրա լուծելու օգտին։ Բայց, ցավոք, միայն արտահայտվելը քիչ է։ Եթե դա ամրապնդվեր կոնկրետ քաղաքական գործողություններով, ապա Իսրայելը ստիպված կլիներ դիմելու խաղաղ կարգավորման, ճանաչելու արաբական ժողովուրդների օրինական իրավունքները։ Ինչ վերաբերում է Սովետա-



կան Միությանը, ապա այդ գործում ավանդ ներդնելու մեր պատրաստակամությունը հանրահայտ է։

Վերջին ժամանակներս զգալի զարգացել է մեր համագործակցությունը Լատինական Ամերիկայի շատ երկրների հետ։ Կասկածից վեր է, որ դա նրանց ինքնուրույնության ամրապնդման, այստեղ կատարվող հակաիմպերիալիստական ու դեմոկրատական լուրջ տեղաշարժերի հետևանքն է։ Այդ տեղաշարժերի համոզիչ վկայություններից մեկը Լատինական Ամերիկայում հեղափոխական Կուբայի քաղաքական դիրքերի նշանակալի ամրապնդումն է, մի երկրի, որի ղեկավարին՝ մեր թանկագին բարեկամ ու ընկեր Ֆիդել Կաստրոյին, մենք այսօր ողջունում ենք այս դահլիճում. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Վերջերս բարեկամական այցով մեր երկրում եղավ Չիլիի Հանրապետության պրեզիդենտ Սալվադոր Ալիենդեն։ Հակաիմպերիալիստական քաղաքականության և սոցիալական առաջադիմության ուղին վճռականորեն թևակոխած այդ պետության ղեկավարի հետ վարված բանակցությունների արդյունքները մենք գնահատում ենք որպես նոր նշանակալի քայլ մեր հարաբերությունների զարգացման ճանապարհին։ Մենք խորին համակրանքով ենք վերաբերվում Չիլիի, ինչպես նաև լատինաամերիկյան մյուս երկրների ժողովուրդների պայքարին, որ նրանք մղում են հանուն իրենց ազատության։ Մենք համոզված ենք, որ այդ պայքարը նրանց հաջողություն կբերի. (ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Լավ հայտնի է, որ զարգացած շատ երկրներում տեղի է ունենում նոր առաջադիմական ուժերի սուր պայքարը ներքին ռեակցիայի դեմ, որը օժանդակություն է ստանում դրսից, իմպերիալիզմի կողմից։ Այդ պայքարի օբյեկտներից մեկը հարաբերությունների զարգացումն է համաշխարհային սոցիալիզմի հետ։ Անցյալի փորձը, ասենք՝ նաև ընթացիկ իրադարձությունները, ցույց են տալիս, որ այս կամ այն պետության ներսում տեղի ունեցող սոցիալ-քաղաքական հակամարտությունը կարող է հանգեցնել ամեն կարգի շըրջադարձերի ու զիգզագների։ Մենք այդ բանը լավ ենք տեսնում։

Սակայն նախկին գաղութների ու կիսագաղութների հայրենասերները ազգային-ազատագրական հեղափոխությունների հիմնավոր քաղաքական դպրոց են անցել։ Եվ նրանց ստացած դասերը մասնավորապես վկայում են, որ Սովետական Միության և սոցիալիզմի մյուս երկրների հետ բարեկամությունը նպաստում է իմպերիալիզմի դեմ հաջող պայքարին, ազատագրված պետությունների իսկական անկախության ամրապնդմանը. (ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագիրը հռչակեց Սովետական Միության պատրաստակամությունը՝ բոլոր բնագավառներում խորացնելու փոխշահավետ համագործակցության հարաբերությունները այն պետությունների հետ, որոնք իրենց կողմից ձգտում են դրան։ Եվրոպայի վերաբերմամբ խնդիրը ձևակերպված է ավելի որոշակի. այդ մայրցամաքում արմատական շրջադարձ կատարել դեպի լարվածության թուլացումն ու խաղաղությունը։

Այս դրույթները լիովին համապատասխանում են նաև միջազգային կոմունիստական շարժման համատեղ պլատֆորմին։ Կոմունիստական ու բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցության փաստաթղթում պարզ ասված էր, որ կոմունիստների միասնական գործողու-

թյունների հիմնական օղակը պայքարն է հանուն ամբողջ աշխարհի խաղաղության։

Մեկուկես տարուց մի փոքր ավելի է անցել XXIV համագումարից, բայց արդեն հիմա մենք վստահությամբ կարող ենք ասել, որ մեր կուսակցությունն ու սովետական պետությունը քիչ բան չեն արել խաղաղության ծրագրի կարևորագույն դրույթների կենսագործման համար։

Մեր բարեկամների ու դաշնակիցների հետ միասին մենք շատ բան ենք արել երկրորդ համաշխարհային պատերազմից ժառանգություն մնացած պրոբլեմները կարգավորելու, աշխարհի քաղաքական կլիման առողջացնելու համար։ Բուրժուական շատ պետությունների, այդ թվում՝ կապիտալիստական Եվրոպայի երկրների մեծամասնության հետ մեր հարաբերությունները փոխադրվել են լարվածության թուլացման և փոխշահավետ համագործակցության ռելսերի վրա։

ՍՍՀՄ-ի և սոցիալիզմի եղբայրական երկրների հզորության ու ազդեցության աճի համեմատ, մեր խաղաղասեր քաղաքականության ակտիվացման, ինչպես նաև ժամանակակից աշխարհում տեղի ունեցող առաջադիմական մյուս կարևոր պրոցեսների զարգացման համեմատ կապիտալիստական շատ պետությունների քաղաքականության մեջ ավելի ու ավելի մեծ չափով են զգացվում ռեալիզմի տարրերը։ Դա ամենից առաջ վերաբերում է Ֆրանսիային, որի ղեկավարները՝ գեներալ Դը Գոլը, իսկ ապա՝ պրեզիդենտ Պոմպիդուն, արդեն մի քանի տարի առաջ որոշակի կուրս վերցրին փոխշահավետ համագործակցություն հաստատելու Սովետական Միության և սոցիալիստական մյուս պետությունների հետ։

Դա վերաբերում է Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետությանը, որտեղ կանցլեր Բրանդտի գլխավորած կառավարության ռեալիստական արտաքին քաղաքականությունը զգալի ազդեցություն է թողել Եվրոպայի իրադրության վրա։ Դա վերաբերում է նաև Ամերիկայի Միացյալ Նահանգներին այնքանով, որքանով այնտեղ պատրաստակամություն է դրսևորվում ետ կանգնելու «սառը պատերազմի» ժամանակների շատ դոգմաներից, որոնք երկար ժամանակ որոշում էին ամերիկյան ամբողջ արտաքին քաղաքականության ուղղությունը։

Այլ կերպ ասած, մեր հետևողական խաղաղասեր քաղաքականությունը և իրադարձությունների ամբողջ ընթացքը հետզհետե հանգեցնում են այն բանին, որ կապիտալիստական աշխարհը ընդունում է խաղաղ գոյակցության հիման վրա սոցիալիստական պետությունների հետ գործերը վարելու անհրաժեշտությունը։

ՍՍՀՄ-ի և ԳՖՀ-ի, Լեհաստանի և ԳՖՀ-ի միջև կնքված պայմանագրերը, որոնցում վավերացված է գոյություն ունեցող եվրոպական սահմանների անխախտելիությունը, Արևմտյան Բեռլինի վերաբերյալ համաձայնագրերի կոմպլեքսը, ինչպես նաև ԳԴՀ-ի և ԳՖՀ-ի հարաբերությունների հիմունքների վերաբերյալ պայմանագիրը, որն այսօր ստորագրվում է ԳԴՀ-ի մայրաքաղաքում, ԳԴՀ-ի դիվանագիտական շրջափակման վերջնական ճեղքումը՝ այդ ամենը խաղաղության և անվտանգության ուղիով Եվրոպայի զարգացման շատ խոշոր քայլեր են։ Եվ այդ ամենը ոչ թե ինչ-որ մեկի միակողմանի հաղթանակն է, այլ միջազգային հարաբերություններում բանականության և ռեալիզմի մեծ հաղթանակը։

Անշուշտ, Եվրոպայում դեռ կան միջազգային այնպիսի պրոբլեմներ, որոնք



իրենց լուծումն են պահանջում։ Բավական է հիշատակել, օրինակ, այնպիսի պրոբլեմներ, ինչպիսիք են Մյունխենի դիկտատը վերացնելու անհրաժեշտությունը, ինչպես նաև ԳԴՀ-ին ու ԳՖՀ-ին ՄԱԿ ընդունելը։ Այդ հարցերի լուծումը հնարավորություն կտար հաջողությամբ ավարտել Եվրոպայում միջազգային հարաբերությունները այն բանից մաքրելու պրոցեսը, ինչ նրանց վրա ծանրացած էր հետպատերազմյան ժամանակաշրջանում։

Մեր ժողովուրդը գիտե, որ երկու համաշխարհային պատերազմները իր տունն են եկել արևմուտքից, Եվրոպայից։ Մենք հիշում ենք 1941 թվականը։ Յուրաքանչյուր սովետական մարդ իր սրտում սրբորեն պահում է Հայրենական մեծ պատերազմում զոհված մեր 20 միլիոն հայրենակիցների հիշատակը։ Այդ ամենը մենք լավ ենք հիշում, ավարտելով Եվրոպայի հետպատերազմյան կառուցվածքի անսասանությունը վավերացնելու պատմական աշխատանքը։ Եվ այսօր մենք իրավունք ունենք ասելու. ժողովուրդների ազատագրական, հակաֆաշիստական պայքարի արդյունքներից ոչինչ չի կորել, մեծ հաղթանակի պտուղները պահպանվել են և ամրապնդվել. (Երկարատև ծափահարություններ):

Սովետական Միությունը հաստատակամորեն կշարունակի Եվրոպայում կայուն խաղաղության ապահովման իր գիծը, որը մենք վարում ենք հետպատերազմյան բոլոր տարիների ընթացքում և որը այժմ այնպիսի արդյունքներ է տալիս, որոնք ուրախացնում են սովետական ժողովրդին ու բոլոր նրանց, ում համար թանկ է խաղաղությունը։ Մենք գնահատում ենք մեր լավ հարաբերությունները Ֆրանսիայի հետ և դրանք կզարգացնենք անցած տարի մեր երկու պետությունների ընդունած «համագործակցության սկզբունքներին» համապատասխան։ Մենք այսուհետև էլ կվարենք տարբեր բնագավառներում ԳՖՀ-ի հետ կապերը բարելավելու և ընդլայնելու գիծ։ Մենք պատրաստ ենք զարգացնելու այն ամբողջ դրականը, ինչ մուտք է գործում կամ արդեն մտել է, օրինակ, այնպիսի պետությունների հետ մեր փոխհարաբերությունների պրակտիկան, ինչպիսիք են մեր բարի հարևան Ֆինլանդիան, ինչպես նաև Իտալիան, Սկանդինավյան երկրները և մի շարք այլ երկրներ։ Մենք պատրաստ ենք բարելավելու հարաբերությունները նաև եվրոպական այն երկրների հետ, որոնց հետ դրանք դեռ չեն կարգավորվել, իհարկե, եթե նրանք գործնականորեն այդ բանի պատրաստակամություն հանդես բերեն։

Եվրոպայի պատմության մեջ կոչված է նոր գլուխ բացելու անվտանգության ու համագործակցության հարցերին նվիրված համաեվրոպական խորհրդակցությունը, որի հրավիրման օգտին երկար տարիներ հանդես էին գալիս սոցիալիստական երկրները։ Գործն այնպես է գնում, որ այդ խորհրդակցությունը կբացվի 1973 թվականի կեսերից ոչ ուշ։

Ժողովուրդները լուրջ հույսեր են կապում համաեվրոպական խորհրդակցության անցկացման հետ։ Նրանք սպասում են, որ խորհրդակցությունը կզբաղվի Եվրոպայի խաղաղության ամրապնդման արմատական պրոբլեմներով, վերջ կդնի «սառը պատերազմի» ծնունդը հանդիսացող կասկածներին ու սարսափներին, եվրոպացիներին վստահություն կներշնչի վաղվա օրվա հանդեպ։ Կարծում ենք, որ դրա աշխատանքի հաջողությունը օգտակար, առողջ տարրեր կմտցներ նաև Եվրոպայի պետությունների և խորհրդակցության ոչ եվրոպական մասնակիցների՝ ԱՄՆ-ի ու Կանադայի, հարաբերությունների մեջ։

*Մենք կձգտենք այն բանին, որ խորհրդակցությունը պսակվի պատկառազդու արդյունքներով՝ հօգուտ նրա բոլոր մասնակիցների։*

*Բոլորին հայտնի են այն քաղաքական սկզբունքները, որոնց վրա, ՍՍՀՄ-ի և նրա դաշնակիցների կարծիքով, պետք է հիմնվի Եվրոպայի ժողովուրդների անվտանգությունը։ Դրանք են՝ պետական սահմանների անխախտելիությունը, ներքին գործերին չմիջամտելը, անկախությունը, իրավահավասարությունը, ուժի գործադրումից կամ դրա գործադրման սպառնալիքից հրաժարվելը։*

*Կարծում ենք, որ ժամանակն է օրակարգում դնել նաև տնտեսական ու կուլտուրական համագործակցության եվրոպական ծրագրի մշակումը։ Այդ առնչությամբ հարց է ծագում. կարո՞ղ են արդյոք հիմքեր գտնվել Եվրոպայում գոյություն ունեցող միջպետական առևտրա-տնտեսական կազմակերպությունների՝ Տնտեսական փոխօգնության խորհրդի և «ընդհանուր շուկայի» գործարար հարաբերությունների որևէ ձևի համար։ Հավանաբար, այո, եթե «ընդհանուր շուկայի» մեջ մտնող պետությունները ձեռնպահ մնան մյուս կողմի նկատմամբ խտրականության որևէ փորձից, նպաստեն բնական երկկողմ կապերի զարգացմանը և համաեվրոպական գործակցությանը։*

*Հաճախ կարելի է լսել, որ Արևմուտքում նշանակություն են տալիս կուլտուրայի բնագավառի համագործակցությանը և մանավանդ գաղափարների փոխանակմանը, ինֆորմացիայի ընդլայնմանը, ժողովուրդների կոնտակտներին։ Թույլ տվեք այստեղ ամենայն պարզությամբ հայտարարել. մենք նույնպես կողմնակից ենք այդ բանին, իհարկե, եթե այդպիսի համագործակցությունը իրականացվի յուրաքանչյուր երկրի սուվերենության, օրենքների ու սովորույթների հարգմամբ հանդերձ և ծառայի ժողովուրդների հոգևոր փոխհարստացմանը, նրանց միջև վստահության աճին, խաղաղության և բարիդրացիության գաղափարների հաստատմանը։ Մենք կողմ ենք տուրիստական փոխանակության ընդլայնմանը։ Մենք կողմ ենք տարբեր երկրների հասարակայնության լայն կոնտակտներին, երիտասարդության, հարակից մասնագիտությունների ներկայացուցիչների հանդիպումներին, քաղաքացիների կոլեկտիվ կամ անհատական ուղևորություններին։ Մի խոսքով, այստեղ հնարավորությունները քիչ չեն, եթե դա արվի փոխադարձ հարգանքի և միմյանց գործերին չմիջամտելու ոգով, այլ ոչ թե «սառը պատերազմի» դիրքերից։*

*Ինչպես հայտնի է, նաև բանակցություններ պետք է վարվեն Եվրոպայում, առաջին հերթին Կենտրոնական Եվրոպայի շրջանում զինված ուժերն ու սպառազինությունները կրճատելու շուրջը։ Սովետական Միությունը հանդես է գալիս այդ բանակցությունների լուրջ նախապատրաստման և արդյունավետ անցկացման օգտին։*

*Եվրոպայում խաղաղության ամրապնդումը շատ կարևոր և մեծ հարց է ամբողջ մարդկության բախտի համար։ Մենք ամբողջ եռանդով և նպատակասլացությամբ պայքարում ենք հանուն այն բանի, որ Եվրոպան, որը երկար ժամանակ հրաբխի օջախ է եղել, չկարողանա նոր պատերազմ ծնել։ Մենք պարզորոշ տեսնում ենք, որ ռեակցիան, միլիտարիզմը, տարբեր երանգների ռեվանշիստները չեն հրաժարվել Եվրոպայում գործերի ամբողջ ընթացքը ետ, դեպի անցյալը շրջելու փորձերից։ Բայց դա չի կարող իրականանալ.* (ծափահարություններ)*։ Մայր ցամաքում ուժերի հարաբերակցությունը խաղաղության և խաղաղ համագործակցության օգտին է.* (ծափահարություններ)*։ Եվ մենք հավատում ենք, որ պատերազմները կարող են վերանալ Եվրոպայի ժողովուրդների կյանքից.* (երկարատև ծափահարություններ)*։*

*Ինչ վերաբերում է Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ Սովետական Միության հարաբերություններին, ապա, ինչպես հայտնի է, ՍՄԿԿ XXIV համագումարը իր բանաձևում այդ բնագավառի մեր խնդիրները հետևյալ կերպ ձևակերպեց.*

*«Համագումարը ՍՄԿԿ Կենտկոմին հանձնարարում է այսուհետև էլ պրակտիկայում հետևողականորեն իրականացնել խաղաղ գոյակցության սկզբունքը, ընդլայնել փոխշահավետ կապերը կապիտալիստական երկրների հետ։ Սովետական Միությունը պատրաստ է զարգացնելու հարաբերությունները նաև Ամերիկայի Միացյալ Նահանգների հետ, ելնելով այն բանից, որ դա համապատասխանում է թե՛ սովետական ու ամերիկյան ժողովուրդների շահերին և թե՛ ընդհանուր խաղաղության շահերին։ Դրա հետ մեկտեղ Սովետական Միությունը միշտ վճռականորեն հանդես կգա ԱՄՆ-ի ագրեսիվ գործողությունների դեմ, ուժի քաղաքականության դեմ»։*

*Ինչպես տեսնում եք, խնդիրները միանգամայն պարզ են դրված։ Դա սոցիալիստական պետության խաղաղասիրական քաղաքականության դասակարգային գիծն է։ Կուսակցության Կենտրոնական կոմիտեն, սովետական կառավարությունը հետևողականորեն կենսագործում են այդ գիծը։*

*Սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացման գործում խոշոր քայլ եղան այս տարվա գարնանը մեզ մոտ՝ Մոսկվայում, պրեզիդենտ Նիքսոնի հետ տեղի ունեցած բանակցությունները։*

*Հատկապես կարևոր է, որ երկու կողմերը համատեղ սահմանեցին ՍՍՀՄ-ի և ԱՄՆ-ի փոխհարաբերությունների հիմունքները, ընդ որում այդ բանն արեցին, ելնելով այն համոզմունքից, որ միջուկային դարում այդ փոխհարաբերությունների համար ոչ մի այլ հիմք հնարավոր չէ, բացի խաղաղ գոյակցությունից։ Հենց դա է այս տարվա մայիսին ստորագրված սովետա-ամերիկյան համապատասխան փաստաթղթի գլխավոր իմաստը։*

*Տարբեր բնագավառներում համագործակցությունը զարգացնելու կողմերի արտահայտած պատրաստակամությունը ուղեկցվում էր գործնական քայլերով։ Ես նկատի ունեմ բարձր մակարդակի հանդիպումների ժամանակ, ինչպես նաև սովետա-ամերիկյան հետագա կոնտակտների ընթացքում տարբեր հարցերի վերաբերյալ կնքված մի շարք համաձայնագրերը։*

*Հակահրթիռային և հարձակողական ստրատեգիական միջոցների բնագավառում սովետա-ամերիկյան համաձայնագրերը ըստ էության պատմության մեջ առաջին անգամ նյութապես սահմանափակում են սպառազինությունների ժամանակակից և առավել հզոր տեսակները։ Բայց մենք մտադիր չենք բանը դրանով ավարտված համարել։ Այն, ինչի շուրջը պայմանավորվածություն ձեռք բերվեց Մոսկվայում, պետք է ամրապնդվի և զարգացվի։ Այդ հարցերի շուրջը շարունակվող բանակցությունների նպատակներից մեկն է ուղիներ գտնել ժամանակավոր համաձայնագիրը մշտականի վերածելու համար։ Ըստ երևույթին, վատ չէր լինի խորհել նաև այն մասին, թե սպառազինությունների սահմանափակումից ինչպես անցնել դրանց աստիճանական կրճատմանը, ինչպես նաև դրանց որակական կատարելագործման որևէ լիմիտի սահմանմանը։*

*Մենք ԱՄՆ-ի հետ մի շարք համաձայնագրեր ենք ստորագրել տնտեսա-*

կան հարցերի վերաբերյալ։ Դրանց կենսագործումը կարող է բազա ստեղծել այդ բնագավառում խոշոր մասշտաբի և տևական համագործակցության համար։ Դրա հետ մեկտեղ դա կնպաստեր ՍՍՀՄ-ի ու ԱՄՆ-ի հարաբերություններում քաղաքական կլիմայի առողջացմանը և կհեշտացներ հետագա առաջընթացը դեպի Սովետական Միության արտաքին քաղաքականության գլխավոր նպատակը՝ կայուն խաղաղությունը։

Եթե երկու պետությունները՝ ՍՍՀՄ-ը և ԱՄՆ-ը իրոք առաջ ընթանան Մոսկվայի բանակցությունների ժամանակ համատեղ նշված ուղիով, ապա, ինչպես մենք կարծում ենք, հետագա կոնտակտների ընթացքում հնարավոր կդառնան նոր զգալի քայլերը սովետա-ամերիկյան հարաբերությունների զարգացման ուղղությամբ՝ հօգուտ երկու երկրների ժողովուրդների և ընդհանուր խաղաղության։ Բայց, և դա հարկավոր է շեշտել ամենայն պարզությամբ, շատ բան կախված կլինի այն բանից, թե ինչպես կծավալվեն իրադարձությունները մոտ ապագայում և մասնավորապես ինչպես կլուծվի Վիետնամում պատերազմը դադարեցնելու հարցը։

Ընկերնե՛ր։ Սովետական Միությունը, ելնելով ժողովուրդների խաղաղության, բարիդրացիության և բարեկամության մեր քաղաքականության սկզբունքային հիմունքներից, առաջ է քաշել Ասիայում կոլեկտիվ անվտանգության սիստեմ ստեղծելու գաղափարը։ Որոշ մայրաքաղաքներից այն պնդումներն են տարածվում, թե իբր մեր առաջարկությունը նպատակ ունի «զլոպել» կամ «շրջապատել» Չինաստանը։ Այդօրինակ պնդումները զուրկ են որևէ հիմքից։ Մենք բանն այնպես ենք պատկերացնում, որ ՉԺՀ-ն կդառնա այդ սիստեմի լիիրավ մասնակիցը։

Եկող տարի պետք է տեղի ունենան սովետա-ճապոնական կարևոր բանակցություններ։ Դրանց նպատակն է կարգավորել երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակներից մնացած հարցերը, պայմանագրային հիմքի վրա դնել մեր երկրների հարաբերությունները։ Մենք ձգտում ենք փոխադարձաբար ընդունելի պայմանավորվածություն ձեռք բերել քննարկվող բոլոր հարցերի շուրջը։ Սակայն պարզ է, որ բանակցություններից դրական արդյունքներ կարելի է սպասել միայն այն դեպքում, եթե նույնպիսի ձգտում հանդես բերի նաև ճապոնական կողմը։ Սովետական Միությունը իր կողմից հանդես է գալիս Ճապոնիայի հետ իսկական բարիդրացիության հարաբերություններ հաստատելու օգտին։

Սովետական Միությունը իր գոյության առաջին տարիներից պայքար է մղում հանուն զինաթափման։ Մեր երկրի ամենաակտիվ մասնակցությամբ վերջին տասնամյակում հաջողվել է հասնել մի շարք կարևոր պայմանագրերի կնքման՝ այնպիսի հարցերի վերաբերյալ, ինչպիսիք են միջուկային զենքի փորձարկումների արգելումը, դրա չտարածումը, մանրէական զենքի արգելումը և այլն։ Այդ ամենը, անկասկած, զինաթափման տարեգրության միայն առաջին էջերն են։ Մենք բոլոր կառավարություններին, աշխարհի բոլոր ժողովուրդներին կոչ ենք անում համատեղ լրացնել այդ տարեգրության հաջորդ էջերը, ընդհուպ մինչև վերջինը՝ ընդհանուր ու լրիվ զինաթափումը. (Երկարատև ծափահարություններ)։

Միջազգային կյանքի խոշոր իրադարձություն եղավ Գլխավոր ասամբլեայի կողմից, դարձյալ մեր նախաձեռնությամբ, ընդունված՝ միջազգային հարաբերություններում ուժ չգործադրելու և միջուկային զենքի կիրառումը



առհավետ արգելելու բանաձևը։ Ի զարգացումն ՄԱԿ-ի այդ որոշման, մենք հայտարարում ենք, որ Սովետական Միությունը պատրաստ է ուզած միջուկային տերության հետ համաձայնության գալ և համապատասխան ձևով ձևակերպել ուժ չգործադրելու վերաբերյալ փոխադարձ պարտավորություններ, ներառյալ միմյանց դեմ միջուկային զենքի կիրառման արգելումը։

Մենք ռեալիստներ ենք և լավ ենք տեսնում, որ իմպերիալիզմի աշխարհի ազդեցիկ շրջանները դեռևս չեն հրաժարվել «ուժի դիրքից» քաղաքականություն վարելու փորձերից։ Դեռևս շարունակվում է սպառազինությունների նրանց սանձազերծած մրցավազքը, որը սպառնալիք է ստեղծում խաղաղության համար։ Մենք և մեր դաշնակիցները, բնականաբար, չենք կարող անհրաժեշտ հետևություններ չանել դրանից։ Բայց մեր արտաքին քաղաքականության խաղաղասիրական կուրսը անփոփոխ է, և արդի պայմաններում խաղաղասեր ուժերի հնարավորությունները ագրեսիայի ու պատերազմի ուժերի դեմ մղվող պայքարում մեծ են, ինչպես երբեք։ Սովետական Միությունը այսուհետև էլ գործերը կվարի լարվածության թուլացման և խաղաղության ամրապնդման ուղղությամբ, հաստատակամորեն կձգտի միջազգային լարվածության հանգույցների լուծման, հակադիր հասարակական սիստեմի պետությունների հետ կայուն, լավ հարաբերությունների հաստատման։ Եվ եթե մեր քաղաքականությունը համապատասխան արձագանք գտնի նրանց կողմից, ապա մենք կարող ենք վստահորեն ասել. լարվածության թուլացումը կայուն կդառնա, խաղաղ գոյակցությունը միջպետական հարաբերությունների հանրաճանաչ նորմա կդառնա։ Դա նշանակում է, որ մեր մոլորակում խաղաղությունը իրոք կայուն կդառնա, նոր համաշխարհային սպառնալիքը կարող է վերացվել։ Հենց այդ նպատակին է ուղղված մեր կուսակցության, մեր սովետական պետության արտաքին քաղաքականությունը. (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

ՍՄԿԿ-ն ելել է և ելնում է այն բանից, որ երկու սիստեմների՝ կապիտալիստական և սոցիալիստական սիստեմների, դասակարգային պայքարը էկոնոմիկայի, քաղաքականության և իհարկե, գաղափարախոսության ոլորտում կշարունակվի։ Այլ կերպ չի էլ կարող լինել, որովհետև սոցիալիզմի և կապիտալիզմի աշխարհայացքը և դասակարգային նպատակները հակադիր և անհաշտ են։ Բայց մենք կձգտենք այն բանին, որ պատմականորեն անխուսափելի այդ պայքարը մտնի այնպիսի հունի մեջ, որը չսպառնա պատերազմներով, վտանգավոր կոնֆլիկտներով, սպառազինությունների չվերահսկվող մրցավազքով։ Դա հսկայական օգուտ կլինի ամբողջ աշխարհի խաղաղության գործի համար, բոլոր ժողովուրդների, բոլոր պետությունների շահերի համար։

Մշտապես ցանկություն հայտնելով խաղաղության պահպանման ասպարեզում համագործակցել այն բոլոր կառավարությունների հետ, որոնք պատրաստ են դրան, սովետների երկիրը միաժամանակ պահպանում և անշեղորեն ընդլայնում է համագործակցությունը խաղաղասեր հասարակայնության, բոլոր երկրների ժողովուրդների հետ։ Հասարակական կազմակերպությունների և մասսայական շարժումների առջև նորանոր հնարավորություններ են բացվում խաղաղության պայքարում։ Սովետական հասարակայնությունը այսուհետև էլ ակտիվորեն կմասնակցի նրանց օգտակար գործունեությանը։ Մենք համոզված ենք, որ ժողովուրդների խաղաղության պայքարում մեծ դեր կունենա խաղաղասեր ուժերի առաջիկա համաշխարհային կոնգրեսը։

Ընկերնե՛ր։ Մեր պետության փառապանծ հոբելյանի օրը սովետական ժողովրդի, մեր լենինյան կուսակցության համար մեծ հպարտության զգացումով ես կարդում նրա արտաքին քաղաքականության հետևյալ բնութագիրը, որը ձևակերպված է ՍՍՀՄ-ի գոյության սկզբնական շրջանում. «Այսպիսով, սովետական հանրապետությունների ժողովուրդների եղբայրական համագործակցության հիման վրա ստեղծված միութենական պետությունը իր նպատակն է համարում խաղաղություն պահպանել բոլոր ժողովուրդների հետ»։ (Երկարատև ծափահարություններ)։ Այսպես է ասված Սովետական Միության կազմավորման կապակցությամբ ՍՍՀՄ Կենտգործկոմի նախագահության կողմից «աշխարհի բոլոր ժողովուրդներին և կառավարություններին» ուղղված դիմումի մեջ։ Եվ այնուհետև այնտեղ ասված է. «Լինելով ճնշված ժողովուրդների բնական դաշնակիցը, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը կձգտի խաղաղ ու բարեկամական հարաբերություններ և տնտեսական համագործակցություն հաստատել բոլոր ժողովուրդների հետ։ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը իր առջև նպատակ է դնում նպաստել համայն աշխարհի աշխատավորության շահերին։ Բալթիկ, Սև և Սպիտակ ծովերից մինչև Խաղաղ օվկիանոսն ընկած հսկայական տարածությունում նա իրականացնում է ժողովուրդների եղբայրություն և աշխատանքի թագավորություն, միաժամանակ ձգտելով նպաստել ամբողջ աշխարհի ժողովուրդների բարեկամական համագործակցությանը»։ (Ծափահարություններ)։

Անցել է կես դար։ Ամբողջ աշխարհը կարող է տեսնել, որ դրանք սոսկ գեղեցիկ բառեր չեն եղել։ Սովետական Միությունը հավատարիմ է սոցիալիզմի և խաղաղության դրոշին, որին երդում է տվել իր ծննդյան պահին։ Եվ Սովետական Միության հիսնամյակի հանդիսավոր օրը մենք նորից ամբողջ աշխարհին հայտարարում ենք. կոմունիստական կուսակցությունը, մեր պետությունը, սովետական ժողովուրդը այսուհետև էլ վստահորեն և բարձր կպարզեն լենինյան արտաքին քաղաքականության՝ ժողովուրդների խաղաղության և բարեկամության քաղաքականության դրոշը. (Բուռն, երկարատև ծափահարություններ)։

## IV ՍՈՎԵՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆԸ ԸՆԹԱՆՈՒՄ Է XXIV ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ ՆՇԱԾ ՈՒՂԻՈՎ

Թանկագին ընկերնե՛ր։

Ահա արդեն համարյա երկու տարի է, ինչ սովետական ժողովուրդը աշխատում է ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումների կատարման համար, համագումար, որը նշեց մեր հայրենիքի տնտեսական և սոցիալական առաջընթացի ընդարձակ ծրագիր։ Համագումարի առաջադրած խնդիրները հսկայական են իրենց մասշտաբով և շատ բարդ են։ Բանն այն է, որ մենք՝ կոմունիստներս, անհանգիստ մարդիկ ենք։ Մենք ուզում ենք որքան կարելի է շատ բան անել ժողովրդի կյանքի բարելավման, նրա երջանկության համար և անել հնարավորին չափ շուտ։ Դա է, հավանաբար, մեր կուսակցության առանձնահատկություններից մեկը։

Նրա մյուս առանձնահատկությունն այն է, որ կուսակցությունը ոչ միայն ինքն է պայքարում ժողովրդի շահերի համար, այլև կարողանում է պայքարի



հանել, իր ետևից տանել աշխատավորության ամենալայն մասսաներին։ Եվ ժողովուրդը կուսակցությանը պատասխանում է բարձր ակտիվությամբ, մասսայական աշխատանքային հերոսությամբ։

Բազմաթիվ ու բազմազան են հասարակական-քաղաքական և աշխատանքային նախաձեռնությունները այս նախատոնական ամիսներին։ ՍՍՀՄ 50-ամյակը արժանավայել դիմավորելու համար ծավալված մրցության ընթացքում երկրի տարբեր անկյուններում, արդյունաբերության, շինարարության, տրանսպորտի և գյուղատնտեսության տարբեր ճյուղերում ծնունդ առան հիանալի նախաձեռնություններ։ Արտադրական շատ կոլեկտիվներ, քաղաքների, մարզերի և երկրամասերի աշխատավորներ պարտավորվեցին աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին ժամկետից շուտ կատարել տարեկան պլանը, ժամկետից շուտ յուրացնել ձեռնարկությունների և ագրեգատների նախագծային կարողությունները, ավելացնել արտադրանքի թողարկումը՝ առանց աշխատողների թվի մեծացման։ Դաշտերի աշխատավորները պարտավորվեցին պետությանը հանձնել արտապլանային հացահատիկ և բամբակ։ Երևան եկան աշխատանքային մրցության այնպիսի ձևեր, ինչպիսիք են «Հազարների պայմանագրեր» շարժումը թեթև արդյունաբերության մեջ, «15 հանրապետություն՝ 15 հարվածային հերթափոխ» նշանաբանով մրցությունը և շատ ու շատ այլ ձևեր։ Այդ ամենը, ընկերներ, ժողովրդական նախաձեռնության իսկական ակունք է, մեր հասարակարգի կենսական ուժի անսպառ աղբյուր։

Կոմունիստական շինարարությունը ծնում է աշխատանքի իսկական հերոսներ, մարդիկ, որոնք մարմնավորում են մեր սովետական ապրելակերպը։ Նրանք ցույց են տալիս բարձր գիտակցականության հրաշալի օրինակներ, աշխատանքի նկատմամբ կոմունիստական վերաբերմունքի օրինակներ։ Կուզենայի այստեղ, այս ամբիոնից հիշատակել մեր համեստ, անձնվեր աշխատավորների անունները, որոնք իրենց բոլոր ուժերը, իրենց ողջ հմտությունը ի սպաս են դնում ժողովրդի գործին։ Բայց, դժբախտաբար, դա ֆիզիկապես անհնար է, ընկերներ։ Նրանք հազարներ են, տասնյակ հազարներ, միլիոններ։ Չկա այնպիսի կոլեկտիվ, այնպիսի շրջան, օկրուգ, մարզ կամ երկրամաս, չկա այնպիսի հանրապետություն, որտեղ չլինեին իրենց գործերով մեր հայրենիքը փառաբանող աշխատանքի առաջավորներ։ Նրանք՝ մեր հայրենիքի հիանալի որդիներն ու դուստրերը, ընթանում են կոմունիզմ կառուցողների առաջին շարքերում, նրանց օրինակին հետևում են միլիոնավոր աշխատավորներ։ Սովետական մարդիկ հպարտանում են նրանցով, մեծարում նրանց, հավասարվում նրանց հետ. (Բուռն ծափահարություններ)։

Կուսակցության Կենտրոնական կոմիտեն, տեղական կուսակցական, սովետական, արհմիութենական և կոմերիտական կազմակերպությունները շատ բան արեցին, որպեսզի աշխատավորների հրաշալի նախաձեռնությունները դառնան ամբողջ երկրի սեփականությունը։ Վերջին ամիսներին մամուլի էջերում, հեռուստատեսությամբ և ռադիոյով հաղորդվող լուրերը հիշեցնում էին վիթխարի ճակատամարտի դաշտից տրված օպերատիվ ամփոփագրեր։ Իրենց պարտավորությունների կատարման, աշխատանքային մրցության մեջ ձեռք բերած հաղթանակների մասին երկրի բոլոր անկյուններից զեկուցում էին աշխատավորության տարբեր ջոկատներ։

ՍՍՀՄ 50-ամյակի պատվին ծավալված համաժողովրդական մրցության

արդյունքները ցույց են տալիս, որ սովետների երկրի աշխատավորները կատարել են իրենց խոստումը, փառապանծ հոբելյանը դիմավորել աշխատանքային լավ նվերներով: Հայրենիքը գնահատել է մրցության հաղթողների հաջողությունները: Ավելի քան երեք հազար աշխատավորական կոլեկտիվներ պարգևատրված են ՍՄԿԿ Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության, ՍՍՀՄ Մինիստրների սովետի և ՀԱՄԿԽ-ի հոբելյանական պատվո նշաններով: Եկեք շնորհավորենք պարգևատրվածներին, ընկերներ, և նոր փառավոր գործեր մաղթենք նրանց՝ ի բարօրություն սովետական ժողովրդի. (բուռն, երկարատև ծափահարություններ):

Հնգամյակի երկրորդ տարվա վերջին մենք մոտենում ենք այնպիսի ցուցանիշներով, որոնք վկայում են արդյունաբերության առաջատար ճյուղերի զգալի աճը: Բավական է ասել, որ միայն 1972 թվականին թողարկված արդյունաբերական արտադրանքի ծավալը կրկնապատիկ չափով գերազանցում է նախապատերազմական բոլոր հնգամյակների արտադրանքի թողարկումը: 1971 և 1972 թվականներին երկրի գործարաններն ու ֆաբրիկաները մեկուկես անգամ ավելի շատ արտադրանք են տվել, քան նախորդ՝ ութերորդ հնգամյակի առաջին երկու տարում:

Այդ երկու տարում բազմաթիվ նոր նվաճումներով է նշանավորվել սովետական ժողովրդի ստեղծարար գործունեությունը: Դրանցից մի քանիսը իրավամբ կարելի է պատմական անվանել:

«Գերազանց» գնահատականով լրիվ հզորությամբ (վեց միլիոն կիլովատ) շարք մտավ աշխարհում ամենախոշոր՝ Կրասնոյարսկի հիդրոէլեկտրակայանը Ենիսեյի վրա: Կրասնոյարսկի հիդրոէլեկտրակայանի հզորությունը երեք անգամ գերազանցում է արտասահմանյան ամենախոշոր հիդրոէլեկտրակայանի հզորությունը: Իսկ Մոսկվայից ոչ հեռու, Տվերի հինավուրց հողում լրիվ ուժով սկսեց աշխատել Կոնակովոյի պետական շրջանային էլեկտրակայանը: Այդ կայանի երկու միլիոն 400 հազար կիլովատը և վերջին տարիներին շարք մտած Լադոգայի պետական շրջանային էլեկտրակայանի, Սարատովի հիդրոէլեկտրակայանի ու էստոնական պետական շրջանային էլեկտրակայանի ավելի քան չորս միլիոն կիլովատ ընդհանուր հզորությունը զգալի ներդրում են Սովետական Միության եվրոպական մասի էներգետիկ տնտեսության մեջ:

1972 թվականի հունվարին սկսեց գործել Տոլյատի քաղաքի ՍՍՀՄ 50-ամյակի անվան Վոլգյան ավտոմոբիլային գործարանի երկրորդ հերթը: Տոնի նախօրեին ավարտվեց երրորդ հերթի շինարարությունը: Հիմա այդ ժամանակակից ձեռնարկությունը, որտեղ աշխատում են տասնյակ հազարավոր որակյալ բանվորներ, տեխնիկներ, ինժեներներ, տարեկան կարող է թողարկել 660 հազար մարդատար ավտոմեքենա: Դա մեր ավտոմոբիլաշինության խոշոր նվաճումն է:

Լրիվ թափով ծավալվել է նաև մի այլ հսկայի՝ ծանր բեռնատար ավտոմոբիլների գործարանի շինարարությունը Կամայի ափերին՝ Նաբերեժնի Չելնիում:

Արագ տեմպերով շարունակում էր աճել երկրի նավթի ու գազի արդյունաբերությունը: Սովետական մարդիկ ավելի ու ավելի վստահորեն են բացահայտում Արևմտյան Սիբիրի, Ղազախստանի, Ուզբեկստանի ստորերկրյա գանձերը, դրանցից կորզելով անհատնում հարստություններ: Անցած երկու տարում նավթի հանույթի միմիայն աճը կազմեց 44,5 միլիոն տոննա, դա



ավելին է, քան նավթի ամբողջ հանույթը ՍՍՀՄ-ում 1950 թվականին: Ահա թե ինչպիսիք են մեր աճի տեմպերը, մեր աշխատանքների մասշտաբները. (ծափահարություններ):

Այժմ մեր գյուղատնտեսության մասին: Դուք լավ գիտեք, ընկերներ, որ մեր կուսակցությունը, պետությունը և ամբողջ սովետական ժողովուրդը մեծ ջանքեր են գործադրում ապահովելու գյուղատնտեսական արտադրության հուսալի աճը: 1965 թվականի մարտյան պլենումի և կուսակցության վերջին երկու համագումարների որոշումների հիման վրա ութերորդ հնգամյակի տարիներին շատ բան արվեց:

Մեզ հաջողվեց ամբողջությամբ վերցրած ստեղծել գյուղի աշխատավորների շահագրգռություն գյուղատնտեսական արտադրության վերելքի գործում, հասնել հողագործության և անասնապահության շահութաբերության որոշակի աճի: Ամրապնդվեց կոլտնտեսությունների և սովխոզների նյութատեխնիկական բազան և էկոնոմիկան, ձեռք բերվեց բերքատվության և անասնապահության մթերատվության նկատելի աճ:

Սա հարցի տնտեսական կողմն է: Մյուս, ոչ պակաս կարևոր, սոցիալական կողմն այն է, որ այդ տարիներին ապահովվեց գյուղի աշխատավորների, այսինքն՝ սովետական ժողովրդի զգալի մասի, կենսամակարդակի լուրջ վերելք:

Արդի էտապում գյուղատնտեսության բնագավառում կուսակցության քաղաքականության երեք գլխավոր բաղկացուցիչ մասերն են կոմպլեքսային մեքենայացումը, քիմիացումը և հողերի լայն մելիորացումը: Այդ գործի համար մենք այնքան միջոցներ հատկացրինք, որքան առաջներում երբեք չի հատկացվել գյուղատնտեսությանը: Նախատեսված պլանները հաջողությամբ իրականացվում են բոլոր ուղղություններով: Ներկայումս երկրի գրեթե բոլոր տրակտորային գործարանները և գյուղատնտեսական մեքենաշինության մյուս գործարանները վերակառուցվում են, տեղի է ունենում ե՛լ ավելի հզոր, ե՛լ ավելի բարձրարտադրողական գյուղատնտեսական տեխնիկայի նոր սերնդի ծննդյան պրոցեսը: Նախատեսված է այս հնգամյակում երկրում 1,6 անգամ մեծացնել հանքային պարարտանյութերի արտադրությունը: Ծավալվել են և ավելի ու ավելի են ընդլայնվում հողերի ոռոգման ու չորացման աշխատանքները Սովետական Միության տարբեր շրջաններում:

Ինչպես հայտնի է, այս տարին՝ 1972 թվականը, բացառիկ ծանր տարի էր եղանակի պայմանների տեսակետից: Ցրտաշունչ, ձյունազուրկ ձմեռվանից հետո վրա հասավ չտեսնված երաշտ, որն ընդգրկեց երկրի զգալի շրջաններ: Եվրոպական մասում մեծ տարածությունների վրա փչացան հացահատիկային և մյուս կուլտուրաների ցանքերը:

Այդ բարդ պայմաններում կուսակցությունը ձեռնարկեց բոլոր անհրաժեշտ միջոցները:

Տարերային փորձություններին հակադրվեց կուսակցության կողմից կազմակերպված սովետական միլիոնավոր մարդկանց գիտակցական կամքը, որոնք պայքարի մեջ մտան բնության դեմ, իրենց ձեռքին ունենալով ժամանակակից տեխնիկայի հուժկու միջոցներ: Բոլոր ուժերը մոբիլիզացվեցին հացահատիկը արագ և անկորուստ հավաքելու, անասնապահությունը կերով ապահովելու համար:

Հատուկ պատասխանատվություն էր ընկած Ղազախստանի, Սիբիրի և Ուրալի մի շարք մարզերի աշխատավորների վրա, այն շրջանների, որտեղ լավ

բերք էր աճեցվել։ Այստեղ կարևոր էր ապահովել առավելագույն արագ բերքահավաքը, քանի որ ցրտերի անակնկալ սկսվելը և ձյան տեղումները կարող էին հասցնել բերքի կորստյան։ Երկրի արևելյան շրջանների գյուղի աշխատավորների մեջ շարժում ծավալվեց հետևյալ արտահայտիչ լոզունգով՝ «Ոչ մի ժամ հապաղում, ո՛չ մի գրամ կորուստ»։ Ծավալվեց իսկական ճակատամարտ հացի համար։

Եվ սիբիրցիները, ուրալցիները, Ղազախստանի աշխատավորները չհիասթափեցրին, արդարացրին երկրի հույսերն ու վստահությունը։ Նրանք լավ բերք աճեցրին և անձնվիրաբար աշխատեցին բերքահավաքի ընթացքում։ Ղազախստանի գյուղատնտեսության աշխատավորները հայրենիքին տվեցին ավելի քան 17 միլիոն տոննա, այսինքն ավելի քան մեկ միլիարդ փութ հացահատիկ. (ծափահարություններ)։ Սիբիրի և Ուրալի հողագործները պետական շտեմարանները լցրին գրեթե 17 միլիոն տոննա հացահատիկ. (ծափահարություններ), ընդ որում, միայն Ալթայի երկրամասը՝ ավելի քան 5 միլիոն տոննա. (ծափահարություններ)։ Բարձր կազմակերպվածության և հարվածային աշխատանքի շնորհիվ վատ բերք չհավաքեցին և պետությանը հացահատիկ վաճառելու պլանները գերակատարեցին Ռուսաստանյան Ֆեդերացիայի կենտրոնի և հարավի, Ուկրաինայի մի շարք մարզեր և ինքնավար հանրապետություններ, Բելոռուսիայի, Մոլդավիայի, Մերձբալթիկայի, Անդրկովկասի և Միջին Ասիայի հանրապետությունների կոլտնտեսություններ և սովխոզներ։

Դրա շնորհիվ հացահատիկի համախառն բերքը երկրում հասավ 168 միլիոն տոննայի, կամ ավելի քան 10,3 միլիարդ փթի։ Դա ութերորդ հնգամյակում ձեռք բերված՝ հացահատիկի բերքի միջին մակարդակից որոշ չափով բարձր է. (ծափահարություններ)։ Իսկ պետական մթերումները կազմեցին 60 միլիոն տոննա։ Դա համապատասխանում է սահմանված կայուն պլանի ծավալին, բայց, իհարկե, ավելի պակաս է, քան մենք ակնկալում էինք ստանալ քիչ թե շատ նորմալ պայմաններում։

Չի կարելի առանձնապես չասել մեր հիանալի բամբակագործների մասին։ Այս տարի նրանց աշխատանքը նույնպես շատ հեշտ չէր։ Բամբակի համար էլ կլիմայական պայմանները ծանր էին։ Բայց դա չվախեցրեց երկրի սպիտակ ոսկու արդյունահանողներին։ Կուսակցական ժողովներում, արտադրական խորհրդակցություններում, Տաշքենդի միջհանրապետական հանդիպման ժամանակ Միջին Ասիայի, Ղազախստանի և Ադրբեջանի բամբակագործները բարձր պարտավորություններ ստանձնեցին։ Նրանք խոստացան ժողովրդին ավելի շատ բամբակ տալ, քան անցած բարձր բերքատու տարում՝ 7 միլիոն 135 հազար տոննա։ Աշխատում էին լարված, անձնվիրաբար։ Եվ իրենց խոսքը պատվով կատարեցին. (ծափահարություններ)։ Ստանձնած պարտավորությունները կատարեցին ու գերակատարեցին։ Ստացվեց նախորդ ամբողջ պատմության մեջ բամբակի ամենաբարձր համախառն բերքը։ Պետությանը վաճառվեց 7,3 միլիոն տոննա. (ծափահարություններ)։ Նրանցից միմիայն Ուզբեկստանը տվեց 4 միլիոն 700 հազար տոննա. (ծափահարություններ)։

Այսպիսով, ընկերներ, մենք լիակատար հիմունքով կարող ենք ասել, որ մեր երկրի կոլտնտեսությունների և սովխոզների աշխատավորները, խորապես հասկանալով ժողովրդի կարիքները, կուսակցության կոչին պատասխանում են կոնկրետ գործերով, աշխատանքային սխրանքներով։ Եվ այդ սխրանքները բարձր են գնահատում կուսակցությունը, սովետական ժողովուրդը։



Հաճելի է նշել, որ վերջերս գյուղատնտեսության առաջավորների մի մեծ խումբ պարգևատրվեց շքանշաններով ու մեդալներով, իսկ նրանցից շատերին շնորհվեց սոցիալիստական աշխատանքի հերոսի կոչում։ Փա՛ռք ու պատիվ այդ հրաշալի աշխատավորներին. (բուռն ծափահարություններ)։

Ընկերներ, գյուղատնտեսության համար այդ բացառիկ անբարենպաստ տարվա փորձը մեկ անգամ ևս համոզիչ կերպով ցույց տվեց, թե որքան է աճել մեր երկիրը, թե որքան ամուր և առողջ է մեր զարգացած սոցիալիստական հասարակարգը։

Նախկին նախահեղափոխական ժամանակներում կամ սովետական իշխանության առաջին տարիներին այդպիսի խիստ ձմեռը և այդպիսի տևական երաշտը անխուսափելիորեն կհանգեցնեին ամենածանր հետևանքների, երկրի շատ շրջաններում աղետներ կառաջանային։ Իսկ հիմա, ինչպես ցույց է տալիս կյանքը, մենք ուժեր ունենք հաղթահարելու նման դժվարություններ։ Այն, ինչ առաջ աղետ էր դառնում, այժմ թեկուզև ծանր, բայց, այնուամենայնիվ, հաղթահարելի արգելք է դառնում մեր զարգացման ճանապարհին։

Գիտնականների և մասնագետների հաշվարկումներով, 1955 թվականի ագրոտեխնիկայի մակարդակի դեպքում, այնպիսի եղանակի պայմաններում, որպիսին եղավ այս տարի, մենք ներկայումս ցանվող տարածությունից կհավաքեինք ընդամենը միայն 90 միլիոն տոննա հացահատիկ։ Եվ եթե մենք այս տարի ստացանք 168 միլիոն տոննա, ապա դա ինքնըստինքյան փոքր նվաճում չէր։ Դա հողագործության աճած կուլտուրայի և կոլտնտեսականների, սովխոզների բանվորների, գյուղատնտեսների կազմակերպվածության աճի ցուցանիշն է, մեր արդյունաբերության կողմից գյուղատնտեսությանը ցույց տրված մեծ օգնության արդյունքը, գյուղատնտեսության վերելքի համար մեր գործադրած ընդհանուր ջանքերի արդյունքը։

Իհարկե, մենք հացահատիկային կուլտուրաների և կարտոֆիլի վատ բերքի պատճառով որոշակի կորուստներ կրեցինք։ Բայց դրանք կարող են և պետք է լրացվեն թե՛ գյուղատնտեսության, թե՛ արդյունաբերության մեջ կատարվող լարված աշխատանքով։ Դժվարություններ, անկասկած, կան, բայց երկրի և նրա քաղաքացիների կյանքի նորմալ ընթացքը չի խախտվի։ Մենք այսուհետև ևս միջոցներ ձեռք կառնենք ապահովելու բնակչության մատակարարման անհրաժեշտ մակարդակը. (ծափահարություններ)։

Անցած տարին, ընկերներ, ամբողջ ուժով հաստատեց գյուղատնտեսության նյութատեխնիկական բազայի ամրապնդման՝ կուսակցության գծի ճշտությունը։ Միևնույն ժամանակ այն համոզիչ կերպով վկայում է, որ նախատեսված միջոցառումները պետք է կենսագործել ավելի արագ, որ այդ ասպարեզում ջանքերը պետք է բազմապատկել։

Այս տարվա փորձը ցույց տվեց, որ եղանակի փոփոխականությունից առավել փոքր վնաս կրեցին այն տնտեսությունները, որտեղ պահպանվում են ագրոտեխնիկայի բոլոր պահանջները, լավ հիմքերի վրա է դրված սերմնաբուծությունը, ճիշտ են օգտագործվում պարարտանյութերը և ջրատնտեսական կառուցվածքները։ Մի խոսքով, որտեղ գործը լավ են կատարել, այնտեղ էլ երաշտի հետևանքները այնքան ծանր չեն եղել։ Այնպես, որ, ընկերներ, բնությունը՝ բնություն, բայց աշխատանքն էլ՝ աշխատանք, և տարերքի արհավիրքների դեմ մղվող պայքարում լավագույն զենքը տնտեսավարման բարձր կուլտուրան է, ակտիվ, անձնվեր աշխատանքը. (բուռն ծափահարություններ)։

Մեր գյուղատնտեսությունը բարձրացնել այն մակարդակին, որը ինչպես հարկն է համապատասխանի ժամանակակից տեխնիկայի հնարավորություններին և կոմունիստական շինարարության պահանջմունքներին,— այսպիսին է կուսակցության առաջադրած նպատակը։ Եվ դաշտերի աշխատավորների համերաշխ գործերով, արդյունաբերության կողմից գյուղին ցույց տրվող առավել լայն աջակցությամբ, ամբողջ ժողովրդի ջանքերով մենք, կուսակցության ղեկավարությամբ, կհասնենք այդ նպատակին. (ծափահարություններ)։

Հենց արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ սովետական մարդկանց համառ աշխատանքը, հենց նրանց աշխատանքային նվաճումներն են հնարավորություն տալիս հետևողականորեն կատարելու ժողովրդի բարեկեցության բարձրացման՝ կուսակցության համագումարի հավանությանն արժանացած ծրագիրը։ Դուք լավ գիտեք, ընկերներ, այդ բնագավառում իրականացված շատ միջոցառումների մասին։ Այստեղ կհիշատակեմ միայն երկու թիվ՝ 1971 և 1972 թվականներին բարձրացվել են մոտավորապես 34 միլիոն մարդու աշխատավարձը, կենսաթոշակներն ու կրթաթոշակները։ Այդ տարիներին նոր բնակարաններ են փոխադրվել մոտավորապես 23 միլիոն մարդ։

Այսպիսով, ամբողջությամբ վերցրած, տեղի է ունենում Սովետական Միության տնտեսական հզորության պատկառելի աճ, և դա չի կարող չուրախացնել բոլորիս։ Այդ մասին մեծ հոբելյանի օրը մենք կարող ենք և պետք է ասենք ամբողջ ձայնով։ Բայց թե մեծ տոների օրերին, թե աշխատանքային առօրյայի ընթացքում մենք լավ ենք տեսնում ոչ միայն նվաճումները, այլև մեր նեղ տեղերն ու թերությունները, ժողովրդի ուշադրությունն ու ջանքերը կենտրոնացնում ենք դրանց շուտափույթ վերացման վրա։ Իսկ թերություններ մեզ մոտ, ցավոք սրտի, դեռևս կան։

Հազիվ թե հարկ կա այժմ մանրամասնորեն թվարկել դրանք. մենք, կոմունիստներս, ինքնաքննադատ մարդիկ ենք և արդեն բազմիցս սուր ու կոնկրետ կերպով խոսել ենք այդ թերությունների մասին։ Դրանցից ամենաէականն այն է, որ ժողովրդական տնտեսության զարգացման մեջ մինչև օրս բավարար լիակատարությամբ և արդյունավետությամբ չեն օգտագործվում ներքին հարուստ ռեզերվները, ինտենսիվ, որակական գործոնները։ Մի շարք ճյուղերում, շատ ձեռնարկություններում, կառույցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում դանդաղ են նվազում աշխատանքային ծախսումները, ինչպես նաև հումքի և նյութերի ծախսումները։

Այժմ գլխավոր խնդիրն է շեշտակիորեն փոխել կողմնորոշումը, շեշտը դնել տնտեսության վարման ինտենսիվ մեթոդների վրա, դրանով իսկ ապահովել էկոնոմիկայի արդյունավետության լուրջ բարձրացումը։ Խոսքն այն մասին է, որ տնտեսական աճը ավելի ու ավելի մեծ չափով տեղի ունենա աշխատանքի արտադրողականության բարձրացման և գիտատեխնիկական առաջընթացի արագացման միջոցով, գործող արտադրական կարողությունների առավել լրիվ օգտագործման միջոցով, տնտեսության մեջ ներդրված յուրաքանչյուր ռուբլու, օգտագործվող մետաղի, վառելիքի, ցեմենտի, պարարտանյութերի յուրաքանչյուր տոննայի փոխհատուցումը բարձրացնելու միջոցով։

Սա է տնտեսական քաղաքականության մեջ շրջադարձի էությունը, որը պահանջեց կուսակցության XXIV համագումարը։ Միայն այդպիսի հիման վրա կարելի է հաջողությամբ լուծել հսկայական մասշտաբի այն խնդիրները, որոնք ժողովրդական տնտեսության առջև դրված են ընթացիկ հնգամյակում։ Միայն



էկոնոմիկայի արդյունավետության բարձրացմամբ կարելի է գտնել միջոցներ և ռեսուրսներ, որոնք բավարար լինեն միաժամանակ ապահովելու աշխատավորների բարեկեցության նշանակալի աճը, ապագայում տնտեսության արագ զարգացման հնարավորությունները, երկրի պաշտպանունակությունը պատշաճ մակարդակի վրա պահելու պահանջմունքները։

Կուսակցությունը լավ գիտեր, որ հնգամյակի առաջադրանքների կատարումը պահանջում է մեծ ու լարված աշխատանք, հսկայական եռանդ ու կազմակերպվածություն, ստեղծագործական մոտեցում ու համարձակություն ծագող պրոբլեմների լուծման գործում։ Հենց դրա համար էլ բազմիցս ընդգծվել է, որ, եթե մենք ամբողջ տնտեսական գործունեությունը չհասցնենք առավել բարձր մակարդակի, իսկական շրջադարձ չկատարենք դեպի էկոնոմիկայի արդյունավետության բարձրացումը, ապա դժվար կլինի լուծել առաջադրված խնդիրները։ Հայտնի են նաև այն գլխավոր ուղղությունները, որոնցով ընդամին պետք է ընթանալ։ Դա պլանավորման և կառավարման ամբողջ սիստեմի կատարելագործումն է։ Դա տնտեսական այնպիսի պայմանների ստեղծումն է, որոնք մինիստրություններին ու ձեռնարկություններին կստիպեն ստանձնելու լարված պլան, մոբիլիզացնելու ռեզերվները, աշխատելու ավելի մեծ արդյունավետությամբ։ Այստեղ գործողությունների մեծ ասպարեզ կա մեր Պետպլանի, մինիստրությունների և մյուս կառավարական մարմինների համար։

Այն մարդիկ, որոնց կուսակցությունը վստահել է տնտեսական գործունեության այս կամ այն բնագավառի ղեկավարությունը, կոչված են անդուլ կերպով կատարելագործելու այդ ղեկավարության մեթոդներն ու ոճը։ Նրանք պետք է լրիվ չափով ունենան նորի զգացում, ցուցաբերեն նախաձեռնություն, ժամանակին օգտագործեն գիտատեխնիկական առաջընթացի ընձեռած բոլոր հնարավորությունները։ Թերությունների, աշխատանքում ամեն մի անտարբերության նկատմամբ բոլշևիկյան անհաշտությունը, նվազագույն ռեսուրսներ ծախսելով առավելագույն ժողովրդատնտեսական արդյունք ստանալու կուսակցական խոր պատասխանատվությունը պետք է դառնան յուրաքանչյուր ղեկավարի անկապտելի հատկությունը։

Ընկերնե՛ր։ Մենք ՍՍՀՄ-ի հոբելյանը նշում ենք նոր տարվա նախօրեին։ Գալիք տարին առանձնահատուկ նշանակություն ունի, դա հնգամյակի երրորդ տարին է, որը մեծապես վճռում է ամբողջ հնգամյակի բախտը։ Եվ խընդիրն այն է, որ ոչ միայն հաջողությամբ կատարենք եկող տարվա հիմնական պլանային առաջադրանքները, որոնք օրերս հաստատեց ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիան, այլև զգալիորեն գերազանցենք դրանք, անհրաժեշտ ռեզերվ ստեղծենք հաջորդ տարիների համար։

Ինչի՞ հաշվին դա կարող է արվել։ Առաջին հերթին՝ մեր ունեցած մեծ ռեզերվների իրացման հաշվին, որի մասին մենք արդեն ասացինք։ Դա պետք է արվի խնայողության խիստ ռեժիմի, ուժերն ու միջոցները գործարկվելիք օբյեկտներում կենտրոնացնելու, աշխատանքային կարգապահությունը ամրապնդելու և աշխատանքում կազմակերպվածությունը բարձրացնելու միջոցով։

Բայց դա դեռ բոլորը չէ։ Ամենալավ պլանները չեն կատարվի, եթե նրանք, ովքեր աշխատում են հաստոցների մոտ կամ դաշտում, անասնապահական ֆերմայում, գիտահետազոտական ինստիտուտում կամ սպասարկման ոլորտում, գործի մեջ չներդնեն իրենց սրտի, իրենց հոգու մասնիկը։ Բարձր կազմակերպված աշխատանքի եռանդը, բազմապատկած իր երկրի, սոցիալիս-

տական հայրենիքի սիրո հետ, ընդունակ է հրաշքներ գործելու։ Մեզ մոտ այդպես է եղել առաջին հնգամյակների տարիներին, Հայրենական մեծ պատերազմի տարիներին, հետպատերազմյան վերականգնման և խաղաղ շինարարության տարիներին, մասսաների հերոսությամբ և աշխատանքային խանդավառությամբ լի տարիներին։

Այսօր ևս երկրով մեկ ծավալվում է սոցիալիստական մրցության լայն ալիքը։ Առաջավոր կոլեկտիվների, ֆերմաների, բրիգադների, կոլտնտեսությունների և սովխոզների աշխատողները պարտավորություններ են ստանձնել ավելացնելու անասնապահական մթերքների արտադրությունն ու մթերումները։ Կրասնոդարի երկրամասի գյուղի աշխատավորները հանդես եկան որպես հացահատիկի և հողագործության մյուս մթերքների արտադրությունն ավելացնելու սոցիալիստական մրցության նախաձեռնողներ։ Առաջավոր ձեռնարկությունների աշխատողները սոցիալիստական մրցության մեջ են մտել արդյունաբերության, շինարարության և տրանսպորտի բոլոր ճյուղերի աշխատանքում բարձր ցուցանիշների հասնելու համար։

Այս կապակցությամբ կկամենայի ուշադրություն հրավիրել գործի այսպիսի կողմի վրա։ Սոցիալիստական մրցությունը, լինելով մասսաների կենդանի ստեղծագործությունը, պահանջում է ոչ միայն ակտիվորեն աջակցել և խրախուսել առաջավորներին, այլև ի հայտ բերել նրանց, ովքեր ետ են մնացել կամ բավարար բարեխղճությամբ չեն աշխատում։ Եվ դա հարկավոր է անել հրապարակայնորեն, ի լուր ամենքի, որպեսզի մարդիկ իմանան ոչ միայն նրանց մասին, ովքեր աշխատում են ուժերի լիակատար նվիրումով, այլև նրանց մասին, ովքեր աշխատում են առանց եռանդի, առանց լարվածության։ Լինում է նաև այնպես, որ ոմանք շատ են աղմկում, երբ պարտավորություններ են ստանձնում, բայց լռում են, երբ ամփոփում են դրանց կատարման արդյունքները, հատկապես, երբ այդ արդյունքները այնքան էլ լավ չեն։ Ահա և ստացվում է, որ հաղթողներին մեզ մոտ ճանաչում են, իսկ պարտվածներին, կարծեք, ոչ։ Դրանով իսկ ամլացվում է մրցության բուն էությունը՝ աշխատանքային փաստական մրցողականությունը, աշխատանքային փաստական մրցակցությունը, այսինքն այն գործոնները, որոնց հատուկ նշանակություն էր տալիս Վ. Ի. Լենինը։

Հարկավոր է գործն այնպես կազմակերպել, որ աշխատանքի բարձր արտադրողականության, արտադրության մեջ լավագույն ցուցանիշների՝ արտադրանքի բարձր որակի համար մղվող պայքարը դառնա համաժողովրդական գործ. (Երկարատև ծափահարություններ)։

Մենք դիմում ենք քաղաքի և գյուղի աշխատավորներին և ուղղակի ասում՝ 1973 թվականի պլանի կատարումը ձեր ձեռքին է, ընկերնե՛ր։ Մենք վստահ ենք, որ մեր բանվոր դասակարգը, մեր գյուղացիությունը, մտավորականությունը կուսակցության կոչին կպատասխանեն աշխատանքային նոր նվաճումներով, ուժեր չեն խնայի, որպեսզի հաջողությամբ կատարվեն հնգամյակի երրորդ՝ վճռական տարվա առաջադրանքները. (ծափահարություններ)։

Հարգելի ընկերնե՛ր։ Ուշադրությունը կենտրոնացնելով ընթացիկ հրատապ խնդիրների վրա, մենք չենք մոռանում մեր առաջընթացի հեռանկարները։ Բոլշևիկները այդ երբեք չեն մոռացել։ Լենինը արդեն 1918 թվականի ապրիլին, երբ նոր էր հաստատվել սովետական իշխանությունը, երբ բոցավառվում էր քաղաքացիական պատերազմի հրդեհը և տիրում էր ավերածություն, հանդես



եկավ «Ռուսաստանի արդյունաբերության վերակազմության և տնտեսական վերելքի պլանը որքան կարելի է արագ» կազմելու կոչով (Երկեր, հատ. 27, էջ 389)։ Դա բնական էր և անհրաժեշտ, քանի որ Հոկտեմբերյան հեղափոխությունը կատարվեց հանուն սոցիալիզմի կառուցման, իսկ սոցիալիզմը անբաժանելի է էկոնոմիկայի գիտական պլանավորումից։

Տնտեսական ու սոցիալական զարգացման հեռատես, գիտականորեն հիմնավորված պլանավորումը առավել ևս անհրաժեշտ է մեր օրերում, երբ Սովետական Միությունը ընթանում է կոմունիզմի կառուցման ուղիով։ Այդ պայմաններում երկարատև ժամկետներով հեռանկարային պլանավորումը հիրավի կենսական կարևորություն ունեցող գործ է։ Դա, ինչպես հայտնի է, իր արտացոլումն է գտել ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներում։

Համագումարի դիրքավորմանը համապատասխան, ՍՄԿԿ Կենտկոմը և ՍՍՀՄ Մինիստրների սովետը այս տարի որոշում ընդունեցին մշակել Սովետական Միության ժողովրդական տնտեսության 1976—1990 թվականների երկարաժամկետ հեռանկարային պլան։ Այդ պլանը կազմելու աշխատանքը (այն կատարվելու է մինչև 1975 թվականը) տնտեսական-քաղաքական կարևորագույն խնդիր է։ Լենինը ԳՈԷԼՌՈ-ի պլանի կապակցությամբ ասել է, որ ժողովրդական տնտեսության զարգացման երկարաժամկետ ծրագիրը ըստ էության կուսակցության երկրորդ ծրագիրն է։ Կարծում եմ, գործին այդպես պետք է մոտենանք մենք նաև տվյալ դեպքում։

Հիմա, իհարկե, դժվար է խոսել հեռանկարային պլանի կոնկրետ բովանդակության, նրա թվային ցուցանիշների մասին։ Դա պլանի մանրակրկիտ գիտական մշակման խնդիրն է։ Եվ այստեղ մեր պլանային մարմինները պետք է հիմնավորապես աշխատեն, պետք է լուրջ քննություն տան կուսակցության և երկրի առջև։ Այսպիսի գործի մեջ սուբյեկտիվ ցանկությունները ու աչքաչափով նախատեսումները ոչ միայն օգտակար չեն, այլ նույնիսկ վտանգավոր են։ Բայց հեռանկարային պլանի հիմնական ուղղությունը, նրա պատմական ուրվագծերը պարզ են։ Դրանք որոշվում են կուսակցության ծրագրում և նրա վերջին համագումարի որոշումներում առաջադրված հասարակական-քաղաքական և տնտեսական խնդիրներով, կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման և սովետական ժողովրդի կենսամակարդակի նշանակալի բարձրացման խնդիրներով։

Պարզ է, որ մեր հեռանկարային պլանը կնախատեսի նաև ամբողջ ժողովրդի բարօրության համար գիտության ու տեխնիկայի նորագույն նվաճումների լայն օգտագործում ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերում և աշխատանքի արտադրողականության նոր, շատ մեծ աճ, քանի որ դա, ինչպես շեշտել է Վ. Ի. Լենինը, «վերջին հաշվով, ամենակարևորը, ամենագլխավորն է նոր հասարակարգի հաղթանակի համար» (Երկեր, հատ. 29, էջ 523)։

Պարզ է նաև այն, որ պետք է մշակվի երկրում արտադրողական ուժերի առավել ռացիոնալ տեղաբաշխում։ Այժմ, երբ մեզանում հիմնականում լուծված է ազգային հանրապետությունների տնտեսական զարգացման մակարդակները հավասարեցնելու խնդիրը, մենք հնարավորություն ունենք տնտեսական հարցերին մոտենալու նախ և առաջ ամբողջ պետության շահերի, ՍՍՀՄ ամբողջ ժողովրդական տնտեսության արդյունավետության բարձրացման տեսակետից, իհարկե, հաշվի առնելով միութենական և ինքնավար հանրապետությունների յուրահատուկ շահերը։

Վերջապես, հեռանկարային պլանը պետք է հաշվի առնի նաև արդի միջազգային իրադրության՝ մեզ համար այնպիսի բարենպաստ առանձնահատկությունը, ինչպիսին է աշխատանքի միջազգային բաժանման լայն զարգացումը և առաջին հերթին՝ սոցիալիստական երկրների տնտեսական ինտեգրացումը։

Սրանք են ՍՍՀՄ էկոնոմիկայի զարգացման՝ մինչև 1990 թվականն ընդգրկող պլանի մշակմանը վերաբերող մի քանի նկատառումները։ Կենսագործելով այդ պլանը, մենք պետք է սովետական ժողովրդի բարեկեցությունը հասցնենք այնպիսի բարձրության, որը բոլորին, նույնիսկ ամենաանուղղելի սկեպտիկներին, ակնառու կերպով ցույց տա մեր հասարակարգի հնարավորություններն ու առավելությունները հասարակական կյանքի բոլոր ոլորտներում։ Այդ ժամանակաշրջանում Սովետական Միությունում, անկասկած, նոր խոշոր քայլեր կարվեն գիտության և կուլտուրայի ասպարեզում, մարդկային անհատի համակողմանի զարգացման և ժողովրդի առողջության պահպանման ասպարեզում։ Եվ դա այլ կերպ էլ չի կարող լինել, քանի որ մեր բոլոր պլանները կազմելիս կուսակցության և սովետական պետության գլխավոր լոզունգը եղել է և մնում է հետևյալ լոզունգը՝ ամեն ինչ հանուն մարդու, մարդու բարօրության համար։

Ահա, ընկերներ, այն նպատակները, որոնց մենք ձգտում ենք։ Ահա այն հորիզոնները, որոնք բացվում են հաղթանակած սոցիալիզմի՝ աշխարհում առաջին երկրի առջև։ Այսպես է առաջ ընթանում Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որի 50-ամյակը մենք ձեզ հետ միասին նշում ենք այսօր. (Երկարատև ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Կոմունիզմի նյութատեխնիկական բազայի ստեղծման գործում ունեցած առաջընթացի հետ, ժողովրդի բարեկեցության մակարդակի բարձրացման հետ մեկտեղ ավելի ու ավելի մեծ նշանակություն է ստանում այնպիսի խնդիր, ինչպիսին է մարդկանց գիտակցության ձևավորումը, յուրաքանչյուր սովետական մարդուն օժտել կոմունիզմ կառուցողի անհրաժեշտ հատկանիշներով։

Սովետական իշխանության տարիներին անչափ հարստացել են ժողովրդի հոգևոր կյանքը, նրա կուլտուրական մակարդակը, աճել է նրա քաղաքական գիտակցականությունը։ Հոկտեմբերից հետո մեր պատմության ամբողջ ընթացքը ցույց տվեց, թե սովետական մարդկանց մեջ բարոյա-քաղաքական ինչպիսի բարձր հատկություններ են դաստիարակված, թե ինչպիսի անմահ սխրագործություններ կատարելու է ընդունակ սովետական մարդը, ազատ, գիտակից աշխատավորը, հայրենասերն ու ինտերնացիոնալիստը։ Սա է սոցիալիզմի ամենաանգնահատելի նվաճումներից մեկը։

Սակայն այս ամենը չի նշանակում, թե մեր սոցիալիստական հասարակարգի առջև կանգնած քաղաքական-դաստիարակչական և գաղափարական խնդիրները արդեն լուծված են։ Գաղտնիք չէ, որ մեզանում մինչև օրս դեռ երբեմն իրենց զգալ են տալիս անցյալից ժառանգված, իրենց էությամբ սոցիալիզմին խորթ այնպիսի սոցիալական թարախապալարներ, ինչպիսիք են աշխատանքի նկատմամբ անբարեխիղճ վերաբերմունքը, թափթփվածությունը, անկարգապահությունը, ընչաքաղցությունը, սոցիալիստական համակեցության նորմերի զանազան խախտումները։ Կուսակցությունը իր պարտքն է համարում մեր ամբողջ հասարակության ուշադրությունը հրավիրել այդ երևույթների վրա, ժողովրդին մոբիլիզացնել դրանց դեմ վճռական պայքար մղելու, դրանք հաղթահարելու համար, քանի որ առանց դրա մենք չենք կարող կոմունիզմ կառուցել։

Կոմունիզմի բուն էությունը որոշվում է նրանով, որ քաղաքացիները ունեն գիտակցականության բարձր աստիճան և հասարակության հանդեպ պատասխանատվության զգացում, բարոյական վեհ հատկություններ։ Հենց դրա համար էլ բոլոր քաղաքացիների հասարակական գիտակցության դաստիարակումը կոմունիստական շինարարության պրոցեսի կարևորագույն բաղկացուցիչ մասերից մեկն է։

Մեր ժամանակներում այդպիսի դաստիարակության անհրաժեշտությունը հրամայաբար թելադրվում է նաև տնտեսական գործոններով։ Մեր սոցիալիստական էկոնոմիկայի զարգացման ժամանակակից մակարդակը, գիտատեխնիկական առաջադիմության՝ մեր օրերում ձեռք բերված մակարդակը ամենաբարձր պահանջներն են ներկայացնում ոչ միայն աշխատողների զուտ պրոֆեսիոնալ որակավորմանը, այլև նրանց աշխատանքային կարգապահությանը, հստակությանը, կազմակերպվածությանը։ Առանց դրա մենք պարզապես չենք կարող կատարել այն շատ բարդ խնդիրները, որոնք առաջադրում է ժամանակակից կյանքը։

Մենք, ընկերներ, կառուցում ենք ոչ թե անբանների թագավորություն, որտեղ կիսելապատ ափերով կաթի գետեր են հոսում, այլ մարդկության պատմության մեջ ամենակազմակերպված, ամենաաշխատասեր հասարակարգը։ Եվ այդ հասարակարգում կապրեն ամենաաշխատասեր ու բարեխիղճ, կազմակերպված ու բարձր գիտակցություն ունեցող մարդիկ. (Բուռն ծափահարություններ)։ Այնպես որ մեզ հսկայական կարևորություն ունեցող աշխատանք է սպասում։ Դա, ըստ երևույթին, քիչ ժամանակ չի խլի, քանի որ մարդու հոգեբանությունը շատ ավելի դանդաղ է վերափոխվում, քան նրա կյանքի նյութական հիմքերը։

Այդ աշխատանքը կուսակցությունը կատարում է և կկատարի ավելի ու ավելի լայն ճակատով։ Այստեղ փաստորեն նշանակություն ունի ամեն ինչ՝ թե՛ ընտանիքի բարենպաստ մթնոլորտը, թե՛ ուսումնական պրոցեսի հմուտ կազմակերպումը, թե՛ աշխատանքային կոլեկտիվում տիրող առողջ իրադրությունը, թե՛ բնակչության՝ լավ հիմքերի վրա դրված կենցաղային սպասարկումը և թե՛ ուրիշ շատ բաներ։ Այս գործում հսկայական դեր է պատկանում, անշուշտ, կուլտուրայի, արվեստի, մասսայական ինֆորմացիայի միջոցների աշխատողներին։ Կուսակցության գաղափարա-դաստիարակչական աշխատանքում նրա ակտիվ օգնականները միշտ եղել են արհմիությունները, կոմերիտմիությունը և մյուս մասսայական հասարակական կազմակերպությունները։ Այժմ այս իմաստով նրանց խնդիրները է՛լ ավելի պատասխանատու են դառնում։

Ընկերնե՛ր։ Կոմունիստների և մեր հասարակության առհասարակ բոլոր գիտակից քաղաքացիների մեծ առավելությունն այն է, որ նրանք լավ են հասկանում հասարակական զարգացման իմաստն ու ուղղությունը, պարզ տեսնում են այն նպատակները, որ իր առջև դրել է մեր երկիրը, և այն ուղիները, որոնցով մենք ընթանում ենք։ Եվ այդ առաջավոր ուժերի պատվի պարտքն է այդ հասկացողությունը, իրենց այդ գաղափարական համոզվածու-

թյունը, իրենց սրտերի ազնիվ կրակը դարձնել յուրաքանչյուր սովետական մարդու սեփականությունը. (ծափահարություններ)։

Կոմունիստական շինարարության հաջողությունները մեծապես կախված են մարքս-լենինյան տեսության զարգացումից, որը մեր հուսալի գիտական կողմնացույցն է։ Մեր կուսակցության համագումարների և Կենտկոմի պլենումների որոշումները, կուսակցական կարևորագույն փաստաթղթերը մարքսիզմ-լենինիզմի ստեղծագործական զարգացման օրինակ են։ Բայց մեր առջև կանգնած խնդիրների բուն բնույթը պահանջում է հասարակական զարգացման տեսական պրոբլեմների ավելի ու ավելի ակտիվ մշակում, ստեղծագործական մոտեցում կյանքի երևույթների նկատմամբ։ «Դոգմատիզմ չի կարող լինել այնտեղ, որտեղ դոկտրինայի գերագույն ու միակ չափանիշը համարվում է նրա համապատասխանությունը հասարակական-տնտեսական զարգացման իրական պրոցեսին...» (Երկեր, հատ. I, էջ 379),— լենինյան այս խոսքերը պետք է լինեն յուրաքանչյուր մարքսիստի նշանաբանը։

Ինչպես որ արդյունաբերության և գյուղատնտեսության մեջ մենք այժմ չենք կարող բառացիորեն ոչ մի առաջընթաց քայլ անել առանց գիտության նորագույն նվաճումների օգնության, այնպես էլ մեր հասարակական կյանքում գիտության զարգացումը անհրաժեշտ բազա է որոշումներ ընդունելու, ամենօրյա պրակտիկայի համար։ Կուսակցությունը միշտ պաշտպանել է և կպաշտպանի նորարարական, լենինյան մոտեցումը հասարակական բարդ երևույթների ուսումնասիրմանը, մեր տեսական կադրերի ջանքերը՝ ուղղված հասարակական տեսության զարգացման, իրականության ստեղծագործական վերլուծության նպատակին։

Մեզ, ընկերներ, մեծ աշխատանք է սպասում պետական շինարարության, սոցիալիստական դեմոկրատիայի հետագա զարգացման ու կատարելագործման ասպարեզում։ Այդ աշխատանքի հիմնական ուղղությունները նշված են ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում։ Դրանք են՝ մասսաների է՛լ ավելի ակտիվ մասնակցությունը կառավարմանը, սովետների կողմից իրենց բազմազան ֆունկցիաների առավել լրիվ իրականացումը հասարակական կյանքի ղեկավարման ասպարեզում, ներկայացուցչական մարմինների հանդեպ գործադիր մարմինների հաշվետու լինելու սկզբունքի առավել հետևողական կենսագործումը. սոցիալիստական օրինականության հետագա ամրապնդումը. ժողովրդական վերահսկողության գործունեության բարելավումը։

Սովետական Միության հետագա զարգացման խոշոր հարցերից մեկը, որը մենք պետք է լուծենք ամենամոտ ապագայում, ՍՍՀՄ սահմանադրության հարցն է։

Մեր ամեն մի սահմանադրություն եղել է սովետական սոցիալիստական պետության զարգացման վերընթաց աստիճան, սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման նոր էտապ։ ՌՍՖՍՀ 1918 թվականի սահմանադրությունը օրենսդրականորեն վավերացրեց Հոկտեմբերի կողմից ստեղծված՝ պրոլետարիատի դիկտատուրայի պետության ծնունդը։ ՍՍՀՄ 1924 թվականի սահմանադրությունը սովետական բազմազգ պետության առաջին սահմանադրությունն էր, որը ձևակերպեց եղբայրական հանրապետությունների կամավոր միավորումը միասնական պետության մեջ։ Այժմ գործող՝ 1936 թվականի սահմանադրությունը արտացոլեց մեր երկրում շահագործող դասակարգերի վերացման փաստը, ամրապնդեց սոցիալիզմի հաղթանակը։



Բայց կյանքը առաջ է գնում։ Սահմանադրության ընդունման ժամանակից ի վեր անցած երեքուկես տասնամյակներում սովետական հասարակության զարգացման, համաշխարհային զարգացման մեջ, միջազգային ասպարեզում դասակարգային ուժերի տեղաբաշխման մեջ սկզբունքային փոփոխություններ են կատարվել։ Ո՞րն է դրանց գլխավոր էությունը։ Եթե համառոտակի ասելու լինենք, դա հետևյալն է։

Սոցիալիստական էկոնոմիկայի հիմքերի փոխարեն մենք այժմ ինչպես քաղաքում, այնպես էլ գյուղում ունենք նաև տնտեսության հասուն, լավ հագեցված տեխնիկական սիստեմ։ Այդ սիստեմը ձևավորվեց արդեն հաղթանակած սոցիալիզմի պայմաններում, այսինքն՝ 1936 թվականի սահմանադրության ընդունումից հետո։

Բանվոր դասակարգի առաջատար դերի պահպանման հետ մեկտեղ մեզ մոտ կատարվեց բոլոր դասակարգերի և սոցիալական խմբերի մերձեցման նկատելի պրոցես, ավելի ու ավելի որոշակի է հաստատվում սոցիալիստական հասարակության սոցիալական միատարրությունը։ Ակտիվորեն է ընթանում ֆիզիկական և մտավոր աշխատանքի, քաղաքի ու գյուղի, աշխատանքի և ապրուստի պայմանների միջև եղած էական տարբերությունների անէացումը։

Պատերազմից հետո մեր հասարակությունը հսկայական առաջընթաց թռիչք կատարեց կուլտուրական զարգացման բնագավառում։ Այժմ Սովետական Միությունը դարձել է համատարած գրագիտության երկիր, իսկ զբաղված բնակչության երկու երրորդն ունի միջնակարգ ու բարձրագույն կրթություն։

Զգալիորեն զարգացել է սոցիալիստական դեմոկրատիան, ամրապնդվել է իրավակարգը, զարգացել է օրենսդրությունը, բարձրացել են սովետների դերն ու ակտիվությունը։

Այս բոլոր արմատական փոփոխությունները մեր կուսակցությանը հնարավորություն ընձեռեցին անել տեսական ու քաղաքական այն կարևոր հետևությունը, որ Սովետական Միությունում, Լենինի կուսակցության ղեկավարությամբ, սովետական մարդկանց անձնվեր աշխատանքով կառուցվել է զարգացած սոցիալիստական հասարակարգ. (ծափահարություններ)։ Պրոլետարիատի դիկտատուրայի պետությունը, կատարելով իր պատմական մեծ միսիան, հետզհետե վերաճեց աշխատավորների համաժողովրդական սոցիալիստական պետության, որի ղեկավար ուժը մնում է բանվոր դասակարգը։ Հաղթանակած սոցիալիզմի՝ աշխարհում առաջին երկիրը, առաջինը ձեռնամուխ եղավ կոմունիզմի կառուցման խնդիրների պրակտիկ լուծմանը։ Խոշոր փոփոխություններ տեղի ունեցան նաև Սովետական Միության միջազգային դրության մեջ։

Հիմքեր կան կարծելու, որ մեր հայրենիքի կյանքում կատարված այդ բոլոր փոփոխությունները և նոր պայմաններում մեր հասարակության առջև կանգնած խնդիրները պետք է իրենց արտացոլումը գտնեն Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության սահմանադրության մեջ։ Այս մասին մենք արդեն ասել ենք ավելի վաղ, և համապատասխան նախապատրաստական աշխատանք կատարվում է։ Այժմ, կուսակցության Կենտրոնական կոմիտեի, ՍՍՀՄ Գերագույն սովետի նախագահության և Մինիստրների սովետի կարծիքով մոտենում է այդ աշխատանքն ավարտելու ժամանակը։ Մենք հույս ունենք, որ մինչև կուսակցության հաջորդ համագումարը սահմա-

նադրության նոր տեքստի վերաբերյալ համապատասխան առաջարկությունները համաժողովրդական քննարկման դնել։

Անտարակույս, դա պատմական մեծ իրադարձություն կլինի Սովետական Միության կյանքում. (ծափահարություններ)։ Դա ոչ միայն կօգնի սովետական մարդկանց և ամբողջ աշխարհին՝ ավելի լավ իմաստավորելու մեր նվաճումները, ամփոփելու մեր անցած ուղու արդյունքները, այլև նոր լույս կսփռի դեպի կոմունիզմ ընթացող մեր սովետական սոցիալիստական հասարակության հետագա զարգացման վրա. (ծափահարություններ)։



Թանկագին ընկերնե՛ր։ Հոյակապ է պատմական այն ուղին, որ կես դարում անցել է Լենինի հիմնադրած Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը՝ ավելի քան հարյուր ազգությունների պատկանող գրեթե քառորդ միլիարդ ազատ և իրավահավասար մարդկանց հարազատ տունը։ Սովետական մարդիկ բոլոր հիմքերն ունեն սիրելու իրենց մեծ հայրենիքը, հպարտանալու նրանով։ Սովետական հայրենիքի նկատմամբ այդ հիասքանչ զգացումով են տոգորված այս օրերին ամբողջ Սովետական Միությունում կայացած հանդիսավոր ժողովներում մեր երկրի բոլոր ազգությունների ներկայացուցիչների ելույթները, պանծալի հոբելյանին նվիրված՝ աշխատավորների հարյուր հազարավոր նամակները։

58 տարի առաջ, համաշխարհային իմպերիալիստական պատերազմի ժամանակ, Վլադիմիր Իլյիչ Լենինը շահագործող կառավարող դասակարգերի կողմից բորբոքվող շովինիզմի, մոլեգնմանը հակադրեց ազգային հպարտության պրոլետարական, կոմունիստական ըմբռնումը։ Նա գրում էր վելիկոռուսների, այսինքն ռուսների ազգային հպարտության մասին, որ նրանք իրավամբ կարող են հպարտանալ իրենց ժողովրդի հեղափոխական փառավոր ավանդույթներով, ազատագրական պայքարի այն հերոսների սխրանքներով, որոնք դուրս են եկել նրա միջավայրից։ Այսպես էր հասկանում Լենինը՝ ռուս ժողովրդի հավատարիմ զավակը և մեծ հեղափոխական ինտերնացիոնալիստը, ազգային հպարտության զգացումը. (ծափահարություններ)։ Լենինը ռուս գիտակից պրոլետարներին կոչ էր անում հավատարիմ լինել «Ռուսաստանի բոլոր ժողովուրդների պրոլետարական եղբայրությանը, այսինքն սոցիալիզմի գործին» (Երկեր, հատ. 21, էջ 122)։

Այժմ, Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միության կազմավորումից կես դար անց, մենք լիակատար հիմունքով կարող ենք ասել առավել լայն հասկացության մասին, մեր ամբողջ ժողովրդի հայրենասիրական մեծ զգացմունքի՝ սովետական մարդու համազգային հպարտության մասին (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Սովետական մարդկանց խորթ և նողկալի են մի ժողովրդի նկատմամբ մյուսի գերազանցության պարծենկոտ միտքը, և մանավանդ ազգային կամ ռասայական բացառիկության զառանցալի գաղափարները։ Սովետական մարդիկ ինտերնացիոնալիստներ են։ Այդպես է նրանց դաստիարակում կուսակցությունը, այդպես է նրանց դաստիարակում մեր ամբողջ իրականությունը։ Բայց սովետական մարդիկ, բոլոր սովետական մարդիկ, առանց ազգային պատկանելության կամ լեզվի տարբերության, հպարտանում են իրենց մեծ հայրենիքով՝ մարդկության պատմության մեջ նոր դարագլխի նախագուշակով,



հպարտանում են միլիոնների ոգեշունչ աշխատանքով, որոնք կոմունիստների առաջնորդությամբ կառուցել են նոր, իսկական արդարացի և ազատ հասարակարգ, որոնք ստեղծել են բազում ժողովուրդների եղբայրական անխախտ դաշինքը. (երկարատև ծափահարություններ)։ Նրանք հպարտանում են միլիոնավոր հերոսների՝ այդ ժողովուրդների որդիների և դուստրերի սխրագործությամբ, որոնք իրենց կյանքն են նվիրաբերել այդ նվաճումների համար մղված համատեղ պայքարում։ Նրանք հպարտանում են ազատագրված աշխատանքի մեծագործություններով, գիտության նվաճումներով, ազգային բազմապիսի ձևերով օժտված կուլտուրայի ծաղկմամբ, սովետական ժողովրդի ամբողջ ապրելակերպով, որը մարդկությանը ցույց տվեց նոր հորիզոններ, բարոյական նոր արժեքներ և իդեալներ. (երկարատև ծափահարություններ)։

Սովետական մարդու համազգային հպարտությունը վիթխարի, տարողունակ, իր բովանդակությամբ բազմահարուստ զգացմունք է։ Այն մեր երկրի կազմի մեջ մտնող ժողովուրդներից ամեն մեկի ազգային բնական զգացմունքներից ավելի խորն է և ավելի լայն։ Այն իր մեջ ներառել է այն ողջ լավագույնը, ինչ ստեղծված է միլիոնավոր ու միլիոնավոր սովետական մարդկանց աշխատանքով, խիզախությամբ, ստեղծագործական հանճարով. (ծափահարություններ)։

Ամբողջ երկիրը հպարտանում է մեր հանրապետություններից յուրաքանչյուրի բանվորների ու կոլտնտեսականների աշխատանքային սխրանքներով, գիտնականների նշանավոր հայտնագործություններով, հմուտ մարդկանց վարպետությամբ, եղբայրական ազգերից յուրաքանչյուրի ժողովրդական արվեստի անմահ ստեղծագործություններով։ Ընկերներ, գրականության, գեղանկարչության, երաժշտության հոյակապ, ինքնատիպ ստեղծագործությունները, որպիսիք տվել է Սովետական Միության ժողովուրդներից յուրաքանչյուրը, այդ ամենը վաղուց արդեն դարձել է մեր ընդհանուր սեփականությունը։ Այդ ամենը և ուրիշ շատ ու շատ բաներ, որ պարզապես անհնար է թվարկել, կազմում է սովետական մարդկանց միասնական, ընդհանուր, անհատնում ազգային հարստությունը։ Այդ ամենով իրավամբ հպարտանում է յուրաքանչյուր սովետական մարդ, հպարտանում են մեր մեծ բազմազգ հայրենիքի բոլոր որդիներն ու դուստրերը, «այնտեղ ապրող յուրաքանչյուր ժողովուրդ». (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Եվ որքան մենք առաջ ենք գնում կոմունիզմի կառուցման ուղիով, որքան բազմազան ու ամուր են դառնում ՍՍՀՄ բոլոր ժողովուրդներին ի մի շաղկապող տնտեսական, կուլտուրական և մյուս կապերը, այնքան ուժեղ և խորն է արտահայտվում մեծ ընդհանրության վեհ զգացումը, որը մենք անվանում ենք սովետական մարդու համազգային հպարտություն. (ծափահարություններ)։

Ընկերնե՛ր։ Անկարելի է գերագնահատել այն ավանդը, որը կես դարում մարդկության պատմության մեջ ներդրել է Լենինի նախաձեռնությամբ, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ ստեղծված Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը։ Այն, որ ՍՍՀՄ-ում առաջին անգամ կառուցվեց սոցիալիստական հասարակարգ, առաջին անգամ պրակտիկայում ցույց տրվեց, թե ինչ են ժողովուրդների հիրավի իրավահավասար եղբայրական հարաբերությունները, անկասկած, կհիշեն և կգնահատեն բոլոր ժողովուրդները, բոլոր ժամանակներում. (երկարատև ծափահարություններ)։

Այժմ Սովետական Միությունը շարունակում է առաջ ընթանալ։

Սովետական Միությունը դեպի կոմունիզմ է ընթանում։

Մենք գիտենք՝ այդ ուղին հեշտ չի լինի։ Կպահանջվի մեր երկրի ժողովուրդներից յուրաքանչյուրի և միասին վերցրած նրանց բոլորի ուժերի ու եռանդի լարում։ Մենք գիտենք՝ կպահանջվի մեծ ու ոգեշունչ աշխատանք, կազմակերպվածություն, քաղաքական բարձր գիտակցականություն։ Մենք գիտենք նաև այն, որ սովետական մարդիկ օժտված են այդ բոլոր հատկություններով, կկարողանան դրանք դրսևորել, կկարողանան հասնել իրենց առջև դրված հոյակապ նպատակներին. (երկարատև ծափահարություններ)։ Դրա երաշխիքն է մեր ընդհանուր հաստատ վճռականությունը՝ մինչև վերջ հասցնելու այն գործը, որն սկսվեց Լենինի ղեկավարությամբ Հոկտեմբերի լեգենդար օրերին։ Դրա երաշխիքն է սովետական ժողովրդի միասնական կամքը, որն իր արտահայտությունը գտավ մեր լենինյան կոմունիստական կուսակցության քաղաքականության մեջ. (երկարատև ծափահարություններ)։

Թո՛ղ ուրեմն հավերժ ապրի, ամրանա ու բարգավաճի մեր մեծ հայրենիքը՝ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Փա՛ռք սովետական ժողովրդի փորձված ավանգարդին՝ Սովետական Միության լենինյան կոմունիստական կուսակցությանը. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Թո՛ղ ապրի ու հաղթանակի բոլոր ժողովուրդների ազատության, անկախության և առաջադիմության գործը, սոցիալիզմի գործը. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Թո՛ղ ամուր լինի ամբողջ աշխարհի խաղաղությունը. (բուռն, երկարատև ծափահարություններ)։

Կեցցե՛ կոմունիզմը. (բուռն, երկարատև ծափահարություններ, բոլորը ոտքընկայս վանկարկում են. «Փա՜ռք Սովետական Միությանը», «Փա՜ռք ՍՄԿԿ-ին», «Փա՜ռք լենինյան Կենտկոմին»)։





Օգնություն

# ԿՈՒՍՈՒՍՈՒՑՄԱՆ ՑԱՆՑԻ ՊՐՈՊԱԳԱՆԴԻՍՏՆԵՐԻՆ ԵՎ ՈՒՆԿՆԴԻՐՆԵՐԻՆ

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՕՐԵՆՔՆԵՐԻ ՕԳՏԱԳՈՐԾՈՒՄԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՈՒՄԸ

Ա. ԼԵՈՆԻԴՈՎ

Զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում մեծանում են էկոնոմիկայի կառավարման պահանջները։ Դա կապված է ժողովրդական տնտեսության մասշտաբների զգալի ընդարձակման, տնտեսական կապերի բարդացման, հասարակական պահանջմունքների աճման և գիտատեխնիկական հեղափոխության զարգացման հետ։ Արդի փուլում արտադրության կառավարման սիստեմի կատարելագործումը ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած տնտեսական քաղաքականության հանգուցային հարցերից մեկն է։

Էկոնոմիկայի կառավարումը բարելավելու գլխավոր միջոցը դրա գիտական մակարդակի բարձրացումն է։ Ընդ որում, ծագող պրոբլեմների լուծման հաջողությունը շատ բանով որոշվում է սոցիալիզմի տնտեսական օրենքների իմացության խորությամբ և դրանց տիրապետման կատարելությամբ, պրակտիկ օգտագործման առավել արդյունավետ ձևերի ու մեթոդների կիրառմամբ։

### ՏՆՏԵՍԱԿԱՆ ՕՐԵՆՔՆԵՐՆ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ԳԻՏԱԿԱՆ ՀԻՄՔՆ ԵՆ

Սոցիալիզմի տնտեսական օրենքները, ինչպես և ամեն մի այլ տնտեսական օրենք, իրենց բնույթով օբյեկտիվ են։ Այդ օրենքներն արտահայտում են էկոնոմիկայում տեղի ունեցող պրոցեսների ու երևույթների էությունը, տնտեսական կյանքի ներքին անհրաժեշտ կապերը։ Մարդիկ ի վիճակի չեն ո՛չ վերացնելու օբյեկտիվ օրենքները, ո՛չ էլ այս կամ այն օրենքը փոխարինելու այլ օրենքներով։ Սակայն նրանք կարող են ճանաչել այդ օրենքները և դրանք օգտագործել հօգուտ իրենց։

Սոցիալիստական էկոնոմիկայում գործում են արտադրության բոլոր եղանակների համար ընդհանուր տնտեսական օրենքներ (ժամանակի խնայողության օրենքը, պահանջմունքների բարձրացման օրենքը), ամբողջությամբ վերցրած կոմունիստական հասարակական-տնտեսական ֆորմացիայի յուրահատուկ օրենքները (հիմնական օրենք, ժողովրդական տնտեսության պլանաչափ զարգացման օրենք), կոմունիզմի առաջին փուլի առանձնահատուկ օրենքները (ըստ աշխատանքի բաշխման օրենքը)։

Դրանց հետ միասին սոցիալիզմի ժամանակ գործում են մի քանի հասարակարգերում գոյություն ունեցող օրենքներ, որոնց թվին դասվում են, մասնավորապես, ապրանքային արտադրության ու շրջանառության օրենքները (արժեքի օրենքը, փողի քանակի և շրջանառության օրենքը, պահանջարկի և առաջարկի օրենքը), ինչպես նաև այնպիսի օրենքներ, որոնք ներհատուկ են վերարտադրության միայն առանձին փուլերին՝ բուն արտադրությանը, բաշխմանը, փոխանակմանը և սպառմանը։

Ինչպես սոցիալիզմի համար առանձնահատուկ, այնպես էլ բոլոր կամ մի քանի հասարակարգերի համար ընդհանուր այն բոլոր տնտեսական օրենքները, որոնք գործում են սոցիալիզմի ժամանակ, ունեն նոր, հասարակական արտադրության հենց այդ կառուցվածքին յուրահատուկ բովանդակություն, որին համապատասխան և նրանք օգտագործվում են կառավարման պրոցեսում։

Տնտեսական օրենքներն օգտագործվում են հասարակական արտադրությունը պլանայնորեն կառավարելու, այսինքն՝ օբյեկտիվ օրենքների ճանաչման հիման վրա հասարակության, պրակտիկ գործունեությունը կազմակերպելու պրոցեսում։ Կառավարման միջոցով օգտագործվում են այն հսկայական հնարավորությունները, որ ունի արտադրամիջոցների հասարակական սեփականության վրա խարսխվող ժողովրդական տնտեսությունը։ Առանց արդյունավետ գործող կառավարման սիստեմի այդ հնարավորությունները մնում են ներթաքուն։

Հիրավի, սոցիալիստական էկոնոմիկան արտադրությունն ընդլայնելու, նրա արդյունավետությունը բարձրացնելու գործնականորեն անսահմանափակ հնարավորություններ ունի։ Ընդ որում, «առանձնապես անհանդուրժելի է,— ինչպես նշեց Ա. Ն. Կոսիգինն իններորդ հնգամյա պլանի վերաբերյալ ՍՍՀՄ Գերագույն սովետի սեսիայում տրված զեկուցման մեջ,— գիտության ու տեխնիկայի նվաճումներն արտադրությունում ներդնելու գործում եղած դանդաղկոտությունը, ձեռնարկությունների տեխնիկական վերազինման և աշխատանքի արտադրողականության աճի նպատակով արված միջոցառումների բացակայությունը, արտադրական կարողությունների թերի օգտագործումը, նոր օբյեկտների շինարարության և գործարկման սահմանված ժամկետների չպահպանումը»։ Այդ թերությունների պատճառը էական չափերով թաքնված է կառավարման սիստեմի անբավարար գործունեության և անարդյունավետության մեջ։

Այսպես ուրեմն, սոցիալիստական էկոնոմիկայում ամբարված հնարավորությունների օգտագործումը էապես կախված է կառավարման սիստեմի կատարելագործումից։ Սակայն ինչպես բուն հնարավորությունները, այնպես էլ դրանց օգտագործման հաջողությունը շատ բանում որոշվում է նրանով, թե հասարակությունը որքանով է ճանաչել տնտեսական օրենքները և տիրապետել դրանք։ Օբյեկտիվ օրենքների հարաբերակցության ճիշտ ըմբռնումը և արտադրության կառավարման ասպարեզում մարդկանց պրակտիկ գործունեությունը սոցիալիստական պլանային տնտեսության առավելությունների գիտական հետազոտության և գործնական օգտագործման անհրաժեշտ պայմանն են։

Էկոնոմիկան կառավարել առանց խոր գիտելիքների, հենվելով սոսկ փորձի, ինտուիցիայի վրա և հրամանի ուժով՝ չի կարելի։ Տեսական անհոգությունն ու անփութությունն անխուսափելիորեն հանգեցնում են տնտեսական գիտելիքների թերագնահատմանը կամ ուղղակի անտեսմանը։ Ահա թե ինչու էր Վ. Ի. Լենինը մշտապես պահանջում, որ կառավարումը հենվի գիտության նորագույն նվաճումների վրա։ Օբյեկտիվ օրենքների իմացումը տնտեսական ղեկավարության բանիմացության վերաբերյալ մշակված սկզբունքի կենսագործման պարտադիր նախադրյալն է։

Տնտեսական օրենքների ուսումնասիրությունն ու ըմբռնումը օգնում են ճիշտ կողմնորոշվելու կառավարման ամենաբարդ հարցերում, որոշելու տնտեսական քաղաքականության հիմնական ուղղությունը։ Բայց նրանք չեն կարող կոնկրետ դեղատոմսեր տալ այս կամ այն տնտեսական իրադրության վերաբերյալ։ Հաջող կառավարելու համար անհրաժեշտ է տնտեսական օրենքների հետ միասին հաշվի առնել տվյալ պատմական փուլի ամբողջ յուրահատկությունը, տվյալ ճյուղի, տնտեսական շրջանի, ձեռնարկության առանձնահատկությունը։ Կառավարումը միայն այդ դեպքում է գիտական մակարդակի հասնում։

Կառավարման արդյունավետությունը ուղղակի համամասնական է այն բանին, թե ինչ չափով է այն հաշվի առնում տնտեսավարման օբյեկտիվ օրենքներն ու կոնկրետ պայմանները։ Այդ փոխադարձ կապը կարելի է անվանել կառավարման համապատասխանության կանոն։ Նրա կիրառման համար ինչ է պահանջվում այսօր։ Արդի պայմաններում տնտեսական հաջողության կարևորագույն բաղադրամասերն են՝ գիտատեխնիկական առաջընթացի արագացումը, այդ հիման վրա աշխատանքի արտադրողականության բարձրացումն ու արտադրանքի որակի բարելավումը։ Ուստի տնտեսական մեխանիզմի բոլոր տարրերը՝ ժողովրդա-տնտեսական պլանը, գները, ֆինանսավարկային միջոցները, տնտեսական խթանումների սիստեմը և այլն, պետք է գործադրվեն առաջին հերթին հենց այդ հանգուցային հարցերի լուծման համար։



Վերցնենք աշխատանքի արտադրողականության պրոբլեմը, որի անշեղ աճը սոցիալիզմի տնտեսական օրենքն է։ Իններորդ հնգամյա պլանը նախատեսում է աշխատանքի արտադրողականության աճման տեմպերի արագացում ժողովրդական տնտեսության բոլոր հիմնական ճյուղերում։

Աշխատանքի արտադրողականության բարձրացման հաշվին արտադրանքի աճի բաժինն ընթացիկ հնգամյակում արդյունաբերության մեջ կկազմի 87 տոկոս, 1966—1970 թթ. 73 տոկոսի դիմաց, շինարարության մեջ՝ 95, նախորդ հնգամյակի 58 տոկոսի դիմաց։ Ինչ վերաբերում է գյուղատնտեսությանը, ապա այստեղ արտադրանքի ամբողջ աճը ձեռք կբերվի աշխատողների թվի կրճատման պայմաններում։

Աշխատանքի արտադրողականության աճը հնգամյակներում (տոկոսներով)

| | 1961—1965 թթ. | 1966—1970 թթ. | 1971—1975 (պլան) |
|---|---|---|---|
| Արդյունաբերություն | 25 | 32,4 | 38,8 |
| Շինարարություն | 29 | 22,0 | 37,0 |
| Գյուղատնտեսություն (հանրային սեկտորում) | 18 | 37,1 | 38,0 |

Այդ խնդիրների լուծումը պահանջում է, որ պլանային առաջադրանքը, տնտեսական խթանման ֆոնդեր կազմելու կարգը և կառավարման մյուս լծակները, տնտեսության ճյուղերը, միավորումներն ու ձեռնարկություններն ամեն կերպ էապես նպաստեն աշխատանքի արտադրողականության անշեղ բարձրացմանը։ Միայն այդ դեպքում կիրականացվեն զարգացած սոցիալիստական հասարակության պայմաններում բացահայտված աշխատաժամանակի խնայողության հնարավորությունները։

Հասարակական արտադրության ղեկավարման արդյունավետությունը բնորոշվում է գլխավորապես տնտեսական օրենքների գործողությամբ ստեղծվող հնարավորությունների օգտագործմամբ և սոցիալ-տնտեսական առաջընթացի տեմպերի արագությամբ։ Այդ առաջընթացի կարևորագույն չափանիշը, ինչպես հայտնի է, արտադրաուժերի զարգացումն է[1], ուժեր, որոնք առավել խտացված են արտահայտվում հասարակական աշխատանքի արտադրողականության աճի մակարդակի և տեմպերի մեջ։ Արտադրության կառավարումից է կախված հասարակական աշխատանքի արտադրողականության բարձրացման աստիճանը։ Դրանով է հենց կանխորոշվում կառավարման սիստեմի արդյունավետությունը։ Այդպիսին է հարցի սկզբունքային լուծումը։ Սակայն անհրաժեշտ է այն կոնկրետացնել տնտեսական պրոցեսների կառավարման այս կամ այն պայմանների ու մակարդակի համեմատ։

Կառավարման արդյունավետության հարցը սոցիալիստական արտադրության արդյունավետությունը բարձրացնելու մեծ և բարդ պրոբլեմի մի մասն է։ Գլխավորը, որ մենք պետք է նկատի ունենանք այսօր, ինչպես մատնանշել է ՍՄԿԿ XXIV համագումարը, արտադրության արդյունավետության աճն է։ Տվյալ կապակցությամբ ծագող խնդիրների լուծումն անմիջականորեն կապ-

1 Տե՛ս, Վ. Ի. Լենին. Երկեր, 4-րդ հրատ., հատ. 13, էջ 305, հատ. 32, էջ 290։

ված է ժողովրդական տնտեսության պլանային կառավարման պրակտիկայում տնտեսական օրենքների օգտագործման հետ։

## ՊԼԱՆԱՅԻՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆ ՄԵԽԱՆԻԶՄԸ ԵՎ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԱՐԴՅՈՒՆԱՎԵՏՈՒԹՅՈՒՆԸ

*Օբյեկտիվ օրենքների գործողության հետազոտությունը հնարավորություն է տալիս գիտականորեն վճռելու տնտեսության պլանային ղեկավարման սիստեմի կատարելագործման և հասարակական արտադրության արդյունավետության վերելքի արմատական պրոբլեմները։ Դրանց մեջ առաջինը սոցիալիստական էկոնոմիկայի արդյունավետության չափանիշի պրոբլեմն է։ Ամեն մի սոցիալ-տնտեսական հասարակարգի արտադրության արդյունավետության չափանիշ օբյեկտիվորեն պայմանավորված է այդ հասարակարգի հիմնական օրենքով։ Այսպես, արտադրության կապիտալիստական եղանակի պայմաններում արտադրության արդյունավետության չափանիշը որոշվում է հավելյալ արժեքի օրենքով և արտահայտվում է ծախսված կապիտալի միավորին ընկնող առավելագույն շահույթով։ Այդ եղանակի հիմքում ընկած է մասնավոր կապիտալիստական շահստացումը, որը բացառում է արտադրության բարելավման հնարավորությունն ամբողջությամբ վերցրած ժողովրդական տնտեսության մակարդակով։ Սոցիալիզմի ժամանակ հիմնական տնտեսական օրենքը հասարակական սեփականության վրա խարսխվող արտադրությանն ուղղություն է տալիս աշխատավոր մասսաների պահանջմունքների ու շահերի առավել բավարարումից ելնելով։ Այն նախադրյալներ է ստեղծում ամբողջ հասարակական արտադրությունը բարելավելու համար։*

*Ժողովրդի նյութական ու հոգևոր պահանջմունքների առավել լրիվ բավարարումն ինչպես տվյալ ժամանակաշրջանում, այնպես էլ հեռանկարային տեսակետից, ձեռք է բերվում ազգային եկամտի մեծացման հաշվին՝ նրա կառուցվածքի միաժամանակյա կատարելագործման պայմաններում։ «Որքան ավելի շատ լինի ազգային եկամուտը, որքան ավելի հարուստ լինի մեր երկիրը, այնքան ավելի լավ կապրի սովետական յուրաքանչյուր քաղաքացի»,— ասված է ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերում։ Ընթացիկ հնգամյակում նախատեսված ազգային եկամտի ավելացման արագ տեմպերը հնարավորություն տվեցին նախատեսելու սպառման ֆոնդի աճման ավելի բարձր տեմպեր՝ ամբողջությամբ վերցրած կուտակման ֆոնդի և ազգային եկամտի համեմատությամբ։ Եթե 1961—1965 թթ. կուտակման ֆոնդի աճման տեմպերի համեմատությամբ սպառման ֆոնդի աճման տեմպերը կազմել են 0,91, 1966—1970 թթ.— 0,99, ապա 1971—1975 թթ. այն պետք է բարձրանա մինչև 1,03-ի։ Դրա շնորհիվ ազգային եկամտի մեջ սպառման ֆոնդի բաժինը 1970 թ. 74 տոկոսից 1975 թ. կբարձրանա մինչև 75 տոկոսի։ Ընդ որում, մշտապես ավելանում է սպառման ֆոնդի աճման բացարձակ նշանակությունը։*

Սպառման ֆոնդի բացարձակ աճը

| | 1961—1965 թթ. | 1966—1970 թթ. | 1971—1975 թթ. |
|---|---|---|---|
| Բացարձակ աճ (մլրդ ռուբլիներով) | 31 | 57 | 79 |
| Բնակչության մեկ շնչին ընկնող աճը (ռուբլիներով) | 28 | 48 | 63 |

*Սակայն սպառման ֆոնդի ամբողջ կարևորությամբ հանդերձ այն չի կարող սոցիալիստական արտադրության արդյունավետությունը որոշող չափանիշ ծառայել, որովհետև սպառման ֆոնդի առավելագույն չափ ձեռք է բերվում այն ժամանակ, երբ կուտակման ֆոնդը հավասար է զրոյի։ Բայց այդպիսի դրությունը կնշանակեր էկոնոմիկայի զարգացման դադարում։*



*Արտադրության զարգացման նպատակի սահմանումը և դրան համապատասխանող չափանիշի որոշումը էկոնոմիկայի կառավարման հիմնական պրոբլեմներից մեկն է, որովհետև միայն այդ հիման վրա կարող է կենսագործվել կառավարման որոշումների մշակումը, համադրումը և ընդունումը։ Բայց տնտեսությունը բարեհաջող կառավարելու համար արտադրության արդյունավետության սոսկ միակ չափանիշի իմացությունը բավական չէ. անհրաժեշտ է արդյունավետության տեղային չափանիշները հստակորեն որոշել տնտեսության ճյուղի, տնտեսական շրջանի, միավորման և ձեռնարկության մակարդակով։ Այդ բազմազան չափանիշները պետք է արտացոլեն սոցիալիստական հասարակության տնտեսական շահերի բարդ և ճյուղավորված սիստեմը։ Չափազանց կարևոր է, մասնավորապես, արդյունավետության ժողովրդատնտեսական չափանիշի համաձայնեցումը սոցիալիստական արտադրական ձեռնարկությունների աշխատանքի արդյունավետության չափանիշի հետ։ Ինչպես հայտնի է, ձեռնարկության գործունեության հաջողությունը չի կարող բնութագրվել համախառն արտադրանքի ծավալով, քանի որ վերջինը զգալի չափով կախված է ձեռնարկության ծախքերից։ Ձեռնարկության աշխատանքի արդյունքները առավել լրիվ են արտահայտվում զուտ եկամտի մեջ, որը մնում է պատրաստված արտադրանքի արժեքից ձեռնարկության արտադրածախքերը հանելուց հետո, իսկ նրա արդյունավետությունը՝ շահութաբերության մեջ։ Եկամուտն ու շահութաբերությունը, ինչպես մատնանշել է ՍՄԿԿ XXIV համագումարը, արտադրության արդյունավետության կարևոր ցուցանիշներն են։*

*Պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմը նպաստեց արտադրաձեռնարկությունների աշխատանքի արդյունավետության բարձրացմանը, որն արտացոլվեց դրանց շահութաբերության մեջ և 1965 թ. 13,0 տոկոսից 1970 թ. հասավ մինչև 21,5 տոկոսի։ Սակայն պրակտիկայում երբեմն տեղի են ունենում գների պետական կարգապահության խախտումներ։ Այդպիսի հանգամանքներում շահութաբերության աճը մերթ ընդ մերթ չի արտացոլում հասարակական արտադրության զարգացման մեջ ձեռնարկության իսկական ավանդը։ Այդ նշանակում է, որ դեռևս լիովին չեն սահմանված ժողովրդական տնտեսության սկզբնական բջիջների արդյունավետության չափանիշները, ինչպես և հասարակական ողջ արտադրության զարգացման արդյունավետության չափանիշների հետ համաձայնեցնելու պրոբլեմը։*

*Արտադրության արդյունավետության համընդհանուր և տեղային չափանիշների համաձայնեցումն արտահայտում է սոցիալիստական հասարակության տնտեսական շահերի միասնական սիստեմը։ Ձեռնարկությունների և առանձին աշխատողների տնտեսական շահերը, ամբողջությամբ վերցրած, հասարակության արմատական շահերին համապատասխանեցնելը կառավարման կարևորագույն ֆունկցիաներից մեկն է։ Այն իրականացվում է արտադրության տնտեսական լծակների հետ պլանավորումը, տնտհաշվարկն ու նյութական խթանումը կապակցելու և կենտրոնական մարմինների դիրեկտիվ առաջադրանքներին պատշաճ կերպով զուգակցելու միջոցով։ Սոցիալիզմի ժամանակ տնտեսական շահերի միասնությունը պայմաններ է ստեղծում կառավարումը լայնորեն դեմոկրատացնելու, կոմունիստական կուսակցության և սոցիալիստական պետության տնտեսական քաղաքականության կենսագործմանն աշխատավորներին ակտիվորեն ներգրավելու համար։*

*Տնտեսական զարգացման նպատակների մշակման և արտադրության արդյունավետության չափանիշների հիման վրա սահմանվում են ժողովրդական տնտեսության զարգացման ուղիները և առաջադրված նպատակների կատարման համար անհրաժեշտ միջոցները։ Այդ տեղի է ունենում նաև օբյեկտիվ տնտեսական օրենքների ուսումնասիրմամբ, ճանաչմամբ և համապատասխանաբար օգտագործմամբ։*

*Սոցիալիստական արտադրության արդյունավետության բարձրացումը նկատի ունի առավել մեծ չափով արդյունքների (ազգային եկամտի առավելագույնի) ստացումը՝ նյութական միջոցների ու կենդանի աշխատանքի նվազագույն ծախսումով։ Այդ առումով այժմ հրատապ են ժողովրդական տնտեսու-*

թյան բոլոր ճյուղերի հաշվեկշռվածությունը, հասարակական արտադրության կառուցվածքում առաջադիմական տեղաշարժերը, որոնք կատարվում են ժողովրդական տնտեսության պլանաչափ, համամասնական զարգացման օրենքի ավելի խոր իմացությամբ և օգտագործմամբ:

Հաշվեկշռվածությունը, համամասնականությունը էկոնոմիկայում ապահովվում են արտադրության ծավալի ու կառուցվածքի և հասարակական պահանջմունքների ծավալի ու կառուցվածքի համապատասխանությամբ, որի կապակցությամբ պահանջմունքների ուսումնասիրությունը և դրանց հեռանկարային փոփոխությունների կանխորոշումը էկոնոմիկայի կառավարման կարևորագույն ֆունկցիան են: Ընդ որում, հաշվեկշռվածությունը նկատի ունի պահանջմունքների մեծության նկատմամբ արտադրության ծավալի մի որոշ (հասարակականորեն անհրաժեշտ) գերազանցում: Տվյալ հարաբերակցությունը կարող է արտահայտվել հետևյալ ֆորմուլայով՝

$$\frac{P}{Q} > 1,$$

որտեղ P-ն արտադրության ծավալն է, Q-ն հասարակական պահանջմունքների մեծությունը:

Մատնանշված օրինաչափությունն արտահայտվում է, մասնավորապես, այն բանում, որ ժողովրդական սպառման ապրանքների արտադրությունը պետք է աճի ավելի բարձր տեմպերով, քան բնակչության դրամական եկամուտները: Այլ կերպ ասած, առաջարկը պետք է գերազանցի պահանջարկին. հետևաբար, առաջարկի աճման տեմպերը պետք է բարձր լինեն վճարունակ բնակչության պահանջարկի աճման տեմպերից: Ընթացիկ հնգամյակում բնակչության դրամական եկամուտների 41 տոկոս աճի առկայությամբ պետական և կոոպերատիվ առևտրի մանրածախ ապրանքաշրջանառությունը կավելանա 42 տոկոսով, իսկ բնակչության համար վճարովի ծառայությունների ծավալը՝ 46 տոկոսով:

Հասարակական պահանջմունքների ծավալի նկատմամբ արտադրության գերազանցությունը, դրանց միջև համապատասխանության անհրաժեշտությունն ըստ կառուցվածքի օրինաչափ են նաև արտադրության ոլորտի համար: Հաշվեկշռվածություն ստեղծել, նշանակում է արտադրաձեռնարկությունների ու կառույցները լրիվ ապահովել ժամանակակից մեքենաներով, հումքի տարբեր տեսակներով, վառելիքով և էլեկտրաէներգիայով:

Էկոնոմիկայի հաշվեկշռվածության աստիճանից է կախված կառավարման, այդ թվում սոցիալիստական հասարակությունում բաշխման ու փոխանակման պրոցեսների կառավարման, այս կամ այն ձևերի ու մեթոդների գործադրումը: Այսպես, «նեղ տեղերի» ու դեֆիցիտի վերացումը հնարավորություն է տալիս հրաժարվել նյութական միջոցների ֆոնդավորման խիստ սիստեմից, բարձրացնել ուղղակի կապերի և մեծածախ առևտրի դերը, տնտեսական պայմանագիրը դարձնել հասարակական արտադրության պլանայնությունն ապահովելու ակտիվ միջոց: Ընդհակառակը, նյութական հաշվեկշիռների լարվածությունը հարուցում է մեծածախ առևտրի սահմանափակում, նյութական միջոցների բաշխման գործում կարգորոշման ուժեղացում: Դրանում արտահայտվում է, մասնավորապես, հասարակական արտադրության կառավարման ձևերի ու մեթոդների կանխորոշությունը: Սակայն բոլոր հանգամանքներում արտադրության միջոցների գործադրման ոլորտների կազմակերպումը, նյութական միջոցների պլանաչափ բաշխումը մնում են որպես սոցիալիստական էկոնոմիկայի կառավարման կարևոր ֆունկցիա:

Սոցիալիստական էկոնոմիկայի արդյունավետությունն անշեղորեն բարձրացնելու հիմնական պայմաններից մեկը հասարակական աշխատանքի պլանաչափ բաշխումն է ըստ արտադրության տարբեր ճյուղերի ու տեսակների, նրա կառուցվածքի կատարելագործումը: Պատահական չէ, որ աշխատաժամանակի խնայողությունը, հասարակական աշխատանքի պլանաչափ բաշխ-



մամբ հանդերձ, Կ. Մարքսը կոչել է սոցիալիզմի և կոմունիզմի առաջին տնտեսական օրենքը:

Էկոնոմիկայի կառավարումը, որի ընթացքում առաջադիմական փոփոխություններ են կատարվում հասարակական աշխատանքի կառուցվածքում, հնարավորություն է տալիս գործադրելու ժողովրդական տնտեսության արդյունավետության աճի այնպիսի գործոններ, որոնց կարելի է անվանել «կառուցվածքային տեղաշարժի էֆեկտ»:

Արտադրության շահավետության աճի մեջ մեծ դեր են խաղում կապիտալ շինարարության կառուցվածքային փոփոխությունները: Իններորդ հնգամյակում բարելավվում է պետական կապիտալ ներդրումների տեխնոլոգիական կառուցվածքը. շինարարական-մոնտաժային աշխատանքների բաժինը 1966—1970 թթ. 60,4 տոկոսից 1971—1975 թթ. կիջնի մինչև 58,8 տոկոսի: Միաժամանակ սարքավորման վրա կատարվող ծախսերի բաժինը 31,8 տոկոսից կբարձրանա մինչև 33,3 տոկոսի: Հատկապես կարևոր է նշել այն, որ հնգամյա պլանը, կապիտալ ներդրումների աճի համեմատությամբ, նախատեսում է հիմնական ֆոնդերի գործադրման ավելի բարձր տեմպեր:

Արտադրության արդյունավետությունը բարձրացնելու էական գործոն է արտադրանքի նյութատարության իջեցումը: Տվյալ գործոնի դերի մասին է վկայում այն, որ ժողովրդական տնտեսության մեջ նյութական ծախսերի միայն 1 տոկոսի կրճատումը հավասարազոր է ազգային եկամտի 3—4 մլրդ ռուբլով ավելացման: Իններորդ հնգամյա պլանում նախատեսվում է զգալիորեն իջեցնել նյութական միջոցների ծախսման նորմաները, որը պայմաններ է ստեղծում դրանց զգալի խնայողության համար: Այսպես, սև մետաղների գլանվածքի պատրաստման նորմաների՝ պլանով նախատեսված 18,6 տոկոս իջեցումը կապահովի 8 մլն տոննայի չափ գլանվածքի ընդհանուր խնայողություն: Հարկավոր է նաև նկատի ունենալ, որ նյութական ծախսերի խնայողության շնորհիվ համեմատաբար պակաս է աճում առավել ֆոնդատար արդյունահանվող ճյուղերի արտադրանքը, որով և կրճատվում է կապիտալ ներդրումների պահանջը:

Արտադրանքի նյութատարողության կրճատումը իրականացվում է նյութական միջոցների ծախսման առաջադիմական նորմաներ սահմանելու, միջճյուղային կապերը կատարելագործելու, մատակարարների կողմից սպառողների հետ համաձայնեցված արտադրանքի ասորտիմենտի, չափի, որակի գծով մատակարարումների պայմանները խստորեն պահպանելու հիման վրա: Այդ ամենը նշանակում է, որ հասարակական արտադրության կառավարումն է՛լ ավելի կատարելագործելու հիման վրա օգտագործվում է աշխատաժամանակի խնայողության օրենքը:

Արտադրության արդյունավետությունը բարձրացնելու էական հարցերից մեկը կենդանի աշխատանքի խնայողությունն է: Դա կապված է ինչպես ժամանակի խնայողության օրենքի ընդհանուր պահանջների, այնպես էլ լրացուցիչ աշխատուժի հաշվին արտադրության էքստենսիվ ընդլայնման հնարավորությունները ներկայումս զգալիորեն կրճատելու հետ:

## ՏՆՏԵՍԱԿԱՆ ՕՐԵՆՔՆԵՐԻ ՍԻՍՏԵՄԸ ԵՎ ԿՈՄՊԼԵՔՍԱՅԻՆ ՄՈՏԵՑՈՒՄԸ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ԿԱՌԱՎԱՐՄԱՆԸ

Զարգացած սոցիալիստական հասարակության մեջ տնտեսական և սոցիալ-քաղաքական պրոցեսների ղեկավարմանը կոմպլեքսային մոտեցում ցուցաբերելը հույժ անհրաժեշտ է: Կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ մատնանշվել է՝ «Գնալով ավելի կարևոր է դառնում կոմպլեքսային մոտեցումը խոշոր ժողովրդատնտեսական որոշումների պլանավորմանն ու ընդունմանը: Մեր առջև ծառացած խնդիրների բնույթն իսկ այնպիսին է, որոնց լուծումը, որպես կանոն, պահանջում է շատ ճյուղերի ու տնտեսական շրջանների ջանքերի համաձայնեցում, ընդգրկում է զանազան միջոցառումների ամբողջ սիստեմի կենսագործում»:

Կառավարմանը կոմպլեքսային կամ սիստեմային մոտեցումը մի քանի

տեսանկյուններ ունի։ Դրանցից գլխավորներն են՝ տնտեսական աճման պլանների զուգակցումը սոցիալական պրոբլեմների և գիտատեխնիկական առաջընթացի պրոբլեմների խոր մշակման հետ. տարբեր ճյուղերի և տնտեսական շրջանների զարգացման միջոցառումների զուգորդումը. արտադրության վրա ներգործման պլանային-տնտեսական լծակների ամբողջ սիստեմի օգտագործման միասնությունը։ Այդ ամենն իրականացվում է սոցիալ-տնտեսական պրոցեսների կառավարման ճյուղավորված սիստեմի միջոցով։

Սոցիալիստական էկոնոմիկայի կառավարմանը կոմպլեքսային մոտեցում ունենալու անհրաժեշտությունն էապես որոշվում է նրանով, որ սոցիալիզմի տնտեսական օրենքները, որոնց մասին խոսվեց վերևում, գործում են ոչ թե միմյանցից մեկուսի, այլ կազմում են փոխադարձորեն կապված միասնական սիստեմ։

Իսկ ինչ գործնական հետևություններ պետք է անել սոցիալիզմի տնտեսական օրենքների սիստեմային գործողությունների վերաբերյալ դրույթներից։ Այդ հետևություններից գլխավորն այն է, որ անհնարին է այս կամ այն օրենքն օգտագործել մեկուսացած, անտեսելով նրա կապը մյուս օրենքների հետ։ Հիրավի, իդեալականորեն ընդունենք հաշվեկշռված պլան, որը ճշտորոշ արտացոլում է միջճյուղային և ներճյուղային համամասնություններն ու ապահովում համապատասխանությունը արտադրության ծավալի և հասարակական պահանջմունքների միջև։ Այդպիսի պլանը հաշվի է առնում պլանային զարգացման օրենքով թելադրվող պահանջները։ Սակայն դա կկատարվի միայն այն դեպքում, եթե հայտնի են և ճիշտ են օգտագործվում դրա իրականացման միջոցները, այն տնտեսական լծակներն ու նյութական խթանները, որոնք ուղղված են դրա հաջող իրականացմանը։ Իսկ եթե այդ լծակներն ու խթանները հակասեն առաջադրված պլանին, ապա կարելի է համարձակ կերպով պնդել, որ այն չի կենսագործվի։

Կամ վերցնենք մի այլ, համեմատաբար մասնավոր օրինակ, որը վերաբերում է գնագոյացմանը։ Օբյեկտիվ պայմաններին լիովին համապատասխանող գները, որոնք խթանում են տեխնիկական պրոգրեսն ու արտադրանքի որակի բարելավումը, կարո՞ղ են արդյոք ամեն մի դեպքում ձեռնարկության աշխատանքի արդյունավետությունը բարձրացնելու գործունյա լծակի դեր կատարել։ Այդ բանը կախված է ոչ միայն բուն գներից, այլև ուրիշ հանգամանքներից։ Այսպես, շահույթների բաշխման և խրախուսիչ ֆոնդերի գոյացման անբավարար կշռադատված սիստեմը կարող է էականորեն իջեցնել գիտականորեն հիմնավորված գների առավելությունները։ Դեռ ավելին, նույնիսկ երբ շահույթների բաշխման շնորհիվ ստեղծվում են արտադրությունը խթանելու և տեխնիկապես կատարելագործելու բավարար ֆոնդեր, վերջինները տեխնիկական առաջընթացի վրա դրական ազդեցություն են թողնում միայն համապատասխան «ապրանքայնացման» պայմանով։ Սակայն այդ տեսակետից մեզ մոտ ամեն ինչ չէ, որ բարեհաջող է։ Այսպես, պլանավորման և տնտեսական խթանման նոր սիստեմով աշխատող ձեռնարկությունների կողմից կազմվող ֆոնդերի մի զգալի մասը չի օգտագործվում կամ գործադրվում է ոչ ըստ նշանակության։ Միայն 1970 թ. արտադրության զարգացման ֆոնդի չօգտագործված միջոցների մնացորդը արդյունաբերական ձեռնարկություններում կազմում էր 889 մլն ռուբլի։ Հենց այդ պատճառով էլ իններորդ հնգամյա պլանում նախատեսված է հատուկ ռեզերվների առանձնացում՝ զարգացման ֆոնդի հաշվին ձեռնարկությունների արտադրամիջոցների պահանջմունքները բավարարելու համար։

Տնտեսական օրենքների սիստեմային գործողությունների դրույթներից բխող կարևոր հետևությունն այն է, որ հասարակական արտադրության կառավարման յուրաքանչյուր լծակի արդյունավետությունն ավելանում է, եթե այն մտցվում է միջոցների որոշակի սիստեմի մեջ և, ընդհակառակը, պակասում է, եթե այն կիրառվում է ոչ կոմպլեքսորեն։ Դժբախտաբար, պրակտիկայում և գիտական հետազոտություններում հաճախ այլ մոտեցում է ցուցաբերվում։ Այն բնութագրվում է որևէ «առանձնակի միջոց» կիրառելով կամ



հանձնարարելով, միջոց, որը դիտվում է որպես բոլոր դժրախտություններից, բոլոր բարդ հարցերի լուծման եղանակ։ Որպես այդպիսի միջոցներ են առաջադրվում մերթ ֆինանսական լծակները, մերթ դիրեկտիվ առաջադրանքները, մերթ նյութական խթանման սիստեմը, մերթ աշխատանքի կազմակերպումը։ Սակայն փորձը ցույց է տալիս, որ էկոնոմիկայի կառավարման մեջ եղած հաջողությունը միայն այն ժամանակ է կոմպլեքսային մոտեցում առաջ բերում, երբ այն հենվում է օբյեկտիվ տնտեսական օրենքների ռեալ սիստեմի վրա։

Այսօր արտադրության կառավարման նկատմամբ կոմպլեքսային մոտեցման հանգուցային հարցերից մեկը, ինչպես նշվեց կուսակցության XXIV համագումարում ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, «կենտրոնական մարմինների դիրեկտիվ առաջադրանքների ճիշտ զուգակցումն է արտադրության նկատմամբ ներգործման տնտեսական լծակների օգտագործման հետ»։ Այդպիսի լծակների թվին դասվում են շահույթը, գինը, վարկը, աշխատավարձը, խրախուսման ֆոնդերը և այլն։ Նշված զուգակցումն ապահովվում է սոցիալիզմի օրոք գործող տնտեսական օրենքների, այդ թվում՝ ժողովրդական տնտեսության զարգացման օրենքի և արժեքի օրենքի իմացության ու օգտագործման վրա հենվող կառավարման միջոցով։

Տնտեսական օրենքների մեկուսի քննարկման դեպքում պլանավորող մարմինների դիրեկտիվ առաջադրանքները և տնտեսական լծակները ներկայանում են որպես ինչ-որ ինքնուրույն, կողք-կողքի դասավորված մի պատկեր։ Մինչդեռ իրականում արտադրության վրա ներգործման տնտեսական լծակները սոցիալիստական էկոնոմիկայի պլանային կառավարման սիստեմի անխզելի մասն են կազմում։ Սոցիալիզմի տնտեսական օրենքների սիստեմային օգտագործման վրա հիմնվող նման մոտեցումը գնալով ավելի է կյանք մտնում, առանձնապես տնտեսական ռեֆորմի կենսագործման պայմաններում։

Լարված պլանների ընդունմանը խթանող տնտեսական պայմանները, գիտատեխնիկական առաջընթացի արագացումը և արտադրանքի որակի բարելավումը կապված են ժողովրդական տնտեսության մեջ տնտհաշվարկային հարաբերությունների զարգացման ու կատարելագործման հետ։ Տնտհաշվարկը՝ սոցիալիզմին ներունակ պլանային ղեկավարության մեթոդ է, որը հիմնված է ոչ թե տնտեսական որևէ մեկ օրենքի, այլ բոլոր օրենքների ամբողջության՝ սոցիալիզմի հիմնական տնտեսական օրենքի, պլանաչափ զարգացման օրենքի, ժամանակի խնայողության օրենքի և արժեքի օրենքի վրա։ Տնտհաշվարկի սիստեմում կարևոր տեղ են գրավում ապրանքա-դրամական հարաբերությունների կատեգորիաները՝ շահույթը, ինքնարժեքը, գինը, շահավետությունը և այլն, որոնց կատարելագործման անհրաժեշտությունը մատնանշվեց կուսակցության XXIV համագումարում։

Խոսելով ապրանքա-դրամական հարաբերությունների կատարելագործման մասին, հարկավոր է ուշադրություն դարձնել դրանց երկու առանձնահատկությունների վրա։ Առաջին, տվյալ հարաբերությունները և դրանց համապատասխանող կատեգորիաները խաղում են տնտեսական լծակների, կամ խթանների դեր, ներգործելով արտադրության վրա։ Հիրավի, ինքնարժեքը, գինը, շահավետությունը միայն հաշվային սոսկ կատեգորիաներ չեն (թեև դրանց, որպես հասարակական հաշվետարության միջոցի, դերը շատ մեծ է), այլև արտադրության արդյունավետությունը բարձրացնելու, գիտատեխնիկական առաջընթացն արագացնելու, արտադրանքի որակը բարելավելու գործոններ են։ Այդ ֆունկցիները նրանք կատարել կարող են միայն այն դեպքում, եթե ներառվեն պլանաչափորեն կազմակերպված տնտհաշվարկային հարաբերությունների մեջ։

Երկրորդ, ապրանքա-դրամական հարաբերությունների միջոցով ետադարձ կապեր են իրականացվում էկոնոմիկայում, առանց որի անհնարին է վերջինի հաջող զարգացումը։ Դրանց օգտագործումը հնարավորություն է տալիս ճկուն դարձնել արտադրական ծրագիրը, այն ուղղելով հասարակական պահանջմունքների բավարարմանը։ Առանց այդպիսի «հարմարեցման» անխուսափե-

*լիորեն կառաջանան արտադրապրոցեսի այս կամ այն կարգի՝ առանձին անհամամասնությունների խախտումներ (օրինակ, արտադրության և պահանջմունքների անհաշվեկշռելիություններ):*

*Ետադարձ կապերի գործարար սիստեմը նկատի ունի տնտեսական պայմանագրերի նշանակության զգալի բարձրացում, պայմանագրեր, որոնք հնարավորություն են տալիս կոնկրետացնելու պլանային առաջադրանքները, արտադրական ծրագիրը համաձայնեցնելու պահանջմունքների ծավալի և կառուցվածքի հետ, բարձրացնելու պատասխանատվությունը պլանի կատարման համար: Կապերի այդ ձևը նպաստում է պլանային առաջադրանքներում օպերատիվ, անհրաժեշտ ուղղումներ մտցնելուն, տնտեսական խթանների ու լծակների դերը բարձրացնելուն:*

*Արդի պայմաններում նախապես տնտեսական պայմանագրեր կնքելու հիման վրա ընդլայնվում են պլանային առաջադրանքներ սահմանելու հնարավորությունները: Մեր կարծիքով, նման պրակտիկային կնպաստեր որոշ տնտեսագետների առաջարկությունը՝ արտադրության ծավալի պլանավորումից մատակարարումների ծավալի պլանավորմանն անցնելու մասին, որովհետև հենց արտադրանքի մատակարարումներն են ամենամեծ չափով կապում արտադրությունն ու պահանջմունքները:*

*Ետադարձ կապերի սիստեմը հասարակական արտադրությունը կառավարելու անհրաժեշտ տարրն է: Այդ կարևոր պրոբլեմի հետազոտությունը, տնտեսական օրենքների մեխանիզմի վերլուծությունը, որի միջոցով էկոնոմիկայում կենսագործվում են շրջադարձ կապեր, կառավարման տեսության հետագա զարգացման արմատական ուղղություններից մեկն են:*

*Հասարակական արտադրանքի օբյեկտիվ օրենքների օգտագործման մեխանիզմում կենտրոնական տեղը գրավում է սոցիալիստական պետության տնտեսական քաղաքականությունը: Վերջինը ժողովրդական տնտեսության զարգացման մեջ մտցնում է անհրաժեշտ կազմակերպվածություն, պլանաչափություն, նպատակասլացություն: Առանց տնտեսական քաղաքականության, որի միջոցով պետությունն իրեն ներկայացնում է որպես արտադրության միջոցների սեփականատեր, անհնարին է ապահովել էկոնոմիկայի ամբողջականությունը, նրա, որպես միասնական ժողովրդատնտեսական օրգանիզմի, զարգացումը:*

*Սոցիալիստական պետության տնտեսական քաղաքականությունն ամենասերտ կերպով կապված է հասարակական արտադրության կառավարման հետ: Այդ քաղաքականությունը որոշում է ժողովրդական տնտեսության զարգացման նպատակները՝ առաջիկա պլանային ժամանակաշրջանում և համեմատականորեն տևական հեռանկարները, հասարակության տնտեսական գործունեության հիմնական ուղղությունները, տնտեսավարման համապատասխան ձևերն ու մեթոդները, որոնք կենսագործվում են էկոնոմիկայի պլանային ղեկավարության սիստեմի միջոցով:*

*Էկոնոմիկայի կառավարման, որպես սոցիալիստական պետության գործունեության կարևորագույն ուղղության մասին բազմիցս գրել է Վ. Ի. Լենինը: Նրա ցուցումները կյանքում մարմնավորում է մեր կուսակցությունը: XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ ասվում է. «Կուսակցության և սովետական պետության համար, ինչպես որ կանխագուշակում էր Լենինը, էկոնոմիկան՝ գլխավոր քաղաքականությունն է, այն քաղաքականությունը, որի հաջողությունից վճռականապես կախված է սովետական ժողովրդի առաջընթաց շարժումը դեպի կոմունիզմ և մեր սոցիալիստական շարժման միջազգային դիրքերի ամրապնդումը»:*

*Սոցիալիզմի տնտեսական օրենքների ավելի ու ավելի լիակատար տիրապետումը հնարավորություն է տալիս գործադրել նոր կարողություններ և օգտագործել զարգացած սոցիալիստական հասարակության էկոնոմիկայի մեծագույն առավելությունները, զգալիորեն բարձրացնել արտադրության արդյունավետությունը և այդ հիման վրա կենսագործել սոցիալ-տնտեսական միջոցառումների լայն ծրագիր: Հետևաբար, խոսքը վերաբերում է պատմական վիթխարի նշանակություն ունեցող խնդրի:*



*Պլանային կառավարման պրակտիկայում բարձրացնելով տնտեսական օրենքների օգտագործման ձևերի ու մեթոդների ճկունությունն ու գործունեությունը, սոցիալիստական հասարակությունը վստահորեն ընթանում է կոմունիզմի ուղիով: Այդ ուղու վրա ծագող խնդիրների հաջող լուծման նախադրյալ է ծառայում տնտեսագիտության հետագա ստեղծագործական զարգացումը և դրա սերտակցումը կառավարման պրակտիկայի հետ: Երբ գիտության ճշմարտությունները պրակտիկ գործողությունների լեզվի չեն փոխադրվում, ժանգոտվում են: Պրակտիկան, եթե բեղմնավորված չէ գիտության եզրահանգումներով, չի կարող լիարժեք արդյունքներ տալ: Կառավարման արդյունավետ սիստեմը հնարավորություն է տալիս, կարծես, մեկը մյուսով բազմապատկելու գիտության արժեքներն ու գործնական փորձը: Սոցիալ-տնտեսական առաջընթացի արագացումը դրանց սինթեզի արդյունքն է:*

«Вопросы экономики», № 11, 1972 г.

---

## ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՀԱՐԱԲԵՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ՄԱՐՔՍ-ԼԵՆԻՆՅԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ ՊՐՈԲԼԵՄՆԵՐ

# ԻՄՊԵՐԻԱԼԻԶՄԻ ԱՐՏԱՔԻՆ ՔԱՂԱՔԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՃԳՆԱԺԱՄԸ

Լ. ՎԻԴՅԱՍՈՎԱ

Վերջին տարիների ընթացքում բուրժուական քաղաքական գործիչների և գիտնականների ելույթներում, արևմտյան երկրների մամուլում գնալով ավելի համառորեն է դրվում արտաքին քաղաքականության նոր կողմնորոշումների որոնումներն արագացնելու անհրաժեշտության հարցը, նպատակ ունենալով արտաքին քաղաքականությունը համապատասխանեցնել աշխարհի փոփոխված իրադրությանը: Պատահական չէ մեծ հետաքրքրությունը Արևմուտքի արտաքին քաղաքական պլատֆորմի նորացման նկատմամբ: Դրանում իր արտացոլումն է գտնում այն, որ արևմտյան տերությունների կառավարող շրջաններն սկսել են հասկանալ «սառը պատերազմի» դոգմաների վրա կառուցված արտաքին քաղաքական ստրատեգիայի անհեռանկարայնությունը: Իմպերիալիզմի արտաքին քաղաքական ստրատեգիայի ձախողումները օրինաչափ հետևանքն են կապիտալիզմի խորացող ընդհանուր ճգնաժամի, որի դրսևորման ձևերից մեկն է նաև իմպերիալիստական պետությունների արտաքին քաղաքականության ճգնաժամը:

Այդ ճգնաժամի հիմնական էությունը, ամենից առաջ, այն է, որ գնալով ավելի է աճում անհամապատասխանությունը իմպերիալիզմի բնույթին հատուկ էքսպանսիոնիստական ձգտումների և այն գործնական հնարավորությունների միջև, որ ունի իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունը՝ այդ ձգտումներն իրականացնելիս: Այն կանխորոշված է համաշխարհային զարգացման օբյեկտիվ գործոնների ներգործությամբ և, առաջին հերթին, համաշխարհային սոցիալիստական սիստեմի հզորության աճով և ազդեցության ամրապնդմամբ, իմպերիալիզմի գաղութային սիստեմի փլուզմամբ և ազգային-ազատագրական շարժման աննախընթաց թափով, հակաիմպերիալիստական պայքարի ճակատի ընդլայնմամբ ու կայունացմամբ, կապիտալի երկրների սոցիալական ճգնաժամի խորացմամբ և հեղափոխական պայքարի վերելքով, միջիմպերիալիստական հակասությունների խիստ սրմամբ:

«Ժամանակակից էտապում,— նշված է ՍՄԿԿ XXIV համագումարի բանաձևում,— երբ սոցիալիզմը ամուր հաստատվել է աշխարհի նշանակալի մասում և անշեղորեն զարգանում է, երբ կապիտալիստական պետությունների ներսում աճում են հասարակության հեղափոխական վերակառուցման օգտին հանդես եկող ուժերը, երբ ազգային-ազատագրական պայքարը շատ երկրներում վերաճում է շահագործման ու ճնշման ամբողջ կարգի դեմ ուղղված պայքարի, է՛լ ավելի ակնառու է դառնում իմպերիալիզմի պատմական անհեռանկարայնությունը»[1]:

Ներկայումս իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունը ձևավորվում է փոխկապակցված երեք բաղադրատարրերից— սոցիալիզմի երկրների, երիտասարդ անկախ պետությունների նկատմամբ արտաքին քաղաքական կուրսից և հենց իմպերիալիզմի երկրների փոխհարաբերություններից: Նրա հիմնական օղակն է պայքարը սոցիալիզմի դեմ: Իմպերիալիստական պետությունների արտաքին քաղաքականության մյուս ուղղությունները մշակվում են՝ հաշվի առնելով ստրատեգիական ու տակտիկական այն խնդիրները, որ դնում է ժամանակակից կապիտալիզմն իր առջև սոցիալիզմի հետ հակամարտելիս:

Մեր օրերում իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունն իրականացվում է այնպիսի պայմաններում, երբ միջազգային հարաբերությունները զարգանում են սոցիալիստական պետությունների արտաքին քաղաքականության ներգործությամբ, որը, ինչպես ընդգծվել է կուսակցության XXIV համագումարին տրված ՍՄԿԿ Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, ագրեսիային հասցվող ուժգին հակահարվածը զուգորդում է միջազգային հասունացած պրոբլեմների կարգավորման կոնստրուկտիվ գծի հետ, իսկ երբ հնարավորություն են ընձեռում հանգամանքները, սոցիալական այլ սիստեմի պետությունների հետ լավ հարաբերությունների պահպանման հետ[2]: Ներկա ժամանակաշրջանում, այնպիսի պայմաններում, երբ ծաղկել ու հաջողությամբ զարգանում է սոցիալիզմի համաշխարհային սիստեմը, չկա բացարձակապես ոչ մի միջազգային հարց, որ բուրժուազիան կարողանար ինքնուրույն լուծել՝ առանց հաշվի առնելու ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների քաղաքականությունը:

Իմպերիալիստական պետություններից յուրաքանչյուրի քաղաքականությանը, անշուշտ, հատուկ են իր յուրահատուկ գծերը: Դրանք պայմանավորված են մի շարք գործոններով, ինչպես՝ համաշխարհային ասպարեզում և իմպերիալիստական սիստեմի կազմում տվյալ պետության դիրքով, նրա օբյեկտիվ հնարավորություններով (տնտեսական, ռազմական և այլն), պատմական անցյալով, վերջապես՝ կառավարման ղեկի մոտ կանգնած մարդկանց սուբյեկտիվ հատկություններով: Եվ, այնուամենայնիվ, իմպերիալիստական բոլոր պետությունների արտաքին քաղաքականությանը հատուկ է նպատակների և դրանց հասնելու մեթոդների որոշ ընդհանրությունը, որը կանխորոշվում է իմպերիալիզմի դասակարգային բնույթի միասնությամբ:

Ուստի, իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ճգնաժամի դրսևորումներին ևս հատուկ են ընդհանուր գծեր, թեև ամեն մի առանձին դեպքում դրանք տարբեր կերպ են արտահայտվում:

●

Խոսելով այն սպեցիֆիկ գծերի մասին, որոնցում իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ճգնաժամն արտահայտվում է ամենից ավելի խտացած ձևով, անհրաժեշտ է նշել, ամենից առաջ, միլիտարիզմի ներգործության վիթխարի աճը կապիտալիստական Արևմուտքի երկրների արտաքին քաղաքական կուրսի ձևավորման վրա:

Միլիտարիզմի Վ. Ի. Լենինի բացահայտած երկու հիմնական ֆունկցիաներից— ներքին ճակատում պայքարի զենքը (Militarismus nach innen) և արտաքին ընդհարումների ժամանակ կիրառվող ռազմական ուժը (Militarismus nach aussen)[3], կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի դարաշրջանում առանձնապես ուժեղացվում է արտաքին քաղաքական ֆունկցիան: Սոցիալիզմի երկրների դեմ պատերազմի նախապատրաստումը, ռազմական պսիխոզի բորբոքումը, լարվածության ուժեղացումն ու սպառազինությունների մրցավազքը հետպատերազմյան տարիներին, ըստ էության, դարձել են իմպերիալիզմի արտաքին քաղաքականության առանցքը:

1 «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», «Հայաստան» հրատ., 1971, էջ 254—255:
2 «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», էջ 29—30:
3 Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 15, էջ 229:

Դրա հետևանքը եղավ այն, որ, մի կողմից՝ անչափ ուժեղացավ զինված ուժերի և ռազմա-արդյունաբերական մոնոպոլիաների դերը կապիտալիստական երկրների արտաքին քաղաքականության ինչպես երկարաժամկետ, այնպես էլ արտաքին քաղաքական ու դիվանագիտական կոնկրետ գործողությունների մշակման ոլորտում: ԱՄՆ-ում ռազմական մոնոպոլիաներն այնպիսի ազդեցիկ դիրք են գրավում, որ բուրժուական լագերի առանձին ներկայացուցիչներ անգամ խոսում են ռազմա-արդյունաբերական կոմպլեքսի անսահման իշխանությունը սահմանափակելու անհրաժեշտության մասին: Մյուս կողմից՝ իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ճգնաժամի ցուցանիշ է այն փաստը, որ զինված ուժերը, նրանց առկայությունը և նրանց՝ ինչպես հակառակորդների, այնպես էլ պարտնյորների վրա ճնշում գործադրելու համար իբրև գործիք օգտագործելու հնարավորությունը դառնում են իմպերիալիստական տերությունների արտաքին քաղաքականության կարևորագույն գծերից մեկը: «Ուժի օգտագործում: Միջազգային հարաբերություններ և արտաքին քաղաքականություն» բնորոշ վերնագրով 1971 թվականին ԱՄՆ-ում հրատարակված միջազգային պրոբլեմների մասնագետների հոդվածների ժողովածուի խմբագրական մեկնության մեջ այդ առթիվ ասված է. «Ռազմական ուժն ունի կարևոր, եթե ոչ կենտրոնական նշանակություն միջազգային հարաբերությունների համար: Այն որոշ կարգ ու կանոն է մտցնում քաոսի մեջ և օգնում է մշակելու և պարտադրելու խաղի կանոնները»[1]:

Այդպիսի «խաղի կանոններ» ասելով հասկացվում է, ամենից առաջ, բռնության, ահաբեկման, շանտաժի կիրառման սկզբունքների վրա հիմնված արտաքին քաղաքականությունը: «Ռազմական ստրատեգիան,— գրում է ժողովածուի հեղինակներից մեկը՝ Հարվարդի համալսարանի պրոֆեսոր Շելլինգը,— այլևս չի կարելի դիտել... որպես գիտություն ռազմական հաղթանակի մասին: Մեր ժամանակում այն համարժեք է հարկադրման, ահաբեկման ու սարսափեցման արվեստին: Ռազմական ստրատեգիան վերածվել է հարկադրման դիվանագիտության»[2]:

Արտաքին քաղաքական ու դիվանագիտական ջանքերի կենտրոնացումը հարկադրանքի խնդիրների լուծման վրա առանձնապես բնորոշ է ամերիկյան իմպերիալիզմին, որը, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարում, վերջին տարիներս վերստին հաստատեց շահագործման ու ճնշման միջազգային սիստեմի յուրօրինակ երաշխավորի ու պահապանի դեր խաղալու իր նկրտումը[3]:

ԱՄՆ-ի հետպատերազմյան տարիների արտաքին քաղաքականության կարևորագույն ուղղություններից մեկն է դարձել «գերակշիռ ուժ» ստեղծելու հոգսը: Հենց սկզբից էլ ենթադրվում էր, որ նման «գերակշիռ ուժ» կարող է ստեղծվել ո՛չ միայն զինված ուժերի և սպառազինությունների ավելացման համար ԱՄՆ-ի գործադրած սեփական ջանքերի հաշվին՝ սոցիալիզմի երկրների դեմ ագրեսիվ գործողությունների, այդ երկրների նկատմամբ ահաբեկման ու շանտաժի մեթոդներ կիրառելու նպատակով: ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության մեջ մեծ նշանակություն է տրվում ռազմա-քաղաքական բլոկների կազմակերպմանը, օտար տերիտորիաներում ռազմական բազաների ցանցի ստեղծմանը: Ամերիկյան արտաքին քաղաքականության արգասիքը ռազմա-քաղաքական խմբավորումների ճյուղավորված սիստեմն է, որի կենտրոնական օղակն է Հյուսիսատլանտյան դաշինքը:

Ամերիկյան քաղաքական ստրատեգների մտահղացման համաձայն, այդպիսի ռազմա-քաղաքական սիստեմի կազմավորումը պետք է նպաստեր ո՛չ միայն իմպերիալիզմի համար ընդհանուր ռազմական մեքենայի ստեղծմանը, այլև իմպերիալիստական բոլոր պետությունների արտաքին քաղաքական կուրսի կոորդինացմանը՝ ԱՄՆ-ի շահերին համապատասխան: Նման պլանների իրականացման երաշխիքն այն փաստն էր, որ իրենց դաշնակիցներին ներքաշում էին սպառազինությունների ինտենսիվ մրցավազքի ու պատերազմական նախապատրաստությունների մեջ, որոնք ծավալվել էին խաղաղ ժամանակին անհարիր մասշտաբներով:

[1] „The Use of Force. International Politics and Foreign Policy“. Boston, 1971, p. 27.

[2] Ibid., p. 99.

[3] Տե՛ս «ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը», էջ 19—20:



Բլոկների կազմավորումն ինքնին մի փորձ է՝ հաղթահարելու իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ու ստրատեգիայի ճգնաժամը: Սակայն այն փաստն իսկ, որ դրանց կազմավորման հետևանքով մի տերությունը՝ ԱՄՆ-ը, դարձել է իմպերիալիզմի յուրահատուկ ուժային կենտրոն, իսկ մյուս տերությունները, դրանց թվում և այնպիսիները, որոնք անցյալում առաջատար դեր էին խաղում համաշխարհային քաղաքականության ոլորտում, համաձայնել են ստորադաս դիրքերի, իմպերիալիստական արտաքին քաղաքականության ճգնաժամի պարզորոշ հայտանիշն է:

Ամերիկյան ստրատեգների մտադրությունների իրականացումը հեշտացել էր այն բանով, որ մյուս առաջատար կապիտալիստական պետությունների կառավարող շրջանները կիսում էին սոցիալիզմի երկրների դեմ ուղղված ԱՄՆ-ի քաղաքականության հիմքում դրված գաղափարները: Դրա հետ մեկտեղ հարկավոր է նշել, որ կապիտալիստական տարբեր պետություններ միևնույն ակտիվությամբ չէին միանում «ատլանտիզմի» արտաքին քաղաքական դրույթներին ու դոգմաներին: Այդ բացատրվում էր ինչպես օբյեկտիվ գործոններով, այնպես էլ առանձին ժամանակամիջոցներում այդ պետություններում իշխանության գլուխ կանգնած կուսակցությունների ու գործիչների սուբյեկտիվ դիրքով:

Ինչպես հայտնի է, «ատլանտիզմի» դոկտրինային ժամանակին ամենից ավելի եռանդուն հարեցին Անգլիան և ԳՖՀ-ն՝ դրանից բխող հետևանքներով հանդերձ: Առաջինը՝ այն պատճառով, որ ԱՄՆ-ի հետ ունեցած «հատուկ հարաբերություններում» տեսնում էր համաշխարհային տերության իր կարգը պահպանելու արդյունավետ միջոցը, երկրորդը՝ քանի որ «ատլանտիզմը» նրա առջև ուղի էր բացում դեպի վերազինում և, ինչպես այն ժամանակ թվում էր արևմտագերմանական ղեկավար գործիչներին, դեպի տանուլ տրված պատերազմի արդյունքները վերանայելու հեռանկար:

Ամերիկյան իմպերիալիստների պլաններում ոչ պակաս տեղ էր հատկացվում նաև ռազմա-քաղաքական բլոկների ձևավորման տնտեսական ասպեկտներին: Նրանք ելնում էին այն բանից, որ դրանց կազմավորմամբ կապահովվի նաև կիրառվող տնտեսական կարգի միջոցառումների համաձայնեցված կենսագործումը, որպես արտաքին քաղաքական նպատակներին հասնելու միջոց, ինչպես, օրինակ, սոցիալիստական երկրները կատարվող արտահանման արգելումը կամ սահմանափակումը, երիտասարդ անկախ պետություններին «օգնություն» ցույց տալը (և համապատասխանաբար դրա դադարեցումը): Դրա հետ միասին տնտեսական ինտեգրացումը դիտվում էր որպես ամբողջապես իմպերիալիզմը, և, մասնավորապես, Արևմուտքի ռազմական դաշինքներն ամրապնդելու միջոց:

Պետական-մոնոպոլիստական հիմքի վրա ռեգիոնալ բլոկների ստեղծման ձևով իրականացվող տնտեսական ինտեգրացիայի մեթոդներից բացի, իմպերիալիզմի արտաքին քաղաքականության զինանոցում ոչ պակաս կարևոր նշանակություն է ձեռք բերել նաև տնտեսական էքսպանսիան, որի հիմնական ձևն են կապիտալ ներդրումները ուրիշ երկրներում: Դրանք օգտագործվում են իբրև այս կամ այն երկրին քաղաքական որոշակի օրիենտացիա պարտադրելու ներգործուն միջոց:

Ինչ վերաբերում է «երրորդ աշխարհի» երկրների նկատմամբ իմպերիալիստական պետությունների վարած արտաքին քաղաքականությանը, ապա այստեղ գլխավորը մնում է նրանց ձգտումը՝ թույլ չտալ, որ դրանք անջատվեն կապիտալիզմի սիստեմից, իրենց ձեռքում պահել ազդեցության հին ոլորտները և ուղիներ բացել նոր ոլորտներ թափանցելու համար (հաճախ իմպերիալիստական միավորումների ու բլոկների իրենց իսկ պարտնյորների հաշվին):

Կլասիկ գաղութատիրության մեթոդները՝ ռազմական ակցիաները (ինչպես Անգլիայի, Ֆրանսիայի և Իսրայելի ագրեսիան Եգիպտոսի դեմ 1956 թվականին), զորքերի ափհանումը (իրադարձությունները Լիբանանում և Հորդանա-

նում 1958 թվականին), զինված ինտերվենցիան (ինչպես 1965 թվականին Դոմինիկյան Հանրապետության դեմ ձեռնարկված փորձը) զուգորդվում են նեոգաղութատիրության բազմապիսի ու ընդարձակ ձևերի հետ։ Դրանք են՝ ամենակարևոր դիրքերի գրավումը զարգացող երկրների էկոնոմիկայում, միջամտությունը դրանց քաղաքական կյանքին, ներգրավումը իմպերիալիստական բլոկների մեջ և այլն։ Իրենց պլանների իրականացման նպատակով հենվելով նացիոնալիզմի ու սեպարատիզմի վրա, իմպերիալիստական ուժերը ջանում են ներքուստ թուլացնել զարգացող երկրները, հակադրել միմյանց, դժվարացնել նրանց շփումները սոցիալիստական աշխարհի հետ։

Հետպատերազմյան տասնամյակներին իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունը եղել է միջազգային լարվածության, պետությունների հարաբերություններում թշնամության ու անվստահության ուժեղացման, «սառը պատերազմի» բորբոքման, հակասովետականության և հակակոմունիզմի աճման գլխավոր աղբյուրը։ Սակայն համաշխարհային զարգացման ընթացքը օրըստօրե ավելի պարզորոշ է բացահայտում, որ անհիմն են ՍՍՀՄ, սոցիալիստական սիստեմի դեմ մղվող պայքարում հաջողության հասնելու իմպերիալիզմի հույսերը։ «Զսպելու», «զանգվածային հատուցման», «կոմունիզմը մի կողմ շպրտելու», «ճկուն արձագանքման» դոկտրինները, որոնք փոխարինում էին իրար որպես Միացյալ Նահանգների ռազմական ստրատեգիայի և արտաքին քաղաքականության հիմնարար դոկտրիններ, հաջորդաբար անլուծելի հակասության մեջ էին մտնում աշխարհի ուժերի ռեալ հարաբերակցության հետ։ Արտաքին քաղաքական դոկտրինների փոփոխման ընթացքն իսկ, ակնառու ցույց է տալիս «ուժի դիրքի» քաղաքականության առավել որոշակի նշմարվող ձախողումը։

Համաշխարհային ասպարեզում ուժերի հարաբերակցության անշեղ փոփոխումը հօգուտ սոցիալիզմի, Սովետական Միության և ամբողջ սոցիալիստական սիստեմի տնտեսական ու ռազմական հզորության ամրապնդումը, ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների հեղինակության մեծացումը բացահայտեցին սոցիալիզմը «գերակշիռ ուժի» օգնությամբ խորտակելու, ինչպես նաև գաղութային սիստեմի փլուզումը կասեցնելու հաշիվների ուտոպիականությունը։ Ըստ էության, արդի էտապում Եվրոպայում, ինչպես և աշխարհի մյուս շրջաններում, տեղի է ունենում հույսը ռազմական ուժի վրա դրած իմպերիալիզմի ողջ արտաքին քաղաքական ստրատեգիայի փլուզում։

Արևմտյան որոշ տեսաբաններ ու քաղաքական գործիչներ, դատելով ժամանակակից միջազգային իրադրության առանձնահատկությունների մասին, փորձում են ապացուցել, թե, իբր, միջուկային զենքի երևան գալն ինքնին փոխել է միջազգային հարաբերությունների ողջ սիստեմը, պատերազմը դարձնելով անիմաստ՝ նրա արտասովոր մեծ ավերիչ ուժի պատճառով։ Հ. Քիսինջերը, ամերիկյան արտաքին քաղաքականությանը նվիրված իր ակնարկներում գրել է. «Միջուկային դարը խախտեց տրադիցիոն չափանիշները... Ժամանակակից ռազմական ուժի պարադոքսն այն է, որ ուժի հրեշավոր աճը խզեց նրա փոխադարձ կապը արտաքին քաղաքականության հետ...»[1]։

Ճշմարտությունը, սակայն, այն է, որ ավելի զգույշ մոտեցումը մասսայական ոչնչացման զենքի օգտագործմանը՝ իբրև պատերազմ վարելու միջոցի նկատմամբ, բացատրվում է ո՛չ թե ընդհանրապես դրա երևան գալով, այլ նրանով, որ այդպիսի զենք և այդ զենքը նպատակին հասցնելու միջոցներ ունի նաև Սովետական Միությունը, բացատրվում է ԱՄՆ-ի արտաքին քաղաքական դոկտրինների ձախողմամբ։ ԱՄՆ-ը տարիներ շարունակ կարծում էր, թե միջուկային զենքը և այդ զենքը նպատակին հասցնելու միջոցների մոնոպոլիան իրենց ձեռքում կմնա, այդ հույսն առանձնապես գրավիչ էր կապված, այսպես կոչված՝ «անխոցելիության մոնոպոլիայի» հետ, մանավանդ, որ

[1] H. A. Kissinger. American Foreign Policy. Three Essays. New York, 1969, p. 59.



Միացյալ Նահանգները համեմատաբար ավելի հեռու են Ասիայի և Եվրոպայի պատերազմական գործողությունների պոտենցիալ թատերաբեմերից։ Սովետական Միության կողմից սպառազինության ժամանակակից տեսակների ստեղծումը ճգնաժամային դրության մեջ դրեց արտաքին քաղաքական և ռազմա-ստրատեգիական այդ կոնցեպցիաները, արագացրեց արժեքների վերագնահատման պրոցեսը ինչպես ռազմական ստրատեգիայի, այնպես էլ արտաքին քաղաքականության բնագավառում։ «Միջուկային զենքի գյուտը և այն, թե ինչպես է նա բաշխված ներկայումս, ամբողջովին փոխել են իրադրությունը»[1],— գրել է պրոֆեսոր Ս. Հոֆմանը, որը համարվում է ԱՄՆ-ի դեմոկրատական կուսակցության մասնագետներից մեկը արտաքին քաղաքականության հարցերում։

Եվ, այնուամենայնիվ, «գերակշիռ ուժի» վրա հիմնված հաշիվների ձախողումը պայմանավորող պատճառների հարցը հանգեցնել միայն Միացյալ Նահանգների միջուկային մոնոպոլիայի վերացմանը՝ կնշանակեր գիտակցաբար նեղացնել պրոբլեմը։ Իմպերիալիստական արտաքին քաղաքականության ճգնաժամը պայմանավորված է միջազգային ասպարեզում տեղի ունեցող փոփոխությունների ողջ կոմպլեքսով և, ամենից առաջ, սոցիալիստական համագործակցության հզորության ամրապնդմամբ, որը վճռականորեն հակազդում է խաղաղության և ժողովուրդների ազատության գործին խաթարող բոլոր մտադրություններին ու պլաններին և ակտիվ պայքար մղում արմատավորելու խաղաղ գոյակցության և փոխշահավետ համագործակցության սկզբունքները միջազգային հարաբերությունների պրակտիկայում։

Իմպերիալիզմի արտաքին քաղաքականությունը ճգնաժամային վիճակից դուրս բերելու միջոցներ որոնելիս, ամերիկյան իմպերիալիզմի ստրատեգներն առաջ քաշեցին տեղային, կամ սահմանափակ, պատերազմների տակտիկան։ Վերջիններս դիտվում էին ո՛չ միայն որպես սահմանափակ մասշտաբի ռազմական ակցիա՝ ուղղված այս կամ այն պետության դեմ, այլև որպես արտաքին քաղաքականության գործիք, որը, վերջին հաշվով, ուղղված է սոցիալիստական երկրների, ազգային ազատագրության, դեմոկրատիայի և առաջադիմության ուժերի դեմ։ Հետպատերազմյան տարիների ընթացքում իմպերիալիստական երկրները ձեռնարկեցին մի շարք տեղային ռազմական գործողություններ երիտասարդ անկախ պետությունների դեմ։ Դրանց մեջ առանձնակի տեղ է գրավում ԿԺԴՀ դեմ ԱՄՆ-ի կատարած զինված ինտերվենցիան ՄԱԿ-ի դրոշի ներքո, իսկ հետագա տարիներին՝ ամերիկյան զինվորականության ավանտյուրաները Հնդկաչինում, ապա նաև արաբական պետությունների դեմ Իսրայելի ագրեսիան, որն իրականացվեց ամերիկյան իմպերիալիստների աջակցությամբ։

Սակայն, Հնդկաչինի ու Մերձավոր Արևելքի պատերազմներն էլ բացահայտեցին ծայրամասային ագրեսիվ պատերազմների ստրատեգիայի սնանկությունն ու անհեռանկարայնությունը։ Դրա հետևանքը եղավ իմպերիալիստական արտաքին քաղաքականության ճգնաժամի հետագա խորացումը։ Այդ բանն անդրադարձավ ինչպես իմպերիալիզմի ռազմա-քաղաքական բլոկների գործերի վիճակի, այնպես էլ նախկին գաղութային աշխարհում իմպերիալիստական երկրների դիրքերի վրա։

Ինչպես Եվրոպայում, այնպես էլ նրա սահմաններից դուրս ամերիկյան զինվորականության վիետնամական ավանտյուրայի ձախողումը արագացրեց ամերիկյան իմպերիալիզմի քաղաքական, տնտեսական ու ռազմական հեգեմոնիայի սկզբունքի վրա հիմնված «բլոկային համերաշխության» քայքայման պրոցեսը, նոր զարկ տվեց արևմտյան աշխարհի ուժերի բալանսի տեղաշարժերին, որոնք պայմանավորված են միջիմպերիալիստական հակասությունների սրմամբ։

«Պատերազմը ո՛չ միայն սրեց մեր բոլոր ներքին բախումները,— գրում է «Ֆորին աֆերս» հանդեսի խմբագիր Արմստրոնգը,— այլև ուժեղացրեց ամե-

[1] „Foreign Affairs“, July 1972, p. 621.

րիկյան հասարակության քննադատությունն արտասահմանում, ինչպես և օտարերկրյա կառավարությունների դժգոհությունը, որոնք գտնում են, որ Միացյալ Նահանգները ավելի ու ավելի շատ են անտեսում իրենց քաղաքական շահերն ու տնտեսական կարիքները»[1]։

Քանի որ ամերիկյան լիդերությունը արևմտյան աշխարհում պայմանավորվում էր փոխադարձաբար կապված մի շարք տարրերով (տնտեսական ու ռազմական գերակշռությունը, առաջնությունը վալյուտային բնագավառում, առաջավոր դիրքերը գիտատեխնիկական առաջընթացում և այլն), ապա այդ տարրերից որևէ մեկի թուլացումը կազմալուծում է ողջ սիստեմը։ 60-ական թվականների վերջերին Արևմուտքում սկսված վալյուտա-ֆինանսական ճգնաժամը հանգեցրեց միջիմպերիալիստական հակասությունների արագ աճին։ «Բրետոն-Վուդսում և Տարիֆների ու առևտրի մասին գլխավոր համաձայնագրով (ԳԱՏՏ) սահմանված ֆինանսական և առևտրական կանոնները համապատասխանում էին ԱՄՆ-ի ցանկություններին,— գրում է ամերիկյան մասնագետներից մեկը։— Միացյալ Նահանգները որպես բացառություն կարող են փոխարինել դրանք կա՛մ անմիջական ռազմական առավելություններով, (ինչպես, օրինակ, ամերիկյան բազաները Ճապոնիայում), կամ հետագա քաղաքական շահերով), այն հաշվով, որ ընդհանուր շուկայից կծնվի «ատլանտյան Եվրոպան»)։ Հենց այդ սիստեմն էլ աղետի ենթարկվեց վալյուտային ճգնաժամի և ԱՄՆ-ի ու նրանց դաշնակիցների առևտրական թունոտ բախումների ժամանակ»[2]։

Կյանքը գնալով ավելի է սրում մրցակցությունն ամերիկյան իմպերիալիզմի և Արևմուտքի նրա պարտնյորների միջև, որը, անշուշտ, անդրադառնում է միջազգային հարաբերությունների վրա։ Սխալ մրցակցության աստիճանի մասին կարելի է դատել, մասնավորապես, այն սուր վեճերից, որոնք վերջին տարիներս ծավալվել են Միացյալ Նահանգների և «Ընդհանուր շուկայի» միջև։ Պակաս հատկանշական չեն նաև ճապոնա-ամերիկյան հարաբերությունների փոփոխությունները։ ԱՄՆ-ի և Ճապոնիայի տնտեսական փոխհարաբերությունների հարցերը քննարկելու նպատակով անցյալ ամառ ճապոնական պրեմիերի հետ կազմակերպված հանդիպման ժամանակ ամերիկյան պրեզիդենտը, ըստ արևմտյան մամուլի, հանդես է եկել «խնդրողի դերում»։

Իմպերիալիստական բլոկների պարտնյորների հարաբերությունների բարդացումը, որոնք դեռ համեմատաբար ոչ վաղ անցյալում «պարզ ու ավտոմատիկ» էին, մեծ չափով արագանում է գիտատեխնիկական հեղափոխության հետևանքով ծնված միջիմպերիալիստական նոր հակասությունների առաջացմամբ։ Դրանցից է միջուկային զենք ունենալու և բլոկի հրթիռա-միջուկային պոտենցիալը տնօրինելու իրավունքի մասին ՆԱՏՕ-ի դաշնակիցների միջև ծագած վեճերը, որոնք մեծ չափով արագացրին Ֆրանսիայի դուրս գալը այդ բլոկի ռազմական կազմակերպությունից։ Բայց հակասությունների սրմանը ավելի մեծ չափով է նպաստում այն հանգամանքը, որ գիտա-տեխնիկական հեղափոխության պայմաններում իմպերիալիստական բլոկների մասնակիցներն ավելի ու ավելի զգաստ են գնահատում այն վտանգը, որին կենթարկվի իրենցից ամեն մեկը, եթե ներգրավվի ամերիկյան զինվորականության էքսպանսիոնիստական ավանտյուրաների ոլորտը։ Պատահական չէ, որ վերջին տարիներս իմպերիալիստական բլոկներում քաղաքական դիկտատի համար ԱՄՆ-ի հավակնությունները դարձան սուր բախումների առարկա, ընդ որում, ինչպես վկայում են իրադարձությունները, ամերիկյան կառավարող շրջանները երբեմն ստիպված են լինում նահանջել իրենց արտոնություններից, որոնք մի ժամանակ այնպես անվիճելի էին թվում։

Ներկա պայմաններում առավել ակնհայտ է դառնում այն փաստը, որ Արևմուտքի ռազմա-քաղաքական բլոկների սիստեմը անկայուն դուրս եկավ, որ ՆԱՏՕ-ի և իմպերիալիստական մյուս բլոկների ճգնաժամն ստացավ պերմանենտ բնույթ, օրինակ, ըստ Փարիզի Ատլանտյան ինստիտուտի դիրեկտորի

[1] „Foreign Affairs", October 1972, p. 5.
[2] „Foreign Affairs", July 1972, p. 634.



տեղակալ Կուրտ Գաստայգերի, ՆԱՏՕ-ն այժմ անցնում է տարաձայնությունների, խտրականության և դեզինտեգրացիայի ողջ հովանդանով։ «Այն շահերն ու կոնցեպցիաները, որոնք ընկած են Հյուսիսային Ամերիկայի և Արևմտյան Եվրոպայի քաղաքականության հիմքում,— պարզաբանում է նա,— ներկայումս լրջորեն տարբերվում են և զգալիորեն հեռու են միմյանցից, իսկ մի շարք դեպքերում էլ բախվում են»[1]։

Գաղութային և նեոգաղութատիրական ճնշումից ազատագրվելու համար զարգացող երկրների ժողովուրդների մղած պայքարը ավելի է ընդլայնվում, ընդունելով ամենաբազմապիսի ձևեր՝ զինված ապստամբություններից մինչև Լատինական Ամերիկայի երկրների համատեղ գործողությունները՝ ընդդեմ ամերիկյան պետությունների կազմակերպության մեջ ԱՄՆ-ի դիկտատի։ Առանձնապես կարևոր է նշել, որ ներկա իրադրության մեջ, երբ ազգային-ազատագրական շարժումը հենվում է սոցիալիզմի երկրների բարոյական ու նյութական հզոր աջակցության վրա, կոպիտ գոռգոռոցը և ուժ գործադրելու սպառնալիքները կորցնում են իրենց ներգործությունը։ Դրա ակնառու օրինակը եղավ Բանգլադեշի պետության դեմ ամերիկյան ռազմամոլների ձեռնարկած ուժի ցույցի ապարդյունությունը։ Լրջորեն թուլացան Անգլիայի դիրքերը «Սուեզից դեպի արևելք», որտեղ անգլիական իմպերիալիզմը, շարունակում է հենարան որոնել իր կայսերական հավակնություններն իրականացնելու համար։ Վերջերս Պակիստանի ՍԵԱՏՕ-ի ռազմական բլոկից դուրս գալը փաստորեն այդ բլոկը դրեց լիակատար քայքայման եզրին։ Պակիստանի որոշումը մի անգամ ևս բացահայտում է ագրեսիվ ռազմական բլոկներ կազմելու քաղաքականության սնանկությունը և ապացուցում, որ զարգացող երկրների ժողովուրդներն իրենք են ցանկանում պաշտպանել իրենց ազգային շահերը՝ առանց իմպերիալիստական տերությունների միջամտության։

Ազգային-ազատագրական պայքարից աճած ուժերը և ամենից առաջ Ասիայի, Աֆրիկայի և Լատինական Ամերիկայի անկախ պետությունները, ինչպես նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարի փաստաթղթերում, առավել մեծ ճնշում են գործադրում իմպերիալիզմի վրա։ Թեև ազատագրված երկրների մեծ մասը դեռ շարունակում է մնալ համաշխարհային կապիտալիստական տնտեսության սիստեմում, իմպերիալիզմն արդեն չի կարող դրանք դիտել որպես իր ռեզերվը կամ թիկունքը, իսկ այդ ավելի է դժվարացնում նրա արտաքին քաղաքական մտադրությունների իրականացումը։

Իմպերիալիստական տերությունների արտաքին քաղաքականության և, առանձնապես ԱՄՆ-ի արտաքին քաղաքականության ճգնաժամը սաստկացնող կարևոր գործոններից անհրաժեշտ է նշել հասարակայնության հարաճուն ճնշումը։ Եթե անցյալում իմպերիալիզմի երկրների քաղաքական ստրատեգները միջազգային իրադրության սրումը, միջազգային քաղաքական ու ռազմական ճգնաժամերի պրովոկացիաները սովորաբար համարում էին հասարակական կարծիքը մոբիլիզացնող հուսալի միջոց՝ կառավարող շրջանների քաղաքականությունը պաշտպանելու համար, ապա այժմ ագրեսիվ արտաքին քաղաքական կուրսը գնալով ավելի խիստ դիմադրության է հանդիպում հասարակայնության կողմից։

Կապիտալիստական Արևմուտքի մի շարք երկրների հակապատերազմական շարժումն սկսում է ավելի ու ավելի միանալ սոցիալական պայքարին։ Իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ճգնաժամում արտացոլվում են նրա ներքին քաղաքականության ճգնաժամը, կապիտալիստական կարգին հատուկ սոցիալական հակամարտությունների և հակասությունների սրումը։ Հենց այդ պատճառով էլ միջազգային ասպարեզում իմպերիալիստական տերությունների ձեռնարկած տակտիկական շատ քայլեր ու ստրատեգիական պլաններ ունեն մի ձգտում— գտնել ներքին զարգացման մի քանի պրոբլեմների լուծումը, ներգործել հասարակայնության տրամադրությունների վրա, թուլացնել քաղաքական և սոցիալական պայքարի սրությունը։

[1] „Nouvelles de l'OTAN", 1972, N 5—6, pp. 12, 13.

Ժամանակակից կապիտալիզմի առանձնահատկությունները, նշվեց ՍՄԿԿ XXIV համագումարին տված մեր կուսակցության Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ, զգալի չափով բացատրվում են նրանով, որ այն հարմարվում է աշխարհի նոր իրադրությանը։ Դա լիովին վերաբերում է նաև իմպերիալիզմի արտաքին քաղաքականությանը։

Այն ուղին, որ անցել են ԱՄՆ-ի ղեկավար գործիչները «Տրումենի դոկտրինայի» հռչակումից մինչև «դիմակայության դարաշրջանից բանակցությունների դարաշրջանին անցնելու» մասին հայտարարությունները, «պատերազմի եզրին հավասարակշռություն պահպանելու» դալեսյան քաղաքականությունից մինչև ՍՍՀՄ ու ԱՄՆ-ի միջև մի շարք համատեղ համաձայնագրերի ստորագրումը, ինչպես և այնպիսի փաստաթղթի ստորագրումը, ինչպիսին է «ՍՍՀՄ և ԱՄՆ-ի փոխհարաբերությունների հիմունքները» համոզիչ կերպով ցույց է տալիս, որ ուժերի բալանսը փոխվել է հօգուտ սոցիալիզմի, դեմոկրատիայի և առաջընթացի։

Արտաքին քաղաքականության պրոբլեմների նկատմամբ ավելի ռեալիստական մոտեցում ցուցաբերելու տենդենցը Արևմուտքի բոլոր երկրներում ծագում է ոչ միաժամանակ և ոչ հավասար չափով է հանգեցնում արտաքին քաղաքական հնացած դոգմաներից ու դրույթներից հրաժարվելուն։ Արևմտյան երկրների մեջ այդ բնագավառում առաջնակարգ դեր կատարեց Ֆրանսիան, որի համար «ատլանտիզմին հավատարիմ լինելուց»՝ որպես արտաքին քաղաքականության միակ և վերանայման չենթարկվող ելակետից հեռանալը ուղեկցվում էր ՍՍՀՄ և սոցիալիստական մյուս երկրների հետ համագործակցությունը զարգացնելու տենդենցի ամրապնդմամբ։ Այժմ այդ տենդենցը, իհարկե, տարբեր ուժով, դրսևորվում է կապիտալիզմի երկրների ճնշող մեծամասնության քաղաքականության մեջ։

ԳՖՀ-ում «մեծ կոալիցիայի» հեռանալը իշխանությունից նույնպես պետք է դիտել իբրև հույները «ուժի դիրքի» քաղաքականության վրա դրած շրջանների սնանկացման վկայություն։ Կառավարական կոալիցիայի փոփոխումը նշանակում էր անցում սահմանափակ «ատլանտիզմից» դեպի միջազգային ռեալությունների և ԳՖՀ հնարավորությունների ավելի զգաստ գնահատում և, որպես հետևանք, դեպի ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների հետ հարաբերությունները նորմալացնելու կուրսի իրականացում։

Արևմտյան տերությունների կառավարող շրջանների՝ սոցիալիզմի երկրների հետ ուղղակի հակամարտության կուրսից հեռանալու արտահայտությունն էր այն, որ հետպատերազմյան տարիներին, սոցիալիստական պետությունները հանուն խաղաղության պահպանման և բարի-դրացիական ու համագործակցության սկզբունքով կապիտալիստական երկրների հետ հարաբերությունների կարգավորման, ընդունեցին մի շարք գաղափարներ ու առաջարկություններ, ինչպես և այն, որ հարաճուն պատրաստակամություն է ցուցաբերվում կոմպրոմիսների դիմելու միջազգային հանգուցային հարցերում։

Վերջին ժամանակների միջազգային իրադարձություններում առանձնահատուկ նշանակություն ունի Գերմանիայի Ֆեդերատիվ Հանրապետության հետ ՍՍՀՄ և ԼԺՀ կնքած պայմանագրերի ուժի մեջ մտնելը։ «ԳՖՀ հետ Սովետական Միության և Լեհաստանի կնքած քաղաքական պայմանագրերը,— նշեց Լ. Ի. Բրեժնևը 1972 թվականի նոյեմբերի 13-ին ԲԺՀ կուսակցական-կառավարական պատվիրակության պատվին տրված ճաշկերույթում,— շրջադարձային կարևոր կետ դարձան Եվրոպայում լարվածության թուլացման ընդհանուր պրոցեսում։ Այն փաստը, որ ԳԴՀ և ԳՖՀ կառավարություններն այժմ կարողացան համաձայնեցնել այդ երկու պետությունների հարաբերությունների հիմքերը սահմանող պայմանագիրը, անշուշտ, նոր մայրցամաքի ներդրում է քաղաքական մթնոլորտի բարելավման գործում[1]։

Սովետա-ամերիկյան մայիսյան հանդիպումը, որ կայացավ բարձր մա-

[1] «Պրավդա», 1972 թվականի նոյեմբերի 14։



կարդակով, հատկապես այդ ընթացքում ստրատեգիական սպառազինությունների շուրջ ձեռք բերված պայմանավորվածությունը, ինչպես և երկու պետությունների փոխհարաբերությունների սկզբունքային հիմունքների մասին կայացած համաձայնությունը սկիզբ դրեցին ՍՍՀՄ ու ԱՄՆ-ի հարաբերությունների վերակառուցման պրոցեսին, որն անկասկած համապատասխանում է միջազգային խաղաղության պահպանման ու ամրապնդման շահերին։ Բնորոշ է, որ վերջին ժամանակներս ՆԱՏՕ-ի անդամ մի շարք պետություններ, ինչպես, օրինակ, Կանադան և Իտալիան, քաղաքական համաձայնագրեր կնքեցին Սովետական Միության հետ։ Մի խոսքով, ՍՍՀՄ և սոցիալիստական համագործակցության երկրների ակտիվ ու սկզբունքային արտաքին քաղաքականության ներգործությամբ ընդլայնվում են պետությունների բազմակողմանի և իրավահավասար համագործակցության նախադրյալները հատկապես քաղաքական ասպարեզում։

Մոլորություն կլիներ, սակայն, ենթադրել, թե միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխություններին, միջազգային զարգացման նոր տենդենցներին իմպերիալիզմի արտաքին քաղաքականությանը հարմարվելու մասին վկայող փաստերը նշանակում են ամբողջ դիրքերի հանձնում, իր ազդեցությունը վերականգնելու և ամրապնդելու ձգտում, իմպերիալիզմի հրաժարում։ Ինչպես նշված է կոմունիստական ու բանվորական կուսակցությունների՝ 1969 թվականի միջազգային խորհրդակցության փաստաթղթերում, «չնայած իմպերիալիզմը, որպես համաշխարհային սիստեմ, ավելի չի ուժեղացել, այն մնում է լուրջ և վտանգավոր հակառակորդ»[1]։

Պատահական չէ, որ վերջին ժամանակներս Արևմուտքի «ուղեղի կենտրոններում» ակտիվացել է արտաքին քաղաքական նոր ձևակերպումների ու դրույթների որոնման ու ընտրության աշխատանքը։ Ընդ որում, կենտրոնական խնդիրն է՝ մշակել հնարավորին չափ ավելի ճկուն տարբերակներ, որոնք հնարավորություն ընձեռեն իմպերիալիստական երկրների կապերի ու փոխհարաբերությունների սիստեմը դարձնելու ավելի առաձգական, իսկ սոցիալիզմի երկրների և ազգային-ազատագրական շարժման նկատմամբ իրենց կուրսը՝ առավել հնարամիտ ու նուրբ, Արևմուտքի քաղաքական ստրատեգների համար «ճկունությունը» դառնում է օրվա լոզունգ։

Բայց եթե ավելի ուշադիր զննենք այն բազմաթիվ գաղափարները, առաջարկություններն ու ֆորմուլները, որոնք իբրև երկընտրանք առաջ են քաշվում իրեն սպառած արտաքին քաղաքական կուրսից, ապա չի կարելի չնկատել, որ դրանց մեծ մասի անհրաժեշտ բաղադրամասն է «ուժի դիրքի» քաղաքականությունը շարունակելու նպատակով ավելի կատարելագործված եղանակներ մշակելու ձգտումը։ Ուստի, «դիմակայության դարաշրջանից» «բանակցությունների դարաշրջանին» անցնելու մասին լոզունգի հռչակումն էլ ուղեկցվում է «պարտնյորություն, ուժ և բանակցություններ» ֆորմուլայի արմատավորմամբ։

Դժվար չէ գուշակել այդ ֆորմուլայի իմաստը. ԱՄՆ-ի միլիտարիստական շրջանները մտադիր են շարունակել և անգամ ընդլայնել սպառազինությունների մրցավազքը, հուսալով դրանով լրացուցիչ գերազանցություն ձեռք բերել սոցիալիզմի հետ սկսված «աճուրդախաղում»։ Հատկանշական է, որ ԱՄՆ-ի պաշտպանության մինիստր Լեյրդը, ստրատեգիական սպառազինությունների վերաբերյալ սովետա-ամերիկյան համաձայնագրերը սենատի հանձնաժողովներում քննարկելու ժամանակ պնդում էր, թե, իբր, բանակցությունների բարենպաստ ելքն ապահովված էր նրանով, որ ԱՄՆ-ը գործում էին «ուժի դիրքից», և կոչ էր անում նույն դիրքը պահպանել՝ նաև բանակցությունների հետագա փուլերում։

Արևմտյան քաղաքական ստրատեգների մտածելակերպին բնորոշ է, որ նրանք շարունակում են հույները դնել միջուկային զենքի որպես արտաքին

[1] Իմպերիալիզմի դեմ մղվող պայքարի խնդիրներն արդի էտապում և կոմունիստական ու բանվորական կուսակցությունների, բոլոր հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների միասնությունը, «Հայաստան» հրատ., 1969, էջ 5։

քաղաքականության միջոցներից մեկի վրա, որը վստահեցնում է, թե «կարող է շարունակվել քաղաքական ու փիլիսոփայական երկախոսությունը կոմունիստական ղեկավարների հետ»[1]։

Նրանք շարունակում են նաև նվիրված մնալ, այսպես կոչված՝ «ճգնաժամային դիվանագիտության» կոնցեպցիաներին, որոնք բխում են այն բանից, թե միջազգային սուր քաղաքական ու ռազմական հրահրումը կարող է օգտագործվել որպես արտաքին քաղաքականության նպատակներին հասնելու արդյունավետ միջոց։ Եվ որպես այդ կոնցեպցիաների ածանցյալ առաջ է քաշվում ինչ-որ «ընտրովի» խաղաղ գոյակցության տեսություն։ Դրա էությունն է փորձել ապացուցել, թե, իբր, խաղաղասիրական հարաբերությունների զարգացումն աշխարհի մի մասում կամ առանձին տերությունների միջև չի կարող և չպետք է ենթադրի ռազմա-քաղաքական կոնֆլիկտների կարգավորում աշխարհի մի այլ մասում կամ մյուս տերությունների միջև։

Քանի որ «ուժի դիրքի» քաղաքականությունն ապահովող ծախսերը գնալով ավելի են ծանրանում, իսկ ռազմական ավանտյուրաների քաղաքական ծախքերը ավելի ու ավելի զգալի են դառնում, ամերիկյան իմպերիալիզմը խոր հետաքրքրություն է հանդես բերում բլոկային քաղաքականությունը շարունակելու և խորացնելու նկատամամբ, որը հնարավորություն կընձեռեր ծախսերի զգալի մասը դնելու պարտնյորների ու դաշնակիցների վրա։ Հնդկաչինի իրադարձությունների նկատամամբ կիրառելիս, այն արտահայտվում է կոնֆլիկտի «վիետնամացման» կուրսում, Արևմտյան Եվրոպայի նկատամամբ՝ «հասուն պարտնյորության» ֆորմուլում, որը ենթադրում է բլոկի ռազմական նախապատրաստություններում ՆԱՏՕ-ի եվրոպական անդամների ավանդի մեծացում։

Ռեալ հնարավորությունները հաշվի առնելով, նախկին քաղաքականությունը շարունակելու իմպերիալիզմի փորձերի մասին է վկայում նաև Արևմուտքի որոշ քաղաքագետների՝ գաղափարական պայքարը միջպետական հարաբերությունների միջոց դարձնելու ձգտումը։ Երկար ժամանակ է, ինչ իմպերիալիզմն իր արտաքին քաղաքականությունը կառուցում է այն հաշվով, որ «մեղմացնի», ներսից քայքայի սոցիալիստական համագործակցությունը, սոցիալիստական երկրները «խաղաղ կերպով» ներառնի իմպերիալիստական քաղաքականության ուղեծիրը, ապա՝ աստիճանաբար էրոզիայի ենթարկի սոցիալիստական կարգը։ Իմպերիալիստական երկրների արտաքին քաղաքական տակտիկայում ավելի ու ավելի է աճում պրոպագանդիստական գործունեության դերը միջազգային ասպարեզում (այստեղ նկատի են առնվում և՛ արտաքին քաղաքական պրոպագանդայի ուժեղացումը, և՛ արտաքին քաղաքական ակցիաների ձևավորումը՝ պրոպագանդիստական էֆեկտ ապահովելու նպատակով)։ Դրա հետ մեկտեղ, իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ոլորտում ավելի մեծ դեր է հատկացվում գաղափարական դիվերսիաներին և քայքայիչ գործունեությանը, որը ղեկավարում է այնպիսի մի օրգան, ինչպիսին է Կենտրոնական հետախուզական վարչությունը։

Խաղաղ գոյակցության գաղափարն իսկ իմպերիալիստական քաղաքագետները ձգտում են ծառայեցնել գաղափարական պայքարի շահերին, այն մեկնաբանելով այնպես, որ նպաստի իմպերիալիզմի դիրքերի ամրապնդմանը։ Իմպերիալիստական քաղաքագետները փորձում են սոցիալիզմի երկրներին պարտադրել գաղափարական ինչ-որ մի գործարք, որի դեպքում մեղմացման նպատակով արվող քայլերը բովանդակում են գաղափարական զիջումների պահանջներով։ Մասնավորապես, վերջին ժամանակներս Արևմուտքի որոշ քաղաքական գործիչներ ուժգնորեն պրոպագանդում են մի թեզիս, ըստ որի համաեվրոպական խորհրդակցության հաջող գումարումն ու անցկացումը պետք է ոչ այնքան նպաստեն մայրցամաքի անվտանգության ու համագործակցության պրոբլեմների լուծմանը, որքան ուղի հարթեն սոցիալիզմի երկրները գաղափարական «ավելի ազատ» ներթափանցման համար։

Ուստի, միանգամայն հասկանալի է, որ նման իրադրության մեջ ՉԺՀ

[1] W. Kintner. Peace and the Strategy Conflict New York, 1967,



ղեկավարության գործողությունները, սոցիալիստական համագործակցության երկրների հետ փոխհարաբերություններում նրա գրաված դիրքը, նրա բացահայտ հակասովետականությունը, իմպերիալիստական արտաքին քաղաքականության տեսակետից, մի կռվան է սոցիալիզմի երկրների դեմ մղվող պայքարում։

Սոցիալիստական պետությունների հետ փոխհարաբերությունների պրոբլեմի շուրջ սուր գոտեմարտեր են մղվում կապիտալիստական երկրների կառավարող շրջաններում։ Միլիտարիստական շրջանները, ռազմա-արդյունաբերական մոնոպոլիաները, ծայրահեղ ռեակցիայի խմբավորումները փորձում են հասնել «սառը պատերազմի» վերածնման և միջազգային լարվածության սրման։

Բայց բոլոր պայմաններում, «սառը պատերազմի» դոգմաներից ու դոկտրինաներից հեռանալու, սոցիալիզմի երկրների հետ արդյունավետ քաղաքական դիալոգը և փոխշահավետ տնտեսական կապերը կարգավորելու տենդենցի երևան գալն իսկ լրացուցիչ հնարավորություններ է ստեղծում սոցիալիստական երկրների խաղաղասիրական արտաքին քաղաքական կուրսի իրականացման համար։

●

Միջազգային հարաբերությունները սոցիալիզմի ու կապիտալիզմի հակամարտության կարևորագույն ոլորտներից են, ընդ որում, այդ հակամարտության ընթացքը յուրաքանչյուր փուլում ավելի ու ավելի ակնհայտ է ցուցադրում սոցիալիզմի առավելությունը։ Սոցիալիստական սիստեմի զարգացումն ու ամրապնդումը արմատական փոփոխությունների հանգեցրին միջազգային հարաբերությունների ողջ սիստեմում. այժմ իմպերիալիստական պետությունների ագրեսիվ քաղաքականության դեմ-հանդիման կանգնած է սկզբունքորեն նոր, սոցիալիստական արտաքին քաղաքականությունը, որը հենվում է սոցիալիստական համագործակցության տնտեսական ու ռազմական հզորության, սոցիալիզմի երկրների միջազգային հեղինակության վրա և հարաճուն ներգործում միջազգային ասպարեզում տեղի ունեցող բոլոր պրոցեսների վրա։

Սոցիալիստական արտաքին քաղաքականության ուժը, ամենից առաջ, այն է, որ նրա ուղղությունը համընկնում է պատմական պրոցեսի զարգացման ընդհանուր ուղղությանը, մինչդեռ իմպերիալիստական արտաքին քաղաքականությունը ծառայում է պատմության կողմից կործանման դատապարտված հասարակարգի շահերի պաշտպանությանը։ Վ. Ի. Լենինը մատնանշում էր, որ իմպերիալիզմի արտաքին քաղաքականության և ստրատեգիայի անհաջողությունները կանխորոշված են ոչ թե նրանով, որ իմպերիալիզմը չունի հմուտ քաղաքագետներ և խելացի գործիչներ, այլ նրանով, որ այդ բոլոր մարդիկ ծառայում են կործանվող սոցիալական կարգի շահերին։

Իմպերիալիստական արտաքին քաղաքականության դասակարգային բնույթի հետևանքով են իմպերիալիզմի ստրատեգների վրիպումները և ինչպես պատմական իրադարձությունների ընթացքի, այնպես էլ դրանց վրա ներգործելու իրենց հնարավորությունների սխալ գնահատումները։ Իմպերիալիզմի արտաքին քաղաքականության անհաջողություններն Արևմուտքի քաղաքագետներին ու ստրատեգներին ստիպում են վերագնահատել իրենց հնարավորություններն ու հեռանկարները, մղում են նրանց՝ որոնելու արդիականության պայմաններին ավելի մեծ չափով համապատասխանող ալտերնատիվ լուծումներ։ Սոցիալիզմի դեմ ճակատային հարձակման ստրատեգիայից իմպերիալիզմն անցնում է շրջանցման մանևրների, ուժերի վերախմբավորման, փընտրում է նոր կոմբինացիաներ ու եղանակներ։

Իմպերիալիզմի դասակարգային նպատակների ընդհանրությունը և, ամենից առաջ, նրա դիրքերի միասնականությունը սոցիալիզմի հետ հակամարտության ոլորտում, չի ենթադրում իմպերիալիստական տերությունների ար-

տաքին քաղաքական կուրսի լիակատար միօրինակություն ո՛չ սոցիալիստական պետությունների, ոչ էլ «երրորդ աշխարհի» երկրների նկատմամբ։ Հաճախ դա բացատրվում է այդ երկրների կառավարությունների թիկունքում կանգնած բուրժուազիայի տարբեր խմբավորումների շահերի բախումով։ Դեռևս 20-ական թվականների սկզբին Վ. Ի. Լենինն ընդգծում էր բուրժուական լագերի պացիֆիստական թևն առանձնացնելու, նրա հետ ո՛չ միայն առևտրական, այլև քաղաքական համաձայնություն փնտրելու անհրաժեշտությունը[1]։ Այս ամենն զգալի չափով հեշտացնում է միջազգային հարաբերությունների վերակառուցման պրոցեսը, որը մեր օրերում արդեն ընդգրկում է նրանց միջազգային կապերի բավական լայն ոլորտները։

Միջազգային ասպարեզում ուժերի հարաբերակցության փոփոխման ազդեցությամբ միջազգային հարաբերություններում տեղի ունեցող փոփոխությունների անդառնալի բնույթ ունեն, իսկ այդ փոփոխությունների հետևանքով առաջացած երևույթներն ու տենդենցները դառնում են ավելի ու ավելի կայուն։ Դրանից հետևում է, որ մոտ ապագայում կարելի է սպասել կոմպրոմիսի մեթոդների ավելի հաճախակի կիրառում միջազգային հարաբերություններում, որը, սակայն, չի նշանակում, թե կվերանա նոր ճգնաժամերի ու բախումների, լարվածության սրման ռեցիդիվների վտանգը։ Եվ, այնուամենայնիվ, ներկայումս «սառը պատերազմին» աստիճանաբար փոխարինելու է գալիս այն ճըշմարտության ընդունումը, որ միջուկային դարում հասարակական տարբեր կարգ ունեցող պետությունների հարաբերությունների միակ խելացի հիմքը կարող է լինել խաղաղ գոյակցության սկզբունքը։

ՍՍՀՄ-ի և սոցիալիստական մյուս երկրների ծառայությունն այն է, որ խաղաղության և միջազգային անվտանգության շահերը պաշտպանող իր նախաձեռնող, համառ ու նպատակասլաց քաղաքականությամբ նրանք ավելի ու ավելի վճռականորեն են նպաստում իրադարձությունների այնպիսի զարգացմանը, որի դեպքում նպաստավոր պայմաններ են ստեղծվում կոմունիստական և սոցիալիստական շինարարության, ագրեսիայի օջախների և միջազգային լարվածության վերացման, բոլոր ժողովուրդների խաղաղ կյանքի ապահովման համար։ Միջազգային հարաբերությունների զարգացման վրա խոր ազդեցություն է գործում ՍՄԿԿ XXIV համագումարի ընդունած խաղաղության ծրագիրը, որը որոշում է միջազգային կարևորագույն պրոբլեմների լուծման ռեալ ուղիները և նպատակ ունի ապահովել խաղաղությունն ու բոլոր ժողովուրդների անվտանգությունը։

Պարապմունքը կարելի է կառուցել հետևյալ պլանով. 1. Իմպերիալիզմի արտաքին քաղաքականության բնորոշ առանձնահատկությունները արդի էտապում։ 2. Իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ճգնաժամի խորացման օբյեկտիվ գործոնները։ 3. Իմպերիալիզմի արտաքին քաղաքականության ճգնաժամի դրսևորումները։ 4. Իմպերիալիզմի հարմարումը ժամանակակից աշխարհում ստեղծված նոր իրադրությանը։

---

1 Տե՛ս Վ. Ի. Լենին, Երկեր, հատ. 42, էջ 475։

Международная жизнь, 1972, № 12

# ՀՈԴՎԱԾՆԵՐ

## ԸՆԴԴԵՄ ԱՐԴԻ ՌԵՎԻԶԻՈՆԻԶՄԻ

Խ. Հ. ԵՐԻՑՅԱՆ

Պատմական գիտությունների դոկտոր, պրոֆեսոր

Պատմական այս կամ այն էտապում միջազգային կոմունիստական և բանվորական շարժման մեջ առաջացող օպորտունիստական, ռևիզիոնիստական հոսանքները խոչընդոտում են համաշխարհային հեղափոխական պրոցեսի զարգացմանը, ջուր լցնում կապիտալիզմի ջրաղացին։ Բուրժուական գաղափարախոսությունը ձգտում է սոցիալիզմի դեմ մղվող գաղափարական դիվերսիայում ամեն կերպ օգտագործել ռևիզիոնիստական հոսանքները։ Ուստի, պայքարն ընդդեմ արդի ռևիզիոնիզմի՝ կոմունիստական և բանվորական կուսակցությունների մարտական խնդիրներից է, նրանց շարքերի ամրապնդման կարևոր պայմանը։ ՍՄԿԿ XXIV համագումարին տված Կենտկոմի հաշվետու զեկուցման մեջ Լ. Ի. Բրեժնևը նշում է. «Առաջվա նման հրատապ է աջ և «ձախ» ռևիզիոնիզմի դեմ, նացիոնալիզմի դեմ ուղղված պայքարը։ Ներկայումս բուրժուական գաղափարախոսները, բուրժուական պրոպագանդան սոցիալիզմի ու կոմունիստական շարժման դեմ մղվող պայքարում ամենից հաճույքով օգտագործում են հենց նացիոնալիստական միտումները և դրանց հատկապես այն մասը, որը հակասովետիզմի ձև է ընդունում... ռևիզիոնիզմի ու նացիոնալիզմի դեմ մղվող պայքարը մնում է որպես կոմունիստական կուսակցությունների կարևոր խնդիր»։

Բանվորական շարժման մեջ ռևիզիոնիզմը ծագեց անցյալ դարի 90-ական թվականներին, Արևմտյան Եվրոպայի սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների ներսում և ուժեղացավ հատկապես Էնգելսի մահից հետո։ Ռևիզիոնիզմի պարագլուխ, գերմանական սոցիալիստ է. Բերնշտայնը հանդես եկավ «քննադատության ազատություն» լոզունգով, որով ցանկանում էր ռևիզիայի ենթարկել Մարքսի ուսմունքը, մարքսիզմից դուրս մղել նրա հեղափոխական ոգին, այն ծառայեցնել բուրժուական հասարակարգի շահերին։ Մարքսիզմի քննադատները փաստորեն առաջարկում էին հրաժարվել սոցիալիստական հեղափոխությունից և պրոլետարիատի դիկտատուրայից, այսինքն՝ հրաժարվել մարքսիզմի հիմնական սկզբունքներից։

Ստեղծված իրադրության պայմաններում ռեակցիոն-օպորտունիստական ուղղությունը կամ պետք է գաղափարապես ջախջախվեր, և բանվորական շարժումն ընթանար հեղափոխական ուղիով, կամ պրոլետարիատը պետք է հա-

մակերպվեր ռեֆորմիստական պատրանքներին և երկար կեղեքվեր կապիտալի մագիլներում։

Օպորտունիստական-ռևիզիոնիստական հայացքների վտանգը լավ էին ըմբռնում մարքսիզմի ականավոր տեսաբաններ և պրոպագանդիստներ Ռ. Լյուքսեմբուրգը, Կ. Լիբկնեխտը, Ֆ. Մերինգը, Կ. Ցետկինը, Դ. Բլագոևը, Գ. Պլեխանովը և ուրիշներ, որոնք հանդես էին գալիս այդ հայացքների քննադատությամբ։

Ռևիզիոնիզմը ներթափանցեց նաև Ռուսաստան, որի տարատեսակը «էկոնոմիզմն» էր։ Ռուսական հեղափոխական մարքսիստները, Վ. Ի. Լենինի գլխավորությամբ, սկզբունքային պայքար ծավալեցին ինչպես միջազգային, այնպես էլ ռուսական ռևիզիոնիստների և օպորտունիստների դեմ։

Վ. Ի. Լենինն իր Ի՞նչ անել հայտնի աշխատության մեջ հիմնովին ջախջախեց էկոնոմիստներին. նա ռուսական մարքսիստներին զինեց օպորտունիզմի քննադատության մեթոդոլոգիայով և հարստացրեց մարքսիզմի տեսական գանձարանը։ Դա մի զենք է, առանց որի հնարավոր չէ հաջողությամբ պայքարել արդի ռևիզիոնիզմի դեմ՝ հանուն մարքս-լենինյան ուսմունքի անաղարտության։

Իրավամբ, ռևիզիոնիզմի, օպորտունիզմի և ամեն կարգի հակամարքսիստական հոսանքների դեմ մղվող պայքարում մեր կուսակցության բազմահարուստ փորձը, Վ. Ի. Լենինի թողած տեսական վիթխարի ժառանգությունն այն գրանիտե հիմքն են, որի վրա հենվելով կոմունիստական և բանվորական կուսակցությունները կարողանում են ճիշտ գնահատել արդի ռևիզիոնիզմի ոտնձգությունները, մշակել պայքարի նոր ձևեր ու մեթոդներ։

Կապիտալիզմի պայմաններում աջ սոցիալ-դեմոկրատիան, ինչպես նախկինում, այնպես և այժմ, բուրժուազիայի գաղափարական և քաղաքական կարևորագույն հենարանն է բանվորական շարժման ներսում։

Որո՞նք են արդի ռևիզիոնիզմի նոր գծերը, ինչով է այն տարբերվում անցյալի ռևիզիոնիզմից։ Նշենք, որ արդի ռևիզիոնիզմը միակցել է հին օպորտունիստական գաղափարները և «նորագույն» բուրժուական տեսությունները։ Անցյալում աջ սոցիալիստները ջանում էին համոզել, որ իրենց տարաձայնությունները մարքսիզմի հետ վերաբերում են ո՛չ այնքան պրոլետարիատի վերջնական նպատակին, որքան այդ նպատակի իրականացման միջոցներին. նրանք ընդունում էին դասակարգային պայքարի առկայությունը, բայց ոչ որպես պրոլետարիատի դիկտատուրայի հաստատման միջոցի։ Այժմ նրանք ժխտում են ո՛չ միայն դասակարգային պայքարը, այլև հակամարտ դասակարգերի գոյությունը բուրժուական հասարակարգում։ Պրոլետարական հեղափոխությանը հակադրելով սոցիալական ռեֆորմները, սոցիալ-դեմոկրատիայի աջ լիդերները փաստորեն պետական-մոնոպոլիստական կապիտալիզմի ջատագովներ են, որոնք հանդես են գալիս սոցիալիստական հեղափոխության, բուրժուական արտադրահարաբերությունների ոչնչացման դեմ։

Վերջնականապես խզելով կապերը մարքսիզմի հետ, սոցիալ-դեմոկրատիայի աջ թևը գիտական սոցիալիզմին հակադրում է այսպես կոչված դեմոկրատական սոցիալիզմը, որը բազմիցս քննադատել են մարքսիստները։ Այս «տեսությունը» համապատասխանում է ոչ թե բանվոր դասակարգի, այլ բուրժուազիայի շահերին։ Այդ «սոցիալիզմը» նրանք քարոզում են «ազատություն», «դեմոկրատիա», «սոցիալական հավասարություն» կեղծ լոզունգների



քողի տակ, որոնք մոլորեցնում են աշխատավոր մասսաներին, խափանում բանվոր դասակարգի միասնությունը և նրա պայքարն իմպերիալիզմի դեմ։

Համաշխարհային հեղափոխության բանակի ստեղծման պրոցեսը պատմության զարգացման օբյեկտիվ անհրաժեշտություն է. դա մի պրոցես է, որի ընթացքում առաջավոր հասարակական ուժերին բախվող ռեակցիոն ուժերը օրհասական ճիգեր են գործադրում կասեցնելու այն, հարատև դարձնելու կապիտալիզմը, որի գաղափարական պաշտպանները ձգտում են ամեն կերպ իրենց ազդեցության ոլորտում պահել աշխատավոր մասսաներին, նրանց հեղափոխական ցասումը հարմարեցնել կապիտալիզմի շահերին։ Այս գործում նրանց միշտ օգնում են ռևիզիոնիստական, օպորտունիստական ամեն կարգի խմբեր, որոնք իրենց կեղծ հեղափոխական ֆրազներով ապակողմնորոշում են կապիտալի լծի տակ հեծող աշխատավորներին։ Ուստի, այս պայմաններում, կապիտալիզմի բուն էությունը, նրա նպատակները քողարկող գերհեղափոխական լոզունգների ազդեցությունից աշխատավորներին զերծ պահելու համար, կոմունիստական և բանվորական կուսակցությունները չեն դադարեցնում իրենց հետևողական պայքարը հակամարքսիստական-հակալենինյան հոսանքների դեմ, առանց որի հնարավոր չէ բանվոր դասակարգի կողմը գրավել հասարակական այն խմբերին, որոնք, բնականաբար, ձգտում են հեղափոխական պայքարի, բայց պարզ պատկերացում չունեն դրա ուղիների և ձևերի մասին։

Այդ պայքարն անհրաժեշտ է նաև կոմունիստների մարքս-լենինյան կոփվածությունը բարձրացնելու, հատկապես կոմունիստական և բանվորական կուսակցությունների երիտասարդ անդամներին մարքս-լենինյան կայուն գիտելիքներով զինելու համար։ Չէ՛ որ վերջին տասնամյակում միջազգային կոմունիստական շարժման շարքերը համալրվեցին միլիոնավոր նոր մարտիկներով, որոնք երբեմն հստակ պատկերացում չունեն ռևիզիոնիզմի, օպորտունիզմի և հակամարքսիստական-հակալենինյան այլ հոսանքների մասին։ Ուստի կոմունիստական ու բանվորական կուսակցությունների խնդիրն է՝ հեղափոխական մարտիկների նոր սերունդներին ցույց տալ կեղծ հեղափոխական լոզունգների վնասակարությունը, դաստիարակել նրանց ռևիզիոնիզմի, օպորտունիզմի նկատմամբ անհաշտության ոգով։

Հակամարքսիստական-հակալենինյան ըմբռնումների կենսունակությունը բացատրվում է ո՛չ թե նրանց «ճշմարտացիությամբ», այլ նրանով, որ երկրագնդի զգալի մասում դեռևս իշխում են կապիտալիստական հարաբերությունները, ուր ռևիզիոնիզմը պարարտ հող ունի ոչ-պրոլետարական միջավայրում, որտեղ դյուրին է մոլորեցնել մանրբուրժուական խավերին, նրանց, ովքեր դեռևս չեն անցել հեղափոխական պայքարի բովով։

Վ. Ի. Լենինը, խոսելով մանրբուրժուական տատանումների մասին, որոնք այս կամ այն չափով դրսևորվում են պրոլետարիատի շարքերում, գրում է. «Մանրբուրժուական ռեֆորմիզմը, այսինքն՝ բարեհոգի դեմոկրատական և «սոցիալ»-դեմոկրատական ֆրազներով ու անզոր ցանկություններով քողարկված լակեյությունը բուրժուազիայի նկատմամբ, և մանրբուրժուական հեղափոխականությունը, խոսքով՝ ահարկու, փքված, սնապարծ, գործով՝ մանրատվածության, փոշիացածության, անգլխության մի փչություն,— սրանք են այդ տատանումների երկու «հոսանքները»։ Նրանք անխուսափելի են, քանի դեռ չեն վերացված կապիտալիզմի ամենախոր արմատները» (Երկեր, հ. 33, էջ 1)։

Եթե համեմատենք աջ և «ձախ» օպորտունիզմն ըստ նրանց քաղաքական

լոզունգների, գաղափարական և տակտիկական կեցվածքի, ապա առաջին հա-
յացքից կթվա, թե դրանք ծայրահեղ հակադիր հոսանքներ են։ Աջ օպորտու-
նիզմը հրապուրվում է կապիտալիզմի խաղաղ «տրանսֆորմացիայի» պատ-
րանքներով, իսկ «ձախը»՝ հենվում է նրանց վրա, ովքեր դժգոհ են կապիտա-
լիզմից, պատրաստ են ակտիվ գործողությունների, բայց չեն ըմբռնում իրենց
շահերի ընդհանրությունը կոմունիստների, բանվոր դասակարգի, սոցիալիզմի
հետ։ Իրականում այդ երկու հոսանքների միջև գոյություն ունի խոր ընդհան-
րություն, որն արտահայտվում է նրանց պրակտիկ գործունեության ընթաց-
քում, երբ նրանք միասնական ճակատով պայքարում են կոմունիստական և
բանվորական կուսակցությունների, ու նրանց ղավանած սոցիալիզմի դեմ։
Մարքս-լենինյան կուսակցությունների ուժեղացմամբ առանձին երկրնե-
րում ինչպես աջ, այնպես էլ «ձախ» օպորտունիստներն ընկնում են ծանր կա-
ցության մեջ. այդպիսի դեպքերում նրանք պայքարի սլաքն ուղղում են բան-
վոր դասակարգի, նրա հեղափոխական ավանդարդի դեմ։ Պատահական չէ, որ
կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազ-
գային խորհրդակցությունից հետո ուժեղացան օպորտունիստների հարձա-
կումները մարքս-լենինյան կուսակցությունների վրա։
Միջազգային կոմունիստական շարժման հաջողությունները և միջազգա-
յին բանվոր դասակարգի դերը նսեմացնելու նպատակով, աջ և «ձախ» ռեվի-
զիոնիստները հորինում են հակամարքսիստական զանազան կոնցեպցիաներ,
որոնք ամբողջովին միահյուսվում են հակակոմունիզմին, բուրժուական գա-
ղափարախոսությանը։ Այսպես, օպորտունիզմի հայտնի պարագլուխ է. Ֆիշե-
րը, ձայնակցելով տրոցկիստներին, պնդում է, թե, իբր, բանվոր դասակարգը
դադարել է հեղափոխական լինելուց, որ այժմ նրան պետք է փոխարինեն և
հեղափոխական շարժման առաջնորդ դառնան «երիտասարդ ուժերը»։ Նույն
միտքն է արտահայտում ավստրիական մի ուրիշ ռեվիզիոնիստ՝ Ֆ. Մարեկը,
որը խռովարար երիտասարդությանը համարում է «հեղափոխության բարո-
մետր»։ Քննադատելով այդ հայացքները, Ավստրիայի կոմկուսի քաղբյուրոյի
անդամ Ֆրյունբերգը դիպուկ կերպով դրանք համարել է տրոցկիստական ռե-
ցիդիվ։
Ըստ էության այդ հայացքներն ամենևին չեն տարբերվում բուրժուական
գաղափարախոսների քարոզներից։ Կոմունիզմի բուրժուական քննադատները
լս փորձում են ապացուցել, որ ժամանակակից բանվոր դասակարգը դադարել
է հեղափոխական և առաջադիմական լինելուց։ Ավելին, հայտնի ռեվիզիոնիստ
Մ. Ջիլասը պնդում է նույնիսկ, թե, իբր, սոցիալիզմի երկրներում «կոմունիզ-
մը խորթացել է բանվոր դասակարգին» և, ընդհանրապես, «կոմունիզմը բան-
վոր դասակարգի շարժումը չէ»։
Սակայն մարքսիզմ-լենինիզմը և՛ տեսականորեն, և՛ պրակտիկայում վա-
ղուց է ապացուցել բուրժուազիայի գաղափարախոսների վերոհիշյալ պնդում-
ների սնանկությունը։ Հեղափոխական բանվոր դասակարգն իրականացրել և
իրականացնում է իր ստեղծագործական միսիան, հաջողությամբ կատարում
սոցիալիստական հասարակարգ ստեղծողի իր համաշխարհային պատմական
դերը։ Ի տարբերություն մյուս շահագործվող դասակարգերի, բանվոր դասա-
կարգը բուրժուական հասարակարգում օրգանապես կապված է արտադրեն
զարգացող խոշոր արտադրության հետ. նա այնպիսի տեղ է գրավում հասա-
րակական ոլորտում, որը նրան դարձնում է սոցիալական հարաբերությունների



սոցիալիստական և կոմունիստական ձևերի մարմնավորողը։ Ուստի, միան-
գամայն սխալ է բանվորական շարժումն անջատել բուն սոցիալիզմից, որն
արդի դարաշրջանի առաջավոր դասակարգի հեղափոխական, ստեղծագործա-
կան ուժի կենդանի խիղն է։
Որքան էլ կապիտալիզմի վարձու գրչակները ճգնեն ժխտել բանվոր դա-
սակարգի համաշխարհային պատմական դերը աշխարհի հեղափոխական վե-
րակառուցման մեջ, միևնույն է, նրանք անզոր են ռեալ իրականության առջև։
Համաշխարհային սոցիալիստական սիստեմը բանվոր դասակարգի մեծա-
գույն նվաճումն է։ Սոցիալիստական հասարակարգի ստեղծմանն ու զարգաց-
մանը զուգընթաց աճում է բանվոր դասակարգի դերը, զարգանում նրա կուլ-
տուրան, բարձրանում կրթական մակարդակը, մեծանում քաղաքական ակտի-
վությունը։ Ինչպես մեր երկրում, այնպես էլ սոցիալիզմի շատ երկրներում
բանվոր դասակարգի կեսից ավելին ունի բարձրագույն և միջնակարգ կրթու-
թյուն։ Մեծանում է մտավոր աշխատանքի տեսակարար կշիռը բանվորների
գործունեության ոլորտում, ի հայտ են գալիս նոր մասնագիտություններ, որոնք
պահանջում են ինժեներա-տեխնիկական մակարդակի գիտելիքներ։ Այդ ամենն
ավելի է ամրապնդում բանվոր դասակարգի առաջատար դերը՝ որպես հասա-
րակարգի ամենահեղափոխական, կազմակերպված, քաղաքական ակտիվ ուժի։
Բանվորը սոցիալիստական հասարակարգի քաղաքական կյանքի կենտ-
րոնական դեմքն է։ Սոցիալիստական դեմոկրատիան հնարավորություն է ըն-
ձեռում, որպեսզի իշխանության կենտրոնական օրգանները որոշումներ ըն-
դունելիս հաշվի առնեն և բազմակողմանիորեն արտահայտեն լայն մասսա-
ների կարծիքը և պահանջմունքները։ Սոցիալիզմի օրոք բանվոր դասակարգի
ղեկավար դերն արտահայտվում է նրանով, որ նա, նոր հասարակարգի կա-
ռուցման խնդիրները լուծելիս, միավորում է ժողովրդի ողջ ուժերը։ Նրա դա-
սակարգային շահերը դառնում են բոլոր աշխատավորների շահերը։ Նրա,
ինչպես և ողջ սոցիալիստական հասարակության գաղափարախոսությունը
մարքսիզմ-լենինիզմն է։ Բանվոր դասակարգի կուսակցությունը ողջ ժողովրդի
հանրաճանաչ ավանգարդն է։ Բանվոր դասակարգը սոցիալիստական հասա-
րակարգի աշխատավորների սոցիալ-քաղաքական և գաղափարական միաս-
նությունը ցեմենտող ուժն է։
Բանվոր դասակարգի համաշխարհային պատմական դերի վերաբերյալ
մարքսիստական դրույթների քննադատները, անտեսելով պատմական փաս-
տերը, շարունակում են պնդել, թե զարգացած կապիտալիստական երկրնե-
րում բանվորներն, իբր, չեն հանգում հեղափոխական գիտակցությանը։ Հա-
կակոմունիզմի գաղափարախոս Վ. Մարկուզեն պնդում է, թե կապիտալիս-
տական հասարակարգում բանվոր դասակարգի գոյապայմաններն արգելակում
են հեղափոխական գիտակցության զարգացմանը։ Բուրժուական մեկ այլ գա-
ղափարախոսի՝ Ի. Քրիզանի, կարծիքով բանվոր դասակարգը պայքարում է
«մի պարկ կարտոֆիլի համար», իսկ երբ բարելավվում է նրա վիճակը, դառ-
նում է տիրող կարգերը պաշտպանող։
Իրերի բուն վիճակի կեղծարարությունն ակնհայտ է։ Աշխատավորների
համառ պայքարը կապիտալիզմի դեմ, երկու սիստեմների սուր հակամարտու-
թյունը ստիպում են մոնոպոլիստական կապիտալիզմին որոշ զիջումներ անե-
լու բանվոր դասակարգին։ Սակայն այդ զիջումները չեն վերացնում բանվոր-
ների շահագործումը, գործազրկությունը, ճգնաժամերը և աշխատավորների

աղքատության հետևանքով ծնունդ առած այլ երևույթներ։ Ավելին, կապիտալիզմն այժմ նոր, առավել ծանր բեռ է դրել բանվոր դասակարգի ուսերին՝ ինտենսիֆիկացրել է աշխատանքը, որի հետևանքով առաջացել է նրա ուժերի վիթխարի գերլարվածություն։ Ուստի, չնայած բանվորների մի մասի կյանքի պայմանների որոշ բարելավման, ողջ դասակարգի վիճակը փաստորեն չի թեթևանում։ Անցյալի նման, պրոլետարիատի դասակարգային շահերը հակասում են կապիտալիստական հասարակարգի հարաբերություններին, որոնք ծնում են սոցիալական և ազգային ճնշում, միլիտարիզմ, ռեակցիա և այլն։ Այս ամենը ոչ թե թուլացնում է դասակարգային պայքարը, այլ խթանում բանվոր դասակարգի հեղափոխական գիտակցությունը, ուժեղացնում նրա պայքարը կապիտալիզմի դեմ։

Բանվոր դասակարգի հեղափոխական ակտիվության վկայությունն է այն իրողությունը, որ 1971 թվականին գործադուլավորների թիվը զարգացած կապիտալիստական երկրներում հասավ 48 միլիոնի. դա 1959 թ. համեմատ երեք անգամ ավելի է։

Այս փաստերը լիովին հաստատում են կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցության այն հետևությունը, որ զարգացած կապիտալիզմի երկրներում բանվոր-դասակարգն է հեղափոխական պայքարի գլխավոր շարժիչ ուժը, դեմոկրատական, հակաիմպերիալիստական պայքարի հզոր հենարանը։

Բուրժուական գաղափարախոսների հայացքների հետ սերտորեն միահյուսվում է աջ և «ձախ» ռևիզիոնիստների՝ բանվոր դասակարգի կողմից պետական իշխանություն նվաճելու պայքարից հրաժարվելու հակամարքսիստական ըմբռնումը։ Ռևիզիոնիստները շաղակրատում են պետական իշխանության նշանակության մասին, բայց հեղափոխություն ասելով հասկանում են լոկ մի խումբ մարդկանց կատարած հեղաշրջում՝ անտեսելով լայն մասսաներին, որն իրականում նշանակում է հրաժարվել սոցիալիստական հեղափոխությունից, մասսաներին ետ պահել դասակարգային պայքարից։ Ռևիզիոնիստները խեղաթյուրում են դասակարգային պայքարի անխուսափելիության մարքսիստական սկզբունքը, նրա պայքարը, որը սոցիալիստական հեղափոխության ընթացքում, ի վերջո, հանգելու է բուրժուական պետական մեքենայի ոչնչացմանը և պրոլետարական պետության ստեղծմանը։ Հակամարքսիստական այդ տենդենցներն ավելի ակներև դրսևորվեցին իտալական «Մանիֆեստո» ռևիզիոնիստական խմբի պարագլուխ Ռ. Ռոսանդայի ելույթներում։ Խեղաթյուրելով Փարիզյան կոմունայի փորձին վերաբերող Մարքսի հետևությունները, Ռոսանդան ճգնում է հիմնավորել այն միտքը, թե բանվորական շարժման համար բոլորովին էլ անհրաժեշտ չէ քաղաքական պայքարը։ Նա բացահայտորեն ժխտում է բանվոր դասակարգի քաղաքական կազմակերպության՝ կուսակցության դերը, պրոլետարիատի դիկտատուրայի դերը սոցիալիստական հեղափոխությունից հետո, զինաթափում բանվոր դասակարգին քաղաքականապես, նրան դարձնելով անընդունակ՝ հասնելու իր սոցիալական ազատագրմանը։

Այսպիսով, պրոլետարիատի քաղաքական կուսակցության վերաբերյալ ստեղծագործական մարքսիզմի հետևություններին, որոնք լիովին հաստատվել են Փարիզյան կոմունայի, Հոկտեմբերյան հեղափոխության և սոցիալիզմի կառուցման փորձով, ռևիզիոնիստները հակադրում են գործնականում լիովին



հերքված դրույթներ։ Մինչդեռ պատմական փորձը վկայում է, որ աշխարհը հեղափոխականորեն նորացնելու գործում վճռական ավանդ են մուծում կոմունիստական կուսակցությունները, որոնք իրենց գործունեության ընթացքում ղեկավարվում են միակ գիտական աշխարհայացքով՝ մարքս-լենինյան տեսությամբ։ Կոմունիստական կուսակցությունները գլխավորեցին սոցիալիստական հեղափոխությունները աշխարհի մեկ երրորդ մասում։ Այժմ աշխարհում կան 89 կոմունիստական կուսակցություններ, որոնք իրենց շարքերում համախմբում են մոտ 50 միլիոն մարդ։ Կոմունիստական շարժումը, ինչպես նշվեց կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թ. միջազգային խորհրդակցությունում, դարձել է արդիականության ամենաազդեցիկ ինտերնացիոնալ ուժը։

Ժխտելով կոմունիստական կուսակցության դերը պրոլետարիատի կողմից իշխանությունը նվաճելու համար մղվող պայքարում և սոցիալիստական հասարակարգի կառուցման գործում, բացառելով հեղափոխական պրոցեսում բուն սոցիալիզմի համաշխարհային պատմական նշանակությունը, ռևիզիոնիստները, բուրժուազիայի ներկայացուցիչների հետ, ակտիվ մասնակցում են հակակոմունիստական արշավին։ Նրանք ձգտում են ոչ միայն նսեմացնել կոմունիստական կուսակցությունների դերը հեղափոխական շարժման մեջ, այլև նրանց կտրել մասսաներից, այլասերել գաղափարապես ու կազմակերպորեն, վերացնել դրանք։ Ռևիզիոնիստների մի մասը բացարձակապես ժխտում է կոմունիստական կուսակցությունների գաղափարական և կազմակերպական սկզբունքները, իսկ մյուսը պնդում է, թե այդ սկզբունքները թեև ժամանակին ճիշտ էին, բայց այժմ պետք է փոփոխվեն։

Է. Ֆիշերը, օրինակ, առաջարկեց վերացնել կոմունիստական կուսակցությունների կազմակերպական ներկա ձևը, նրանց ձուլել զանազան քաղաքական ուժերի կոալիցիայի հետ՝ մարքսիստների, թե ոչ մարքսիստների, կոմունիստների, թե սոցիալ-դեմոկրատների, կաթոլիկների, թե բողոքականների, միևնույն է։ Բնական է, որ նման կազմակերպությունները, որոնք զուրկ են պրոլետարական գիտակցությունից և կարգապահությունից, բուրժուական հասարակարգի համար որևէ լուրջ վտանգ չեն ներկայացնի։

Լիկվիդատորական նման հայացքներով է հանդես գալիս նաև Ռ. Գարոդին, որը պահանջում է դեն նետել ավելի քան հարյուրամյա փորձություններին դիմացած կոմունիստական կուսակցության գաղափարական հիմքերը։ Ֆրանսիական կոմունիստական կուսակցությունը, հայտարարում է նա, չի կարող ունենալ ինչ-որ մի «պաշտոնական փիլիսոփայություն», որն սկզբունքորեն լինի մատերիալիստական, իդեալիստական և կամ կրոնական։

Ըստ ռևիզիոնիստների՝ կուսակցությունը մարդկանց հավաքածու է, որոնք պետք է իրենց գործունեությունը սահմանափակեն միայն վիճաբանելով և ոչ թե հանդես գան միասնական նպատակի կենսագործմամբ։

Բանվոր դասակարգի քաղաքական կուսակցությունը մշտական դիսկուսիաների ակումբի վերածելու ռևիզիոնիստական ամեն տեսակի փորձերը վճռական հակահարված են ստանում կոմունիստներից։ Ֆրանսիայի կոմունիստական կուսակցության XIX համագումարի թեզիսներում հիմնովին քննադատվում են աջ և «ձախ» օպորտունիստները, որոնք, կուսակցական կյանքի դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքների փոխարեն, առաջարկում են «ֆրակցիաների ազատության» տրոցկիստական, մանրբուրժուական անար-

խիստական թեզը։ Այդ վտանգի դեմ պայքարը Ֆրանսիայի կոմկուսի քաղբյուրոն համարում է իր առաջնակարգ խնդիրը, որն անխզելիորեն կապված է բուրժուազիայի տիրապետությունը ոչնչացնելու, Ֆրանսիայում իսկական դեմոկրատիա, սոցիալիզմ ստեղծելու համար մղվող պայքարի հետ։

Կոմունիստական կուսակցությունները սերտորեն կապված են աշխատավոր ժողովրդի հետ, պայքարում են նրա շահերի համար, իսկ դա պահանջում է գործողությունների միասնություն, կայուն ղեկավարություն, բարձր գիտակցականություն, մարտունակություն։ Այդ սկզբունքները, օրինակ, շարադրված են Իտալիայի կոմունիստական կուսակցության XIII համագումարի ընդունած նոր կանոնադրությունում, որտեղ ասված է. «Իտալիայի կոմունիստական կուսակցությունը... դեմոկրատական ցենտրալիզմի սկզբունքներով միավորված համախոհների կամավոր կազմակերպություն է։ Նրա բոլոր անդամները պարտավոր են պայքարել կուսակցության գաղափարների, կուսակցության ղեկավար օրգանների մշակած քաղաքական գծի կենսագործման համար»։

Չնայած շատ երկրներում կոմունիստները գտնվում են դժվարին կացության մեջ, կոմունիստական կուսակցությունների շարքերը մշտապես համալրվում են։ Կապիտալիստական երկրներում (Իտալիա, Ֆրանսիա, Ճապոնիա, Ֆինլանդիա, Ուրուգվայ, Հնդկաստան և այլն) կոմունիստական կուսակցությունները դարձել են մասսայական, անընդհատ ընդլայնվում են դրանց կապերը աշխատավորական լայն խավերի հետ։ Զգալի հաջողությունների է հասել ԱՄՆ-ի կոմունիստական կուսակցությունը, որը երկար ժամանակ գտնվում էր հետապնդման ծանր պայմաններում։ Նա դիմացավ ռեակցիայի բոլոր հարվածներին և ընդլայնեց իր կապերը մասսաների հետ։

Կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի միջազգային խորհրդակցությունից, ՍՄԿԿ XXIV համագումարից և եղբայրական կոմունիստական կուսակցությունների համագումարներից հետո կոմունիստական շարժումը զգալի քայլեր է կատարել իր շարքերի միասնության և համախմբվածության համար։ Այս առումով կարևոր նշանակություն ունեն մարքս-լենինյան կուսակցությունների միջազգային խորհրդակցությունները, որոնց ընթացքում, ստեղծագործական մարքսիզմ-լենինիզմի հիման վրա, համաշխարհային մասշտաբով մշակվում են քաղաքականության, ստրատեգիայի և տակտիկայի հարցերը։

Կոմունիստական կուսակցությունների մարտունակության բարձրացման կարևոր պայմաններից մեկը ամեն տիպի աջ և «ձախ» ռևիզիոնիզմի, նացիոնալիզմի և ավանտյուրիզմի դեմ սկզբունքային պայքարն է։ Իտալիայի, Ֆրանսիայի, Վենեսուելայի, Ավստրիայի կոմունիստական կուսակցությունները վճռական հակահարված հասցրին ռևիզիոնիզմին, գաղափարապես ու քաղաքականապես և կազմակերպչորեն ջախջախեցին «Մանիֆեստո» խմբի, Ռ. Գարոդիի, Պետկովի, Ֆիշեր-Մարեկի ռևիզիոնիստական հոսանքները։ Դրանից հետո զգալիորեն ամրապնդվեց այդ կուսակցությունների մարտունակությունը։

Ռևիզիոնիզմի դեմ մղվող պայքարում վիթխարի նշանակություն ունեցան սովետական ժողովրդի մեծագույն հաջողությունները, ՍՄԿԿ XXIV համագումարի տեսական հետևությունները զարգացած սոցիալիզմի մասին, որոնք լիովին հերքեցին սոցիալիզմի զանազան մոդելների վերաբերյալ աջ և «ձախ» ռևիզիոնիստների, նացիոնալիստների հայացքները, զգալի չափով նպաստեցին կոմունիստական շարքերի ամրապնդմանը ինչպես ազգային, այնպես էլ միջազգային մասշտաբով։



Համաշխարհային հեղափոխական պրոցեսի հիմնական ուժը աշխատավորության ավանգարդն է՝ բանվոր դասակարգը, իսկ նրա ղեկավար ուժը միջազգային կոմունիստական շարժումն է, որի հետագա ամրապնդման համար հսկայական ջանքեր է գործադրում մեր կուսակցությունը։

Գնալով ընդլայնվում ու խորանում է համաշխարհային հեղափոխական պրոցեսը։ Ճիշտ է, սոցիալիզմի և կապիտալիզմի հակամարտության առանձին տեղամասերում առաջադիմական ուժերը երբեմն անհաջողություններ են ունենում, բայց դրանք ժամանակավոր են, անցողիկ։ Գլխավորն այն է, որ մոնոպոլիստական կապիտալիզմը չունի ոչ սոցիալ-քաղաքական ռեզերվներ, ոչ էլ այնպիսի հոգևոր արժեքներ, որոնք պատասխան տան ժամանակաշրջանի սոցիալ-քաղաքական հրատապ հարցերին։ Աշխարհում տեղի ունեցող դասակարգային ուժերի վերախմբավորումը կատարվում է հօգուտ սոցիալիզմի։

Համաշխարհային հեղափոխական պրոցեսն այսօր ընդգրկում է աշխարհի բոլոր ժողովուրդներին։ Այդ պրոցեսը իր մեջ է ներառում սոցիալիզմի և կոմունիզմի համար սոցիալիստական համագործակցության երկրների ժողովուրդների պայքարը, միջազգային կոմունիստական և բանվորական շարժումը, գաղութային ու թույլ զարգացած երկրների հակագաղութային, հակաիմպերիալիստական պայքարը։ Խաղաղության, դեմոկրատիայի, ազգային անկախության և սոցիալիզմի համար մղվող պայքարի մեջ ընդգրկվում են աշխատավորների նորանոր ջոկատներ։

Գնալով խորանում է կապիտալիզմի համաշխարհային ճգնաժամը, որն անհնար է կասեցնել։ Արդի դարաշրջանի հիմնական բովանդակությունը կապիտալիզմից սոցիալիզմին անցումն է։ Դա է մարդկության ապագան և ոչ սոցիալիզմի ու կապիտալիզմի սինթեզից կամ կապիտալիզմի «տրանսֆորմացիայից» առաջացող հետինդուստրիալ հասարակարգը, ինչպես քարոզում են բուրժուական գաղափարախոսները, ռևիզիոնիզմի շատ ներկայացուցիչներ։

Աշխարհի բոլոր երկրների ժողովրդական մասսաների շրջանում ամրապնդվում է այն համոզմունքը, որ սոցիալիզմն է մարդկության զարգացման գլխավոր մայրուղին, որ միայն սոցիալիզմի բազայի վրա կարելի է լուծել սոցիալական և ազգային ամենաբարդ պրոբլեմները։

Սովետական Միությունը, որպես վառ փարոս, լուսավորում է նրանց ուղին, ովքեր փնտրում են սոցիալական առաջընթացի առավել կատարելագործված ձևեր։ Աշխարհի ժողովուրդները պարզ տեսնում են, թե որտեղ է այն հրաշագործ ուժը, որը հետամնացության ու աղքատության մեջ խարխափող ամեն մի ժողովրդի ունակ է պատմական ամենակարճ ժամանակամիջոցում հասցնելու ժամանակակից քաղաքակրթության մակարդակին, ազգային թշնամությունը փոխարինելու ազգերի եղբայրությամբ։ ՍՍՀՄ-ը նրանց համար խաղաղության, սոցիալիզմի ու առաջադիմության խորհրդանիշ է, ժողովուրդների եղբայրության ու միասնության օրինակ։ Աշխարհի բոլոր ժողովուրդները վաղ թե ուշ կկանգնեն սոցիալիզմի ուղու վրա։ Սովետական Սոցիալիստական Հանրապետությունների Միությունը, որը մեծ հանդիսավորությամբ վերջերս տոնեց իր 50-ամյա հոբելյանը, նրանց համար մշտապես կմնա որպես արժեքավոր փորձի անսպառ աղբյուր։

# ՍՍՀՄ ՍՊԱՌՄԱՆ ՀԱՍԱՐԱԿԱԿԱՆ ՖՈՆԴԵՐԸ

Գ. Ա. ՂԱՐԻԲՅԱՆ, Վ. Ն. ՀԱԿՈԲՅԱՆ

*Սպառման հասարակական ֆոնդերը, որպես բնակչության պահանջմունքների բավարարման աղբյուր, մեծ չափերի հասան զարգացած սոցիալիստական հասարակարգում։ ՍՍՀՄ-ում դրանց գումարը միայն 1970 թ. կազմեց 64 մլրդ, իսկ բնակչության մեկ շնչի հաշվով՝ 262 ռուբլի։ Նշանակում է 4 մարդուց բաղկացած ընտանիքն այդ տարում սպառման հասարակական ֆոնդերից, ընդհանուր առմամբ, ստացել է ավելի քան 1000 ռուբլի։ Ուստի, դրանով է բացատրվում, որ սպառման հասարակական ֆոնդերը, որպես տնտեսական կատեգորիա, տնտեսագիտական հասարակայնության ուշադրությանն արժանացավ հատկապես վերջին տասնամյակում։*

*Կ. Մարքսը,* Գոթայի ծրագրի քննադատությունը *աշխատությունում անդրադառնալով կոմունիստական հասարակարգում սպառման հասարակական ֆոնդերին, կանխատեսեց, որ դրանք, ծնվելով արտադրության նոր եղանակի հետ, վերջինիս զարգացման համեմատ, որպես օրինաչափություն, ավելի արագ են աճելու, քան ընդհանրապես սպառման ֆոնդը։ Եվ իրոք։ Եթե սպառման հասարակական ֆոնդերից ՍՍՀՄ բնակչության ստացած վճարումներն ու արտոնությունները 1940 թ. կազմում էին 4,6 մլրդ, ապա 1970 թվականին 64 մլրդ ռուբլի (բնակչության մեկ շնչի հաշվով համապատասխանաբար 1940 թ. 24, իսկ 1970-ին՝ 262 ռուբլի)։ 1940—1970 թթ. ՍՍՀՄ-ում սպառման հասարակական ֆոնդերը, բնակչության մեկ շնչի հաշվով, աճել են ավելի քան 10, իսկ ռեալ եկամուտները՝ ընդամենը 4 անգամ։ Այդպիսով, ակնհայտ է սպառման հասարակական ֆոնդերի առավել արագ աճի տենդենցը, որը և պայմանավորում է այդ հսկայական միջոցների արդյունավետ օգտագործման հարցերի ուսումնասիրման անհրաժեշտությունը։*

*Հասարակական վերարտադրության ընդհանուր համակարգում սպառման հասարակական ֆոնդերի ֆունկցիոնալ դերը բացահայտելու համար ելակետային կարևոր նշանակություն ունի այն իրողության ըմբռնումը, որ դրանց հիմնական աղբյուրն անհրաժեշտ արդյունքն է։ Մասնավորապես զարգացած սոցիալիզմի պայմաններում անհրաժեշտ արդյունքի մի զգալի մասն իր տընտեսական շրջանառությունը կատարում է սպառման հասարակական ֆոնդերի ձևով։ Դա բացատրվում է նրանով, որ որոշ խնդիրներ (որակյալ աշխատուժի վերարտադրությունը, անհատների համակողմանի զարգացումը, նրանց սոցիալական ու հոգևոր բնույթի պահանջմունքների երաշխավորված բավարարումը) տնտեսապես ավելի նպատակահարմար է լուծել կենտրոնացված կարգով, անհրաժեշտ արդյունքի հանրայնացված մասի՝ սպառման հասարակական ֆոնդերի միջոցով։*

*Բնակչության անձնական պահանջմունքները մարդու կյանքի վերարտադրության մեջ իրենց ունեցած դերով ու բավարարման հաջորդականությունով բաժանվում են երեք հիմնական խմբերի. ա) առաջին կենսական անհրաժեշտություն ներկայացնող նյութական կամ ֆիզիոլոգիական բնույթի պահանջմունքներ, բ) հոգևոր և գ) սոցիալական։ Դրանք կազմում են բնակչության անձնական պահանջմունքների ընդհանուր շարքը, որում առանձին պահանջմունքների բավարարման հաջորդականությունը ենթարկվում է որոշ օրենքների և օրինաչափությունների։ Յուրաքանչյուր ընտանիք նախ բավարարում է առաջին կենսական անհրաժեշտություն ներկայացնող նյութական կամ ֆիզիոլոգիական բնույթի պահանջմունքները։ Ինչ վերաբերում է հոգևորին և սոցիալականին, ապա դրանք կարող են բավարարվել միայն մեկ շնչի հաշվով որոշ եկամուտների առկայության պայմաններում։ Դեռ ավելին, նույնիսկ անհրաժեշտ շնչային եկամտի առկայության դեպքում էլ չի երաշխավորվում հոգևոր և սոցիալական բնույթի պահանջմունքների բավարարումը, քանի որ ընտանիքներն իրենց սուբյեկտիվ հայեցողությամբ են օգտագործում եկամուտները։ Բացի դրանից, եթե սպառման հասարակական ֆոնդերը գոյություն չունենային, այդ միջոցները բաշխվեին բնակչության միջև աշխատավարձի ձևով, ապա դրանց մի մասը կօգտագործվեր այլ նպատակներով։ Քիչ երեխաներ ունեցող ընտանիքների մոտ այդ միջոցները չէր ծառայի, ասենք, աճող սերնդի պահպանման ու դաստիարակության նպատակներին։ Եվ ընդհակառակը, շատ երեխաներ ունեցողների միջոցները չէին բավականացնի նրանց կրթության և դաստիարակության համար։*

*Այսպիսով, որպեսզի երկրի հիմնական արտադրաուժի՝ որակյալ աշխատուժի վերարտադրությունը երաշխավորված իրականացվի և սոցիալիստական հասարակության անդամների սոցիալ-կուլտուրական բնույթի պահանջմունքները բավարարվեն ու դրանով ապահովվի նրանց համակողմանի զարգացումը, անհրաժեշտ արդյունքի և, ընդհանրապես, անձնական սպառման ֆոնդի մի մասը հասարակությունն օգտագործում է կենտրոնացված կարգով՝ սպառման հասարակական ֆոնդերի ձևով։ Նման պայմաններում բնակչության հոգևոր և սոցիալ-կուլտուրական պահանջմունքների բավարարումը հիմնականում դառնում է անվճար և բոլորը ձգտում են ստանալ կրթություն, մասնագիտություն և բարձր որակավորում։*

*Զարգացած սոցիալիստական հասարակարգում սպառման հասարակական ֆոնդերը կոչված են ապահովելու ո՛չ միայն բարձր որակավորում ունեցող աշխատուժի վերարտադրությունը, այլև նպաստելու նրանց միջև գոյություն ունեցող տարբերությունների համահարթմանը, ավելացնելու աշխատավորների ազատ ժամանակը, բարձրացնելու աշխատանքի նկատմամբ հասարակական նյութական շահագրգռվածությունը, նպաստելու քաղաքի և գյուղի միջև գոյություն ունեցող սոցիալ-տնտեսական բնույթի էական տարբերու-*

թյունների հաղթահարմանը և այլն։ Համապետական նշանակություն ունեցող նշված խնդիրների լուծումն իրենց արտացոլումն են գտնում սպառման հասարակական ֆոնդերի սոցիալ-տնտեսական հինգ հիմնական ֆունկցիոնալ առանձնահատկությունների մեջ։ Դրանք են. աճող սերնդի պահպանումը և դաստիարակումը, կադրերի պատրաստումը, բնակչության առողջության պահպանումը և հանգստի կազմակերպումը, հասարակության ծերացած և անաշխատունակ անդամների պահպանումը, բնակչության հասարակական և կուլտուր-կենցաղային սպասարկումը։ Ուստի, անհրաժեշտ է սպառման հասարակական ֆոնդերը հաշվարկել և պլանավորել այնպես, որ համապատասխանի նշված հինգ հիմնական սոցիալ-տնտեսական պրոբլեմներին։ Պետք է նշել, որ սպառման հասարակական ֆոնդերի հաշվարկման մեթոդը ՍՍՀՄ կենտրոնական վիճակագրական վարչությունում և պետպլանում տարբեր են։ ՍՍՀՄ պետպլանը սպառման հասարակական ֆոնդերը հաշվարկում և պլանավորում է, ելակետ ունենալով նշված 5 հիմնական սոցիալ-տնտեսական խնդիրները։

Հասկանալի է, որ երկու տարբեր մեթոդների առկայությունը ստեղծում է որոշ դժվարություններ սպառման հասարակական ֆոնդերի ուսումնասիրման և դրանց պլանավորումը կատարելագործելու հարցում։ Ժամանակն է անցնելու միասնական մեթոդի, որը, մեր կարծիքով, պետք է լինի ՍՍՀՄ պետպլանի կիրառած մեթոդը։

ՀՍՍՀ պետպլանի էկոնոմիկայի և պլանավորման գիտահետազոտական ինստիտուտի՝ բնակչության կենսամակարդակի սեկտորում մեր հանրապետության սպառման հասարակական ֆոնդերը հաշվարկել և խմբավորել ենք ըստ վերը նշված հինգ հիմնական սոցիալ-տնտեսական պրոբլեմների, ինչպես ամբողջ բնակչության, այնպես էլ գյուղ-քաղաք կտրվածքներով։ Առաջին անգամ կատարված սույն հետազոտության արդյունքներով սպառման հասարական ֆոնդերը ՀՍՍՀ-ում ունեն հետևյալ պատկերը։

Սպառման հասարակական ֆոնդերը և դրանց օգտագործումը ՀՍՍՀ-ում

| | 1960 թ. | | 1965 թ. | | 1970 թ. | |
|---|---|---|---|---|---|---|
| | ընդամենը՝ միլիոն ռուբլի | բնակչության մեկ շնչի հաշվով ռուբլի | ընդամենը՝ միլիոն ռուբլի | բնակչության մեկ շնչի հաշվով ռուբլի | ընդամենը՝ միլիոն ռուբլի | բնակչության մեկ շնչի հաշվով ռուբլի |
| Աճող սերնդի պահպանումը և դաստիարակումը | 56,4 | 30,2 | 109,8 | 49,8 | 166,3 | 66,0 |
| Կադրերի պատրաստումը | 18,7 | 10,0 | 32,4 | 14,5 | 65,5 | 26,0 |
| Բնակչության առողջության պահպանումը և հանգստի կազմակերպումը | 59,1 | 31,6 | 93,3 | 42,3 | 174,4 | 69,3 |
| Հասարակության ծերացած և անաշխատունակ անդամների պահպանումը | 58,9 | 31,5 | 86,7 | 39,3 | 129,4 | 51,4 |
| Բնակչության հասարակական և կուլտուր-կենցաղային սպասարկումը | 12,9 | 6,9 | 25,4 | 11,5 | 46,4 | 18,4 |
| Ընդամենը՝ սպառման հասարակական ֆոնդեր | 206,0 | 110,2 | 347,6 | 157,4 | 582,0 | 231,1 |



Չորս հոգուց բաղկացած յուրաքանչյուր միջին ընտանիքի վրա ՀՍՍՀ սպառման հասարակական ֆոնդերից 1970 թ. աճող սերնդի պահպանման ու դաստիարակման համար ծախսվել է 264 ռուբլի, կադրերի պատրաստման՝ 104, բնակչության առողջության պահպանման ու հանգստի կազմակերպման՝ 277, հասարակության ծերացած և անաշխատունակ անդամների պահպանման՝ 205, բնակչության հասարակական ու կուլտուր-կենցաղային սպասարկման նպատակով 73,6 ռուբլի։

Սպառման հասարակական ֆոնդերը հիմնականում օգտագործվում են աճող սերնդի պահպանման ու դաստիարակման (1970 թ. 28,6 տոկոս), բնակչության առողջության պահպանման ու հանգստի կազմակերպման (1970 թ. մոտ 30 տոկոս), հասարակության ծերացած ու անաշխատունակ անդամների պահպանման (1970 թ. 22,2 տոկոս) վրա։ 1960—1970 թթ. սպառման հասարակական ֆոնդերի կառուցվածքում տեղի են ունեցել որոշ տեղաշարժեր։ Նկատելի են հետևյալ հիմնական փոփոխությունները։ Որոշ չափով ավելացել է աճող սերնդի պահպանման ու դաստիարակման, կադրերի պատրաստման, բնակչության առողջության ու հասարակական, կուլտուր-կենցաղային սպասարկման նպատակով արվող հատկացումների բաժինը։ Ընդ որում, սպառման հասարակական ֆոնդերից յուրաքանչյուր մեծ խումբը իր հերթին բաղկացած է մի շարք հոդվածներից։ Այսպես, աճող սերնդի պահպանման և դաստիարակության ծախսերում հիմնական բաժինն ընկնում է դպրոցական ուսուցմանը (1970 թ. 56,0 տոկոս)։ Նախադպրոցական հասակի երեխաների պահպանման ու դաստիարակման վրա կատարվող ծախսերը 1970 թ. կազմել են միայն 14, ծննդաբերության ու բազմազավակ մայրերին տրվող նպաստներինը՝ 10 տոկոս։ Առաջիկայում սպառման հասարակական ֆոնդերի աճին զուգընթաց ավելի շատ միջոցներ պետք է հատկացվեն նախադպրոցական հասակի երեխաների պահպանման և դաստիարակման նպատակներին։

Կադրերի պատրաստման միջոցների մոտ 42 տոկոսը հատկացվել է բարձրագույն ուսումնական հաստատություններին, 18-ը՝ միջնակարգ մասնագիտական կրթությանը և 15-ը՝ պրոֆտեխնիկական ուսումնարաններին։

Ինչ վերաբերում է բնակչության առողջության պահպանմանը և հանգստի կազմակերպմանը, ապա միջոցների մոտ 37 տոկոսը հատկացվում է առողջապահական հիմնարկությունների պահպանմանը, 35-ը՝ բանվորների ու ծառայողների արձակուրդայինի վճարմանը, մոտ 16-ը՝ ժամանակավոր անաշխատունակության նպաստներին և այլն։ Հասարակության ծերացած և անաշխատունակ անդամների պահպանման ծախսերի մոտ 99 տոկոսը հատկացվում է թոշակներ ու կենսաթոշակներ վճարելուն և միայն 1 տոկոսը՝ զառամյալների տների պահպանման ու այլ նպատակների համար։

Բնակչության հասարակական և կուլտուր-կենցաղային սպասարկման հատկացումների մոտ 45 տոկոսը ծախսվում է կուլտուր-լուսավորական հիմնարկությունների և 47-ը՝ հանրայնացված բնակարանային ֆոնդի պահպանման վրա։ Նման բնույթի այլ ծախսումներին հատկացվում է 8 տոկոս։

Այսպիսով, զարգացած սոցիալիզմի պայմաններում սպառման հասարակական ֆոնդերը հիմնականում օգտագործվում են բնակչության հոգևոր և սոցիալական բնույթի պահանջմունքների բավարարման նպատակներին։ Ընդ

որում, դրանք օգտագործվում են մի կողմից՝ հասարակության անաշխատունակ անդամների կյանքի պահպանման, մյուս կողմից՝ աշխատողների պահանջմունքների բավարարման վրա։ Հաշվարկները ցույց են տալիս, որ ներկայումս ՍՍՀՄ-ում սպառման հասարակական ֆոնդերի մոտ երեք քառորդը հատկացվում է հասարակության անաշխատունակ անդամների, իսկ մեկ քառորդը՝ անմիջականորեն պահանջմունքների բավարարման վրա։

Որոշակի հետաքրքրություն է ներկայացնում նաև սպառման հասարակական ֆոնդերի կառուցվածքը, ըստ ձևավորման աղբյուրների։ Մեր կատարած հաշվարկները ցույց են տալիս, որ նշված կտրվածքով սպառման հասարակական ֆոնդերն ունեն հետևյալ կառուցվածքը։ Պետական բյուջեի միջոցները և պետական այլ ծախսումները ՀՍՍՀ-ում 1960 թ. կազմել են 197,4 մլն ռուբլի, կամ սպառման հասարակական ֆոնդերի ընդհանուր ծավալի 95,9 տոկոսը, իսկ 1970-ին՝ 541 մլն, որը կազմում է սպառման հասարակական ֆոնդերի ընդհանուր ծավալի 92,9 տոկոսը։ Ինչ վերաբերում է ձեռնարկությունների միջոցներին, ապա դրանց գումարը 1960 թ. եղել է ընդամենը 5,5 մլն ռուբլի (սպառման հասարակական ֆոնդերի ծավալի 2,6 տոկոսը), 1970-ին այն հասել է 27 մլն-ի և կազմել սպառման հասարակական ֆոնդերի ընդհանուր գումարի 4,6 տոկոսը։ Մնացած չնչին բաժինն ընկնում է կոլտնտեսությունների և արհմիութենական կազմակերպությունների միջոցներին։

Ինչպես նկատում ենք, հասարակական սպառման ֆոնդերի գոյացման հիմնական աղբյուրը մնում է պետության կենտրոնացված զուտ եկամուտը, պետական բյուջեն։ Միաժամանակ, նկատելի է այն տենդենցը, որ դանդաղ, բայց սիստեմատիկաբար ավելանում է ձեռնարկություններից և մյուս աղբյուրներից հասարակական ֆոնդերին հատկացվող միջոցների բաժինը։

Սպառման հասարակական ֆոնդերի մասին հրատարակված բազմաթիվ աշխատանքներում արտահայտվում է այն տեսակետը, ըստ որի, երբ դրանք հասարակության անդամների միջև բաշխվում են հավասարաչափ (ի տարբերություն աշխատավարձի, որը դիֆերենցվում է)։ Սպառման հասարակական ֆոնդերի բաշխման բնույթի նման մեկնաբանությունը, մեր կարծիքով, թերի է։ Չպետք է մոռանանք, որ սպառման հասարակական ֆոնդերը, որպես տնտեսական կատեգորիա, մտնում են սոցիալիստական արտադրահարաբերությունների ընդհանուր, միասնական համակարգի մեջ և նյութական ու հոգևոր բարիքների բաշխման սոցիալիստական հարաբերությունների կրող են։ Այդ պատճառով սպառման հասարակական ֆոնդերի բաշխումը ևս դիֆերենցվում է։ Այստեղ պրոբլեմն այն է, որպեսզի բացահայտվեն հասարակական սպառման ֆոնդերի բաշխման դիֆերենցման առանձնահատկությունները և տարբերությունները, ըստ աշխատանքի բաշխվող ֆոնդի դիֆերենցումից։ Ինչպես նշել ենք, հասարակական սպառման ֆոնդերը դրսևորվում և հասարակության անդամների միջև բաշխվում են անվճար ծառայությունների և դրամական վճարումների ձևով։ Որպեսզի կոնկրետ պատկերացում ունենանք, թե դրանցից յուրաքանչյուրը բաշխման պրոցեսում ինչպես և ինչ սկզբունքներով է դիֆերենցվում, բերենք հետևյալ փաստերը, որոնք հաշվարկվել են ՀՍՍՀ պետպլանի հաշվողական կենտրոնի՝ 1968 թ. Երևան քաղաքի բանվոր-ծառայողների ընտանիքների սպառողական բյուջեների ուսումնասիրության նյութերով։

Հաշվարկները ցույց են տալիս, որ եթե երկու հոգուց բաղկացած ընտանիքը դրամական վճարումների ձևով ստանում է սպառման հասարակական



ֆոնդերից իր ստացած եկամուտների 73,5, ապա անվճար ծառայությունների՝ ընդամենը 26,5 տոկոսը։ Եվ ընդհակառակը, վեց հոգուց բաղկացած բազմանդամ ընտանիքը, եթե դրամական վճարումների ձևով ստանում է բոլոր եկամուտների 35,6, ապա անվճար ծառայությունների ձևով՝ 64,5 տոկոսը։

Այսպիսով, ակնհայտ է հետևյալ օրինաչափությունը, որ սպառման հասարակական ֆոնդերից դրամական վճարումները և անվճար ծառայությունները, կախված ընտանիքների մեծությունից, իրենց բաշխման պրոցեսում տարբեր կերպ են դիֆերենցվում։ Որքան բազմանդամ են դառնում ընտանիքները, այնքան զուգահեռաբար մեծանում են սպառման հասարակական ֆոնդերից ստացվող անվճար ծառայությունները և, ընդհակառակը, փոքրանում՝ դրամական վճարումները։ Ուստի, կարող ենք եզրակացնել, որ անվճար ծառայությունները բաշխվում են հօգուտ բազմանդամ ընտանիքների, իսկ դրամական վճարումները՝ քիչ շնչեր ունեցողների։

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ որոշակի կախվածություն գոյություն ունի նաև սպառման հասարակական ֆոնդերի բաշխման դիֆերենցման ու ընտանիքների միջին շնչային եկամուտների չափերի միջև։ Այսպես, մինչև 30 ռուբլի շնչային եկամուտ ունեցող ընտանիքը դրամական վճարումների ձևով ստանում է սպառման հասարակական ֆոնդերից գոյացած բոլոր եկամուտների 26,5, իսկ անվճար ծառայությունների ու արտոնությունների՝ 73,5 տոկոսը։ Եվ, ընդհակառակը, 125 ռ. և ավելի շնչային եկամուտ ունեցող ընտանիքը դրամական վճարումների ձևով ստանում է սպառման հասարակական ֆոնդերից մուտք գործող եկամուտների 61,5, իսկ արտոնությունների ու անվճար ծառայությունների՝ 38,5 տոկոսը։

Այսպիսով, որքան փոքր է ընտանիքի շնչային եկամուտը, այնքան մեծ է նրա բաժինը անվճար ծառայությունների մեջ և ընդհակառակը։

ՍՄԿԿ XXIV համագումարի որոշումներով առաջիկայում սպառման հասարակական ֆոնդերից դրամական միջոցների մի մասը ևս բաշխվելու է հօգուտ բազմանդամ, փոքր շնչային եկամուտ ունեցող ընտանիքների։ Դա նպաստելու է բնակչության կենսամակարդակների տարբերությունները աստիճանաբար համահարթելու պրոցեսում սպառման հասարակական ֆոնդերի դերի ակտիվացմանը, մեծացմանը։

Սպառման հասարակական ֆոնդերի աճման տենդենցները բացահայտելու և պլանաչափորեն կարգավորելու համար կարևոր նշանակություն ունի դրանց խմբավորումը՝ կախված ըստ աշխատանքի բաշխման սկզբունքից։ Բանն այն է, որ սպառման հասարակական ֆոնդերի մի մասը իրենց ձևավորման պրոցեսում ուղղակի թե անուղղակի կապված են ըստ աշխատանքի վարձատրության (աշխատավարձի) հետ, իսկ մյուս մասը՝ ոչ։ Ըստ աշխատանքի վարձատրության հետ են կապված. բանվորների ու ծառայողների, ինչպես նաև կոլտնտեսականների արձակուրդայինի վճարումները, սոցիալական ապահովագրության և սոցիալական ապահովության համար վճարվող կենսաթոշակներն ու թոշակները, ժամանակավոր անաշխատունակության, ինչպես նաև հղիության ու ծննդաբերության համար տրվող նպաստները և այլն։ Ինչ վերաբերում է մանկական հիմնարկությունների, հանրակրթական դպրոցների միջնակարգ ու բարձրագույն մասնագիտական ուսումնական հաստատությունների, պրոֆեսիոնալ-տեխնիկական ուսումնարանների, առողջապահական, ֆիզկուլտուրայի, սանատորա-կուրորտային սպասարկման, կու-

տուր-լուսավորական հիմնարկությունների ու հանրայնացված բնակարանային ֆոնդի պահպանման համար արվող ծախսերին, ապա դրանք անկախ են աշխատանքի վարձատրությունից: Մեր հաշվարկներով ՀՍՍՀ-ում սպառման հասարակական ֆոնդերն այդ կտրվածքով ունեն հետևյալ կառուցվածքը:

ՀՍՍՀ սպառման ֆոնդերի կառուցվածքը կախված բաշխման բնույթից

| | 1960 թ. | | 1965 թ. | | 1970 թ. | |
|---|---|---|---|---|---|---|
| | միլիոն ռուբլի | տոկոսներով ամբողջ ծավալում | միլիոն ռուբլի | տոկոսներով ամբողջ ծավալում | միլիոն ռուբլի | տոկոսներով ամբողջ ծավալում |
| Ընդամենը՝ սպառման հասարակական ֆոնդեր | 206,0 | 100 | 347,6 | 100 | 582,0 | 100 |
| այդ թվում՝ | | | | | | |
| կապված ըստ աշխատանքի վարձատրության հետ | 69,9 | 34,0 | 116,3 | 33,5 | 209,9 | 36,1 |
| անկախ ըստ աշխատանքի վարձատրությունից | 136,1 | 66,0 | 231,3 | 66,5 | 372,1 | 63,9 |

Ինչպես նկատում ենք, սպառման հասարակական ֆոնդերի գերակշռող մասն անկախ է ըստ աշխատանքի վարձատրությունից: Դրանք հիմնականում բնակչության հոգևոր և սոցիալական բնույթի պահանջմունքների բավարարման համար տրվող անվճար ծառայություններն են: Միևնույն ժամանակ նկատելի են հետևյալ տենդենցները. 1960—1965 թթ. աշխատանքի վարձատրության հետ կապված սպառման հասարակական ֆոնդերի բաժինը ոչ միայն չի ավելացել, այլ 0,5 տոկոսով նվազել է: Եվ, ընդհակառակը, 1965—1970 թթ. նկատելի է դրան հակառակ տենդենցը: Գնալով աճում է սպառման հասարակական ֆոնդերի այն մասը, որը կապված է ըստ աշխատանքի վարձատրության հետ: Դա բացատրվում է նրանով, որ նշված կտրվածքով սպառման հասարակական ֆոնդերի առանձին բաղադրամասեր տարբեր տեմպերով են աճել: Այսպես, հաշվարկները ցույց են տալիս, որ 1960—1965 թթ. ավելի արագ է աճել սպառման հասարակական ֆոնդերի այն մասը, որն անկախ է ըստ աշխատանքի վարձատրությունից, իսկ 1965—1970 թթ. ընդհակառակը, արագ աճեցին ըստ աշխատանքի վարձատրության հետ կապված սպառման հասարակական ֆոնդերը:

Ութերորդ հնգամյակում (1965—1970 թթ.) ըստ աշխատանքի վարձատրության հետ կապված սպառման հասարակական ֆոնդերի արագ աճը պայմանավորված էր 1965 թ. մեր երկրում անցկացված տնտեսական ռեֆորմի արդյունքներով: Ընդ որում, տնտեսական ռեֆորմը երկակի նպաստեց սպառման հասարակական ֆոնդերի այդ մասի արագ աճին: Դա, մի կողմից՝ կապ-

ՀՍՍՀ սպառման հասարակական ֆոնդերի աճի տեմպերը (տոկոսներով)

| | 1960—1965 թվականներին | 1965—1970 թվականներին |
|---|---|---|
| Ընդամենը՝ սպառման հասարակական ֆոնդեր | 43 | 67,4 |
| այդ թվում՝ | | |
| կապված ըստ աշխատանքի վարձատրության հետ | 66,3 | 80,5 |
| ըստ աշխատանքի վարձատրությունից անկախ | 70,0 | 60,9 |



ված էր այդ ժամանակահատվածում բանվոր-ծառայողների աշխատավարձի և հանրային տնտեսություններից կոլտնտեսային գյուղացիության ստացած եկամուտների բարձրացման նպատակով սովետական կառավարության ձեռնարկած մի շարք միջոցառումների կենսագործման հետ, իսկ մյուս կողմից՝ ըստ աշխատանքի վարձատրության սիստեմին անմիջականորեն առընչվող ապակենտրոնացված ծպառման հասարակական ֆոնդերի արագ զարգացման հետ:

Սպառման հասարակական ֆոնդերը 1975 թ. ՍՍՀՄ-ում կազմելու են 90 մլրդ ռուբլի, իսկ բնակչության մեկ շնչի հաշվով՝ 350 ռուբլի: Դա նշանակում է, որ 1975 թ. մեր հանրապետության միջին ընտանիքը (ենթադրվում է 4,3 մարդ) այդ միջոցներից կստանա մոտ 1500 ռուբլի: Սպառման հասարական ֆոնդերի նման չափերը տնտեսագիտության առաջ դնում են մի շարք լուրջ խնդիրներ, որոնք վերաբերում են դրանց ձևավորման ու բաշխման հետագա կատարելագործմանը:

Զարգացած սոցիալիստական հասարակարգում, մասնավորապես ընթացիկ և առաջիկա հնգամյակներում, սոցիալական կարևորագույն պրոբլեմներից մեկը ընտանիքների դեռևս գոյություն ունեցող թերապահովվածության վերացումն է: Այդ պրոբլեմի լուծման հարցում կարևոր դեր ունեն սպառման հասարակական ֆոնդերը, քանի որ ինչպես նշվեց, դրանց երեք քառորդը հատկացվում է բնակչության անաշխատունակների պահանջմունքների բավարարմանը: Նշանակում է, որ սպառման հասարակական ֆոնդերի բաշխման կատարելագործումը պետք է հետապնդի նաև այդ նպատակը: Անհրաժեշտ է, որ սպառման հասարակական ֆոնդերի միջոցների ավելի մեծ մասը հատկացվի դեռևս եկամտի ինքնուրույն աղբյուր չունեցող (մատաղ սերնդի, ուսանողության) կամ անաշխատունակների պահանջմունքների բավարարմանը: Այդ տեսակետից ուշադրության է արժանի տնտեսական գիտությունների դոկտոր Գ. Սարգսյանի այն առաջարկը, որ, աշխատավարձի նվազագույն չափերն աճելու զուգահեռ, պետք է համապատասխանորեն ավելանան նաև կենսաթոշակների նվազագույն չափերը, հակառակ դեպքում ավելի կմեծանան բնակչության աշխատողների ու կենսաթոշակառուների կյանքի պայմանների տարբերությունները: Ուշադրության է արժանի նաև հեղինակի այն առաջարկը, որ ներկա պայմաններում նպատակահարմար է ուսանողներին կրթաթոշակի հետ տրամադրել նաև նպաստներ՝ վերադարձնելու սկզբունքով (վարկի ձևով):

Կատարելագործման կարիք են զգում նաև սպառման հասարակական ֆոնդերի հաշվին բնակարանային ֆոնդի բաշխումն ու օգտագործումը: Ժամանակն է, որ նախ մտցվի բնակարանային վարձի դիֆերենցում, պայմանավորված բնակարանի որակի, տեղադրության և կոմունալ հարմարությունների տարբերություններով և, երկրորդ, սահմանված նորմաներից ավելի բնակելի տարածության համար պետք է սահմանվեն խիստ բարձրացած տարիֆներով բնակարանային վարձ, որպեսզի կանխվեն հանրայնացված բնակարանային ֆոնդի օգտագործման չարաշահումները:

Վերջապես, սպառման հասարակական ֆոնդերը պետք է զգալի չափերով վերաբաշխվեն հօգուտ գյուղական բնակչության, որը կնպաստի գյուղում որակյալ աշխատուժի վերարտադրությանն ու տեղում դրա ամրակայմանը:

Նշանավոր ՏԱՐԵԹՎԵՐ

# ՌՈՒՄԻՆ ԺՈՂՈՎՐԴԻ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԿԱՐԵՎՈՐ ՈՒՂԵՆԻՇԸ*)

Քառորդ դար առաջ, 1947 թվականի դեկտեմբերի 30-ին, Ռումինիայի ժողովրդական զանգվածների համառ պայքարը, կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, ժողովրդա-դեմոկրատական հեղափոխության ընթացքում պսակվեց մեծ հաղթանակով՝ տապալվեց միապետությունը, իսկ երկիրը հռչակվեց ժողովրդական հանրապետություն: Աշխատավոր գյուղացիության և աշխատավորների մյուս խավերի հետ դաշնակցած բանվոր դասակարգի կողմից իշխանության նվաճումը նշանակում էր անցում դեպի սոցիալիստական հեղափոխության խնդիրների իրականացումը:

Ժողովրդա-դեմոկրատական հեղափոխությունը Ռումինիայում, որը տեղի ունեցավ դասակարգային սուր պայքարի պայմաններում, ոչ թե մեկուսացած երևույթ էր, այլ բաղկացուցիչ մասն էր ընդհանուր հեղափոխական պրոցեսի, որը ուժեղացել էր կապիտալիզմի ընդհանուր ճգնաժամի սրմանը զուգընթաց, իսկ այդ ճգնաժամը սրվել էր այն բանի հետեվանքով, որ ջախջախվել էին հիտլերյան Գերմանիան ու նրա դաշնակիցները, և սովետական բանակը ֆաշիստական լծից ազատագրել էր Եվրոպայի ժողովուրդներին: Ռումինիայում հեղափոխական վերափոխումների սկիզբը դրվեց 1944 թվականի օգոստոսի 23-ին: Այդ օրը երկրի հայրենասիրական ուժերը, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, իրականացրին զինված ապստամբություն, որը ծավալվում էր սովետական բանակի հաղթական հարձակման պայմաններում:

Անտոնեսկուի ֆաշիստական կառավարությունը տապալվեց: Ռումինիան դուրս եկավ հակասովետական պատերազմից և զենքը շուռ տվեց գերմանա-ֆաշիստական զորքերի դեմ: Ռումինիայի ազատագրման և գերմանական ֆաշիզմի ջախջախման համար մղված համատեղ զինված պայքարում Սովետական Միության և Ռումինիայի ժողովուրդների միջև ծընվեցին և սկսեցին ամրապնդվել նոր տիպի հարաբերություններ, որոնք հիմնված են բարեկամության, փոխօգնության և համագործակցության վրա:

Ռումինիայի կոմունիստական կուսակցության գլխավոր քարտուղար Ն. Չաուշեսկուն 1971 թվականի մայիսի 7-ին ՌԿԿ-ի ստեղծման 50-ամյակի առթիվ տված զեկուցման մեջ, բարձր գնահատելով երկրորդ համաշխարհային պատերազմում ՍՍՀՄ զինված ուժերի կատարած դերը, երախտագիտություն հայտնեց «Սովետական Միության փառապանծ բանակին, որը հսկայական զոհողությունների գնով ջախջախեց նացիզմի ռազմական մեքենան, վճռական ավանդ ներդրեց ֆաշիստական լծից Ռումինիայի և մյուս երկրների ազատագրման, հիտլերյան Գերմանիայի ջախջախման գործում»:

Երկրի ազատագրմամբ ռումին ժողովրդի կյանքում սկսվեց նոր հասարակարգի կառուցման դարաշրջանը: Ռումինական կոմունիստների առջև, բնականաբար, հարց ծառացավ՝ ինչպես գործել այսուհետև: Դրա պատասխանը տալիս էին սոցիալիստական հեղափոխության մարքս-լենինյան տեսությունը. ՍՄԿԿ փորձը, որը ռումինական կոմունիստների կուսակցությունը օգտագործում էր երկրի կոնկրետ քաղաքական ու սոցիալ-տնտեսական իրադրությանը համապատասխան:

Կոմունիստական կուսակցությունը առաջադրեց և հետևողականորեն կենսագործում էր մասսաների հավանությանն արժանացած լոզունգներ, որոնք պահանջում էին, որ Ռումինիան դուրս գա հակասովետական պատերազմից, միանա հակաֆաշիստական կոալիցիային և մասնակցի հակահիտլերյան պատերազմին, դեմոկրատացնի իշխանության օրգանները և դրանք զտի հետադիմական ու ֆաշիստական տարրերից, անցկացնի ագրարային և մի շարք այլ ռեֆորմներ, որոնք ընպատեին բանվոր դասակարգի ու նրա կուսակցության՝ որպես առաջատար քաղաքական ուժի հաղթանակին: Դիմադրելով ռեակցիային, կոմունիստական կուսակցությունը մեծ ջանքեր գործադրեց արհմիութենական շարժման մեջ պառակտումը վերացնելու, 1944 թվականի հոկտեմբերին երկրի դեմոկրատական ուժերը Ազգային-դեմոկրատական ճակատի մեջ միավորելու և դրանց է՛լ ավելի համախմբելու համար:

Բուրժուազիայի և դեմոկրատական ուժերի միջև մղված պայքարը վճռական փուլ թևակոխեց 1945 թվականի փետրվար-մարտին: Կոմունիստների ղեկավարությամբ, Ռումինիայի աշխատավորները, հաղթահարելով հետադիմական ուժերի կատաղի դիմադրությունը, 1945 թվականի մարտի 6-ին ստեղծեցին առաջին դեմոկրատական կառավարությունը, որը գլխավորեց ականավոր քաղաքական գործիչ Պետրու Գրոզան: Այդ կառավարությունը, որտեղ վճռական դերը պատկանում էր բանվոր դասակարգի ներկայացուցիչներին, միջոցներ ձեռնարկեց՝ ապահովելու ռումինական զինված ուժերի ավելի ակտիվ մասնակցությունը հակահիտլերյան պատերազմին, հետևողականորեն կատարելու զինադադարի պայմանները, որոնք վերաբերում էին երկրի դեմոկրատացմանը, ցրված ֆաշիստական կազմակերպությունների անդամների ու դրանց հետ համագործակցած անձանց վտարմանը պետական ապարատից, ձեռնամուխ եղավ դեմոկրատական խոր վերափոխումների իրականացմանը:

1945 թվականի հոկտեմբերին կայացավ երկրի ամենաազդեցիկ ուժի՝ կոմունիստական կուսակցության ազգային կոնֆերանսը: Դրա ընդունած որոշումները ուղղված՝ ժողովրդա-դեմոկրատական կարգի, բանվոր դասակարգի միասնության և գյուղացիության հետ նրա դաշինքի ամրապնդմանը, երկրի ինդուստրացման և էլեկտրիֆիկացման կուրսի կենսագործմանը, կարևոր դեր խաղացին կուսակցության հեղինակության ամրապնդման համար, նպաստեցին մասսաների շրջանում նրա ազդեցության հետագա մեծացմանը:

1946 թվականի նոյեմբերին կայացած հետպատերազմյան առաջին պառլամենտական ընտրություններում, կոմունիստների գլխավորած դեմոկրատական կուսակցությունների բլոկը վճռական հաղթանակ տարավ Մանիուի և Բրատիանուի ղեկավարած, այսպես կոչված՝ «պատմական կուսակցությունների» նկատմամբ, որոնք վերջնականապես վարկաբեկվել էին և մեկուսացվել:

Դեմոկրատական ուժերի հաղթանակը հնարավորություն ընձեռեց առավել եռանդով իրականացնելու հետագա սոցիալական վերափոխումները. այդ ասպարեզում ձեռնարկված կարևորագույն միջոցներն էին՝ ազգային բանկի պետականացումը, պետական ու բանվորական վերահսկողության սահմանումը արդյունաբերության, տրանսպորտի ու առևտրի նկատմամբ, դրամական ռեֆորմի անցկացումը:

Արտահայտելով ժողովրդի կամքը, դեմոկրատական կառավարությունը հրաժարվեց Ռումինիայի շահագործող դասակարգերի հետադիմական, հակասովետական և հակազգային արտաքին քաղաքական կուրսից. արտաքին քաղաքականության մեջ պատմական շրջադարձ կատարվեց՝ բարեկամական հարաբերություններ հաստատվեցին Սովետական Միության հետ: ՍՍՀՄ-ի ու Եվրոպայի մյուս ժողովրդա-դեմոկրատական երկրների հետ բարեկամական քաղաքականությունը զգալիորեն ամրապնդեց Ռումինիայի միջազգային դրությունը. երկիրը հնարավորություն ստացավ վարելու ինքնուրույն արտաքին քաղաքականություն:

Քանի դեռ երկիրը ընթանում էր սոցիալիստական վերափոխումների ուղիով, Գ. Տատարեսկուի գլխավորած լիբերալ բուրժուազիայի խմբավորումը, որը առաջին էտապում կառավարության մեջ համագործակցում էր դեմոկրատական ուժերի հետ, անցավ օպոզիցիայի լագերը և փորձեց պառակտել դեմոկրատական ուժերի միասնությունը: Պառլամենտը 1947 թվականի նոյեմբերին անվստահություն հայտնեց այդ խմբին, և նրա ներկայացուցիչները հեռացվեցին կառավարությունից, այնտեղ բոլոր պոստերը գրավեցին բանվոր դասակարգի և աշխատավոր գյուղացիության ներկայացուցիչները: Այդ պայմաններում սոցիալիզմի իրականացման ճանապարհին հիմնական խոչընդոտը շարունակում էր մնալ օտարերկրյա իմպերիալիստական շրջանների աջակցությունը վայելող թագավորական արքունիքը, որի շուրջը և խմբավորվել էր ներքին ռեակցիան:

Հետևաբար, միապետության տապալման համար մղված պայքարը ժողովրդա-դեմոկրատական հեղափոխության հաղթանակի և սոցիալիստական հասարակարգի կառուցման անցնելու նպատակով մղված պայքարի անհրաժեշտ բաղկացուցիչ մասն էր:

Իր դարն ապրած միապետության ինստիտուտի վերացման կուրս վերցնելով, կոմունիստական կուսակցությունը և դեմոկրատական կառավարությունը ձեռնարկեցին մի շարք կազմակերպական ու քաղաքական միջոցներ՝ նպատակ ունենալով կանխել արքունիքի և ռեակցիայի հնարավոր պրովոկացիոն գործողությունները: Մոբիլիզացված կուսակցական ու

* Տպագրվում է որոշ համառոտումներով.—Խմբ.:

արհմիութենական աշխատողները, հայրենասիրական ջոկատներն ու զորամասերը Բուխարեստում և նահանգներում գրավեցին կարևորագույն ստրատեգիական կետերը: Լիովին մեկուսացվելով, թագավորը 1947 թվականի դեկտեմբերի 30-ին ստորագրեց գահից հրաժարվելու ակտը: Նույն օրը պառլամենտը հռչակեց Ռումինական Ժողովրդական Հանրապետության կազմավորումը:

Ժողովրդական հանրապետության հռչակումը արտացոլում էր երկրի դասակարգային ուժերի հարաբերակցության մեջ տեղի ունեցած փոփոխությունների օրինաչափությունը, բոլոր դեմոկրատական ու առաջադիմական ուժերի ամրապնդման ու համախմբման արդյունքը: Կոմունիստական կուսակցության գլխավորությամբ, աշխատավորները, ոչնչացնելով բուրժուազիայի ու կալվածատերերի տիրապետությունը և տապալելով թագավորին, երկրի զարգացումը տարան սոցիալիզմի ուղիով:

Երկրի զարգացման այդ էտապի բնորոշ առանձնահատկություննն այն էր, որ բուրժուադեմոկրատական հեղափոխությունը, համեմատաբար խաղաղ, առանց քաղաքացիական պատերազմի, վերաճեց սոցիալիստական հեղափոխության, հաստատվեց պրոլետարիատի դիկտատուրա:

Ռումինիայի աշխատավոր ժողովուրդը ջերմ խանդավառությամբ ընդունեց միապետության տապալման և Ռումինական Ժողովրդական Հանրապետության կազմավորման լուրը: Ռումին ժողովրդի հետ միասին Ռումինական Ժողովրդական Հանրապետության ստեղծումը ողջունեցին ՍՍՀՄ և սոցիալիզմի ուղին թևակոխած ժողովրդա-դեմոկրատական պետությունների աշխատավորները:

Հաջորդ ժամանակաշրջանում Ռումինիայի հեղափոխական պրոցեսի հետագա ընթացքի վրա որոշիչ ազդեցություն թողած և մեծ կարևորություն ունեցող ներքաղաքական իրադարձությունը եղավ պառակտման հաղթահարումը բանվորական շարժման մեջ, կոմունիստական և սոցիալ-դեմոկրատական կուսակցությունների միավորումը մարքսիզմ-լենինիզմի գաղափարական հիմքի վրա և 1948 թվականի փետրվարին կայացած համագումարում միասնական Ռումինական բանվորական կուսակցության ստեղծումը (նա այդ անվանումը պահպանեց մինչև 1965 թվականի հուլիսը, իսկ այնուհետև վերանվանվեց Ռումինական կոմունիստական կուսակցության): Իր որոշումներում համագումարը առաջադրեց սոցիալիստական շինարարության հիմնական խնդիրները: Միջոցներ ձեռնարկվեցին կուսակցական շարքերը ամրապնդելու համար:

Կուսակցության կազմակերպական-քաղաքական ամրապնդումը ուղեկցվում էր ժողովրդադեմոկրատական պետության ամրապնդմամբ: Պետական հին օրգանները աստիճանաբար փոխարինվեցին սոցիալիստական շինարարության շահերին համապատասխանող նոր օրգաններով: 1948 թվականի սկզբին ստեղծվեցին պետական իշխանության բարձրագույն ու տեղական նոր օրգաններ՝ Ազգային մեծ ժողովը և ժողովրդական խորհուրդները: 1948 թվականի ապրիլի 13-ին ընդունված առաջին դեմոկրատական սահմանադրությունը ամրագրեց բանվոր դասակարգի գլխավորած աշխատավորների քաղաքական իշխանությունը, ինչպես նաև հիմնական նվաճումները՝ ժողովրդի դեմոկրատական իրավունքներն ու ազատությունները:

Պետական շինարարության պրոցեսում ստեղծվեցին պետական պլանային կոմիտե, պետական վերահսկողության հանձնաժողով, պետական անվտանգության, միլիցիայի օրգաններ, շարունակվեց նոր բանակի ձևավորումը, որը սկսվել էր դեռ ժողովրդական հեղափոխության առաջին տարիներին:

Կուսակցությունը երկրի կառավարմանը, նորաստեղծ պետական տնտեսական ու քաղաքական օրգանների ղեկավարմանը մասնակից դարձրեց բանվոր դասակարգի հազարավոր լավագույն ներկայացուցիչներին: Պետական և կուսակցական աշխատանքի ուղարկվեցին կուսակցության ավելի քան 40 հազար անդամ:

Սոցիալիստական շինարարության պրակտիկան Ռումինիայում, ինչպես և սոցիալիստական մյուս երկրներում, հաստատում է մարքս-լենինյան գիտության դրույթների ճշտությունն այն մասին, որ հասարակության սոցիալիստական վերակառուցումը հաջողությամբ իրականացնելու համար անհրաժեշտ է հաստատել պրոլետարիատի դիկտատուրա և ապահովել բանվոր դասակարգի կուսակցության ղեկավար դերը: Այն վկայում է գյուղատնտեսության սոցիալիստական ինդուստրացման և կոոպերացման լենինյան գաղափարների միջազգային նշանակության մասին, որոնցով ղեկավարվում էր Ռումինական կոմունիստական կուսակցությունը, ցույց է տալիս սոցիալիստական տնտեսական և հասարակական սիստեմի վիթխարի առավելությունները կապիտալիզմի սիստեմի նկատմամբ: «Այժմ մենք գիտենք ոչ միայն տեսականորեն, այլև համոզվել ենք գործնականորեն,— ընդգծել է Լ. Ի. Բրեժնևը ՍՄԿԿ XXIV համագումարին տված հաշվետու զեկուցման մեջ,— որ սոցիալիզմի ուղին, նրա հիմնական գծերը որոշվում են ընդհանուր օրինաչափություններով, որոնք հատուկ են սո-



ցիալիստական բոլոր երկրների զարգացմանը»:

Իրենց երկրում սոցիալիզմի կառուցման համար մղած պայքարում կոմունիստներն ու ողջ ռումին ժողովուրդը լայնորեն հենվում էին ՍՄԿԿ, Սովետական Միության պատմական փորձի և եղբայրական օգնության վրա: Այն ժամանակ, երբ արևմտյան տերությունները ձգտում էին կանխել Ռումինիայի անջատումը կապիտալիզմի սիստեմից և նրա անցումը սոցիալիզմին, մշտապես փորձում քաղաքական ճնշում գործադրել նրա վրա, իսկ տնտեսական պլանով՝ բլոկադայի ենթարկել նրա արտաքին տնտեսական կապերը, սովետա-ռումինական արդյունավետ հարաբերությունները էական աջակցություն էին երկրի տնտեսական դրությունը բարելավելու, նրա միջազգային դիրքերը ամրապնդելու համար:

Սովետական Միության և մյուս ժողովրդադեմոկրատական երկրների հետ տնտեսական համագործակցությունը մեծ դեր խաղաց Ռումինիայի ժողովրդական տնտեսության ամրապնդման գործում: 1945 թվականի մայիսի 8-ին ՍՍՀՄ-ի և Ռումինիայի կառավարությունները ստորագրեցին համաձայնագրեր տնտեսական համագործակցության և ապրանքաշրջանառության մասին, որը նպաստեց ռումինական արդյունաբերության հետպատերազմյան վերականգնման և այն հումքով ապահովելու պրոբլեմների լուծմանը: Ռումինական կողմի նախաձեռնությամբ, 1945 թվականի մայիսի 8-ի համաձայնագրի համապատասխան, ստեղծվեցին սովետա-ռումինական խառն ընկերություններ՝ «Սովռոմներ», որոնք էական ավանդ ներդրեցին երկրի էկոնոմիկայի վերականգնման, ռումինական արդյունաբերության նոր ճյուղերի ստեղծման գործում: Հետպատերազմյան ժամանակի դժվարին պայմաններում ՍՍՀՄ-ը, ինքը կրելով դժվարություններ, օգնության ձեռք մեկնեց Ռումինիային, որի գյուղատնտեսությունը տուժել էր 1945—1946 թվականների չտեսնված երաշտի ու անբերրիության հետևանքով, նրան տրամադրեց հարյուր հազարավոր տոննա հացահատիկ, արտահանեց հումք և այլ ապրանքներ՝ մետալուրգիական, մետաղամշակման, տեքստիլ, քիմիական արդյունաբերության և նրա այլ ճյուղերի նորմալ աշխատանքն ու բանվորական ուժի զբաղվածությունն ապահովելու համար: Նշելով այն դժվարությունները, որոնք հետպատերազմյան տարիներին բաժին ընկան ռումին ժողովրդին, կառավարության նախագահ Պետրու Գրոզան Ռումինական Ժողովրդական Հանրապետության հռչակման առթիվ ունեցած իր ելույթում ընդգծում էր. Ռումինիան այդպիսի ծանր փորձություններին կարողացավ դիմանալ «միայն ռումին ժողովրդի ու նրա կառավարության կամքի ու լարված աշխատանքի, ազգային համերաշխության լայն ճակատի կազմակերպման և Սովետական Միության ու մյուս հարևան երկրների մեծահոգի աջակցության շնորհիվ»:

Սովետական Միությունը օգնեց Ռումինիային՝ վերազինելու մի շարք ձեռնարկություններ, կոմպլեկտային սարքավորումներ մատակարարեց ծանր ինդուստրիայի և արդյունաբերության մյուս ճյուղերի խոշոր կառույցների համար, անվճար նրան հանձնեց ֆաբրիկաների, գործարանների, էլեկտրակայանների շինարարության տեխնիկական փաստաթղթեր, նախագծեր, պատենտներ տվեց մեքենաների մի քանի տեսակների արտադրության համար: Մեծ թվով ռումին մասնագետներ, ուսանողներ ու ասպիրանտներ կրթություն ստացան ՍՍՀՄ-ում:

ՍՍՀՄ-ի և սոցիալիզմի ուղին ընտրած մյուս երկրների հետ տնտեսական սերտ համագործակցության շնորհիվ Ռումինիան հեշտությամբ հաղթահարեց էկոնոմիկայի հետպատերազմյան վերականգնման ու հետագա զարգացման դժվարությունները:

Ռումինիայի միջազգային դիրքերի ամրապնդման համար առանձնահատուկ նշանակություն ունեցավ բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության պայմանագրերի կնքումը ՍՍՀՄ-ի (1948 թվականի փետրվարի 4-ին) և սոցիալիզմի ուղին թևակոխած եվրոպական երկրների հետ: Այդ պայմանագրերը դրսից ժողովրդա-դեմոկրատական Ռումինիայի ներքին գործերին չմիջամտելու կայուն երաշխիք էին:

Սովետական Միության քաղաքական հաստատակամ աջակցությունը հնարավորություն ընձեռեց ձախողելու ԱՄՆ-ի ու Անգլիայի փորձերը՝ որոշիչ ազդեցություն գործելու ռումին ժողովրդի բախտի վրա, երկրին պարտադրելու հաշտության պայմանագրի անարդարացի պայմաններ, օգնեց Ռումինիային, ինչպես և մյուս ժողովրդա-դեմոկրատական պետություններին՝ օրինական տեղ գրավելու ՄԱԿ-ում, ամրապնդելու իրենց միջազգային դիրքերը:

Ռումինիան, որ անցյալում Եվրոպայի տնտեսական տեսակետից ամենահետամնաց երկրներից մեկն էր, սոցիալիզմի կառուցման ընթացքում, կոմունիստական կուսակցության ղեկավարած ժողովրդի անձնազոհ աշխատանքի շնորհիվ, կարճ ժամկետում դարձավ զարգացած արդյունաբերություն և կոոպերացված գյուղատնտեսություն, առաջավոր գիտություն և կուլտուրա ունեցող երկիր: Ռումինական կոմունիստական կուսակցության IX համագու-

մարը, որը տեղի ունեցավ 1965 թվականի հուլիսին, արձանագրեց սոցիալիստական արտադրահարաբերությունների լիակատար հաղթանակը քաղաքում և գյուղում, իսկ 1965 թվականի օգոստոսին ընդունված նոր սահմանադրությունը պետությունն անվանեց Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետություն։

Նախադրյալներ ստեղծելով սոցիալիստական հասարակարգի հետագա կառուցման և համակողմանի զարգացման համար, Ռումինիայի աշխատավորները, ՌԿԿ-ի ղեկավարությամբ, ձեռնամուխ եղան զարգացած սոցիալիզմի կառուցմանը։ 1969 թվականի օգոստոսին կայացած ՌԿԿ-ի X համագումարը կուսակցության ու ժողովրդին նպատակամղեց «ընդլայնելու և կատարելագործելու երկրի նյութա-տեխնիկական բազան, ստեղծելու համակողմանիորեն զարգացած հասարակարգ։

Այժմ սոցիալիստական սեկտորը արդյունաբերության մեջ գրավում է 99,9 տոկոսը, իսկ գյուղատնտեսության մեջ (գյուղատնտեսական հողատարածություններով)՝ 90,8 տոկոսը։

Երկիրն ընթանում է արտադրաուժերի արագ զարգացման ճանապարհով։ Արդյունաբերական արտադրանքի ծավալն ընթացիկ տարում 21 անգամ գերազանցում է 1938 թվականի արդյունաբերական արտադրության մակարդակը, մի թվական, որը Ռումինիայի տնտեսական զարգացման ամենաբարձր ցուցանիշների տարին էր նախապատերազմյան շրջանում։ Ազգային եկամտի գոյացման մեջ արդյունաբերության բաժինը 1971 թվականին կազմեց գրեթե 62 տոկոս՝ 1938 թվականի 30,8 տոկոսի համեմատությամբ։

Գյուղատնտեսության մեջ 1971 թվականին ստացվել է 14,5 միլիոն տոննա հացահատիկ, իսկ գյուղատնտեսական համախառն արտադրությունը 1971 թվականին 1,9 անգամ գերազանցեց նախապատերազմյան մակարդակը։ Աճել է անասունների գլխաքանակը։ Բարձրացել է գյուղատնտեսության մեքենայացման և քիմիացման մակարդակը։

Երկրի ժողովրդական տնտեսության զարգացման գործում ձեռք բերված հաջողությունների հիման վրա նախադրյալներ են ստեղծվում ժողովրդի կյանքի նյութական ու կուլտուրական մակարդակի բարձրացման լայն ծրագրի իրականացման համար։ Բարելավվել են բնակչության կենսաթոշակային ապահովությունը, բժշկական սպասարկումը։ Բնակչության դրամական եկամուտները 1971 թվականին, 1970 թվականի համեմատությամբ, աճեցին 8,6 տոկոսով։ Փոխում են իրենց դեմքը քաղաքներն ու գյուղերը, ուր միայն անցյալ տարի կառուցվել է 152 հազար բնակարան։

Զարգանում են ժողովրդական կրթությունը, գիտությունը, կուլտուրան և արվեստը։ Ռումինիայում սովորում է բնակչության ավելի քան 20 տոկոսը, ուսանողների թիվը գրեթե 6 անգամ գերազանցում է 1938 թ. մակարդակը։

Կուսակցության որոշումների համապատասխան երկրում միջոցառումներ են իրականացվում ժողովրդական տնտեսության պլանավորումն ու ղեկավարումը կատարելագործելու համար։ Նշանակալի ջանքեր են գործադրվում բարձրացնելու կոմունիստական կուսակցության ղեկավար դերը, ակտիվացնելու մասսայական հասարակական, արհեստակցական, երիտասարդական, կանանց, կոոպերատիվ և այլ կազմակերպությունների գործունեությունը, կատարելագործելու գաղափարական աշխատանքը։

Երկրի հետագա զարգացման համար մեծ նշանակություն ունի 1972 թվականի հուլիսին կայացած ՌԿԿ-ի ազգային կոնֆերանսը։ Այն քննարկեց Ռումինիայի առաջիկա և հետագա տարիների սոցիալ-տնտեսական զարգացման հարցերը, հասարակության պլանային կառավարումը կատարելագործելու և սոցիալիստական դեմոկրատիայի զարգացման պրոբլեմները, սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում կուսակցության ղեկավար դերի բարձրացման, ինչպես նաև կուսակցության ու պետության միջազգային գործունեության պրոբլեմները։

Հիշարժան տարեթվի՝ Հանրապետության հռչակման 25-ամյակի նախօրյակին, Ռումինիայի կոմունիստներն ու աշխատավորները ամփոփում են երկրի զարգացման արդյունքները։ Դրանք անխզելիորեն կապված են սոցիալիստական մյուս պետությունների ժողովուրդների նվաճումների, նրանց եղբայրական փոխօգնության, քաղաքական, տնտեսական ու ռազմական սերտ համագործակցության հետ։

ՏՓԽ-ի անդամ բոլոր երկրների հետ Ռումինիան մասնակցում է սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի համագործակցության հետագա խորացման, կատարելագործման և զարգացման կոմպլեքսային ծրագրի դրույթների իրականացմանը, ծրագիր, որն ընդունվել է XXV Տնտեսական փոխօգնության խորհրդի նստաշրջանում։ Ռումինիայի մասնակցությունը ինտեգրացիայի գիտականորեն մշակված ծրագրի իրականացմանը նրան հնարավորություն է տալիս լայնորեն օգտագործելու աշխատանքի սոցիալիստական միջազգային բաժանման, սոցիալիզմի երկրների՝ մարքսիզմ-լենինիզմի ու պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա հիմնված կոլեկտիվ համագործակցության առավելությունները։ 1971 թվականին ՏՓԽ-ի երկրներին և սոցիալիստական մյուս պետություններին բաժին էր ընկնում Ռումինիայի արտաքին առևտրի ընդհանուր ծավալի 55,3 տոկոսը, այդ թվում մեքենաշինության արտադրանքի ռումինական արտահանության ճնշող մասը։ ՌԿԿ-ի ազգային կոնֆերանսը ընդգծեց, որ անհրաժեշտ է «ըստ ամենայնի ուշադրություն նվիրել կոմպլեքսային ծրագրի շրջանակներում Տնտեսական փոխօգնության խորհրդի երկրների հետ համագործակցությունն ընդլայնելու հարցերին»։

Սովետական Միության և Ռումինիայի միջև հաստատվել ու զարգանում են բարեկամության և ընկերական համագործակցության հարաբերություններ, որոնք համապատասխանում են երկու երկրների կենսական շահերին։ ՍՍՀՄ-ը ռումինական արտաքին առևտրում գրավում է առաջին տեղը։

Մեր երկիրը Ռումինիային ցույց է տվել և ցույց է տալիս տեխնիկական օգնություն ավելի քան 100 խոշոր արդյունաբերական օբյեկտների շինարարության գործում, դրանց թվում մի քանի հզոր ջերմաէլեկտրակայանների, Խունեդարի և Գալացի մետալուրգիական կոմբինատների խոշոր արտադրամասերի, նավթավերամշակման, նավթաքիմիական, քիմիական ու մեքենաշինական արդյունաբերության մի շարք ձեռնարկությունների, կայանքների ու արտադրամասերի, ցելյուլոզայի-թղթի արդյունաբերության, տրանսպորտի ու կապի օբյեկտների կառուցման ասպարեզում։

Ռումինական կառավարությունն ըստ արժանվույն գնահատեց սովետական ինժեներների ու տեխնիկների բարձր վարպետությունը. մեր երկրի մի խումբ մասնագետներ վերջերս պարգևատրվեցին ռումինական շքանշաններով։ Սովետական այդ մասնագետներն աշխատում էին Գալացի մետալուրգիական կոմբինատի տաք գլանվածքի հաստոցի և Դանուբի վրա՝ Երկաթե դռների շրջանում հիդրոէներգետիկական կոմպլեքսի էներգոբլոկների մոնտաժմանն ու գործարկմանը։

Վերջին ժամանակներս ստորագրվել են մի շարք նոր համաձայնագրեր, այդ թվում համաձայնագիր այն մասին, որ Սովետական Միությունը Ռումինիային կմատակարարի կոմպլեկտային սարքավորում իզոպրենային կաուչուկ արտադրող գործարանի, էներգետիկ սարքավորում՝ դոմնային ու կոքսի գազի օգտագործման, սարքավորումներ՝ մետալուրգիական և քիմիական արդյունաբերության համար։ Փոխշահավետ հիմքի վրա Ռումինիան գործուն մասնակցություն է ունենում ՍՍՀՄ-ում երկաթահանքի հումքի արտադրության զարգացմանը, նպատակ ունենալով ավելացնել այդ հումքի մատակարարումը ՌՍՀ-ին։ Սոցիալիստական մյուս երկրների հետ միասին Ռումինիան կմասնակցի Սովետական Միությունում ցելյուլոզայի, ասբեստի, պղնձի, նիկելի, տիտանի երկօքսիդի արտադրության ավելացմանը։ Բարձր գնահատելով սովետա-ռումինական տնտեսական համագործակցության կարևորությունը Ռումինիայի ժողովրդական տնտեսության զարգացման համար, ՌԿԿ-ի հուլիսյան ազգային կոնֆերանսի մասնակիցները առանձնապես նշեցին, որ անհրաժեշտ է մշտական ուշադրություն նվիրել ՍՍՀՄ-ի հետ տնտեսական կապերի և արտադրական կոոպերացման հետագա ընդլայնմանը։

Սովետական և ռումին ժողովուրդների միջև եղած տրադիցիոն կապերը ամրագրվեցին 1970 թվականի հուլիսի 7-ի Բարեկամության, համագործակցության և փոխադարձ օգնության նոր պայմանագրով, որը արտացոլում է երկու ժողովուրդների ջերմ ձգտումը՝ ամեն կերպ զարգացնել սովետա-ռումինական հարաբերությունները մարքսիզմ-լենինիզմի սկզբունքներով, ավելի սերտ համագործակցել սոցիալիզմի և կոմունիզմի կառուցման գործում, ամրապնդել սոցիալիստական պետությունների միասնությունն ու ինտերնացիոնալ համերաշխությունը։ Ստեղծված տրադիցիաների ոգով, սովետական ժողովուրդը հանդիսավոր կերպով նշում է ռումինական սոցիալիստական պետության պատմության հիշարժան տարեթվերը։

Ամրապնդվում են բարեկամական հարաբերությունները ՍՄԿԿ-ի և ՌԿԿ-ի միջև, որոնք կապված են բանվոր դասակարգի գործի համար, իմպերիալիզմի ու ֆաշիզմի դեմ մղված տասնամյակների համատեղ պայքարով։ Մեծ նշանակություն ունեն կանոնավոր հանդիպումները երկու երկրների կուսակցությունների ու կառավարությունների ղեկավարների միջև։ Միջկուսակցական կապերի զարգացմանն են ծառայում պատվիրակությունների ուղևորությունները՝ կուսակցական օրգանների գործունեության տարբեր բնագավառներում աշխատանքի փորձի փոխանակման համար։ Ընդլայնվում են տեղական կուսակցական օրգանների կապերը։ Յարոսլավլի, Նովգորոդի, Կիևի, Օդեսայի և Սովետական Միության ուրիշ մարզերի ու քաղաքների կուսակցական, սովետական, հասարակական կազմակերպությունները օգտակար կապեր են պահպանում Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության մի շարք նահանգների ու քաղաքների կազմակերպությունների հետ։ Եղբայրական կուսակցությունների փորձի փոխադարձ ուսում-

նասիրումը օգնում է ավելի արագ ընթանալու առաջ՝ դեպի ընդհանուր նպատակը՝ կոմունիզմը: Ինչպես նշվում էր ՍՄԿԿ XXIV համագումարին կուսակցության Կենտկոմի տված հաշվետու զեկուցման մեջ, Սովետական Միության կոմունիստական կուսակցությունը կողմնակից է, որ եղբայրական երկրների համագործակցությունը դառնա ավելի ու ավելի բազմակողմանի ու խոր, ընդգրկի աշխատավորների ավելի ու ավելի լայն զանգվածներ, որպեսզի ավելի հիմնավորապես ուսումնասիրվի միմյանց կոնկրետ փորձը պետական, հասարակական, տնտեսական ու մշակութային կյանքի բոլոր ոլորտներում:

Հետևելով պրոլետարական ինտերնացիոնալիզմի լենինյան սկզբունքներին, սովետական կոմունիստները անփոփոխ կերպով հանդես են գալիս ՍՄԿԿ-ի և ՌԿԿ-ի եղբայրական հարաբերությունների խորացման ու զարգացման օգտին՝ մարքսիզմ-լենինիզմի անսասան հիմքի վրա, ի բարօրություն սովետական ու ռումին ժողովուրդների, հօգուտ սոցիալիզմի ու կոմունիզմի վեհ գործի:

Ժողովրդա-դեմոկրատական և սոցիալիստական Ռումինիայի քսանհինգամյա զարգացման պատմությունը ցույց է տալիս, որ երկիրն անցել է սոցիալիստական շինարարության ասպարեզում հաղթանակի հասնելու համար մղված պայքարի մեծ ու դժվարին ուղի: Սոցիալիզմի ուղիով հաջող առաջընթացի գրավականը եղել է այն, որ ամբողջ 25-ամյա ժամանակաշրջանի ընթացքում բանվոր դասակարգի, աշխատավոր գյուղացիության և առաջադիմական մտավորականության գլուխ կանգնած է եղել Ռումինական կոմունիստական կուսակցությունը, որը հենվում է ՍՄԿԿ, սոցիալիստական պետությունների եղբայրական մյուս կուսակցությունների օգնության վրա:

Ներկա ժամանակաշրջանում, որը բնորոշվում է համաշխարհային սոցիալիզմի ուժերի անշեղ աճով և արդիականության արմատական պրոբլեմների լուծման վրա նրա ազդեցության ուժեղացմամբ, խաղաղության, ազատության, առաջադիմության ուժերի և ճնշման, ռեակցիայի ու ագրեսիայի ուժերի սուր հակամարտությամբ, կարևոր նշանակություն ունեն սոցիալիստական երկրների, միջազգային կոմունիստական շարժման համախմբվածությունը մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների հիման վրա, բոլոր առաջադիմական, հակաիմպերիալիստական ուժերի գործողությունների ակտիվացումը: Միջազգային իրադարձությունների զարգացումը լիովին հաստատեց կոմունիստական և բանվորական կուսակցությունների 1969 թվականի խորհրդակցության հետևությունների ճշտությունը սոցիալիստական երկրների, եղբայրական կուսակցությունների միասնության ամրապնդման վերաբերյալ՝ հօգուտ կոմունիստների ինտերնացիոնալ պարտքի կատարման:

Սոցիալիստական համագործակցության պետությունների եղբայրական բարեկամությունն ու միասնությունը, նրանց սկզբունքային դասակարգային գիծը, համաձայնեցված կոլեկտիվ ելույթները ինչպես եվրոպական մայրցամաքում, այնպես էլ ողջ աշխարհում, ապահովում են ժողովուրդների անվտանգությունը, ամրապնդում սոցիալիզմի դիրքերը, հարաճուն ներգործություն ունենում համաշխարհային իրադարձությունների ընթացքի վրա:

Սոցիալիստական երկրների համաձայնեցված քաղաքականությունը, նրանց համատեղ ջանքերը հնարավորություն ընձեռեցին առաջադիմության հասնելու այնպիսի կարևոր խնդիրների իրականացման ասպարեզում, ինչպիսիք են ձևավորված պետական սահմանների անխախտության և պետությունների տերիտորիալ ամբողջականության հաստատումը, միջազգային լարվածության թուլացումը, ԳԴՀ միջազգային դիրքերի ամրապնդումը, և անցնելու համաեվրոպական խորհրդակցության գործնական նախապատրաստմանը՝ եվրոպական պետությունների Հելսինկիի բազմակողմանի կոնսուլտացիաների շրջանակներում:

Բանվոր դասակարգի, աշխատավորների իդեալների համար մղվող պայքարում կոմունիստական և բանվորական կուսակցությունները ունեն փորձված զենք՝ մարքս-լենինյան ուսմունքը: Հավատարմությունը մարքսիզմ-լենինիզմի, պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքներին՝ սոցիալիստական պետությունների, կոմունիստական և բանվորական կուսակցությունների հետագա հաջողությունների ամուր հիմքն է. այն հնարավորություն է տալիս նրանց՝ օրգանապես զուգակցելու ազգային և ինտերնացիոնալ շահերը:

Նշելով եղբայրական երկրի պատմության նշանավոր իրադարձությունը, Սովետական Միության կոմունիստները, սովետական բոլոր մարդիկ ռումին կոմունիստներին, Ռումինիայի Սոցիալիստական Հանրապետության բոլոր աշխատավորներին ցանկանում են նորանոր հաջողություններ սոցիալիզմի կառուցման գործում, խաղաղության և ժողովուրդների անվտանգության համար մղվող պայքարում:

**Բ. ԻՎԱՆՈՎ**

«Коммунист» № 17, 1972



# ՀԵՐՈՍԱԿԱՆ ՊԱՅՔԱՐԻ ԱՐԳԱՍԻՔԸ

## (ՀԵՂԱՓՈԽԱԿԱՆ ԿՈՒԲԱՅԻ 14-ՐԴ ՏԱՐԵԴԱՐՁԻ ԱՌԹԻՎ)

Նախահեղափոխական Կուբան թույլ զարգացած, նեղ մասնագիտացված էկոնոմիկա ունեցող երկիր էր, որը կիսագաղութային կախման մեջ էր ԱՄՆ-ի մոնոպոլիաներից ու շուկայից:

Կուբայի կաշառված պրեզիդենտների վարած քաղաքականությունը հաշվի էր առնում միայն ամերիկյան մոնոպոլիաների և կուբայական խոշոր բուրժուազիայի շահերը: Այն ժամանակ, երբ երկիրը կառավարում էր դիկտատոր Բատիստան, է՛լ ավելի ուժեղացավ Կուբայի տնտեսական կախումը ԱՄՆ-ի մոնոպոլիաներից, ավելի ամրապնդվեցին ամերիկյան կապիտալի դիրքերը Կուբայի էկոնոմիկայում: Ամերիկյան կապիտալ ներդրումները Կուբայում 1958 թվականին կազմել են 1.001 միլիոն դոլար, այսինքն՝ Լատինական Ամերիկայում ԱՄՆ-ի ունեցած բոլոր ուղղակի կապիտալ ներդրումների մոտ 12 տոկոսը: Այդ գումարի մեկ երրորդը ներդրված է եղել Կուբայի շաքարի արդյունաբերության մեջ: Շաքարի ձեռնարկությունների ազգայնացման նախօրյակին, 1960 թվականին ամերիկյան 11 ընկերություններին պատկանող 36 սենտրալները[1] տալիս էին Կուբայում արտադրվող շաքարի 35,79 տոկոսը[2]: 1959 թվականին Կուբայի լավագույն հողերի 25 տոկոսը գտնվում էր ամերիկյան մոնոպոլիաների ձեռքում, այն ժամանակ, երբ գյուղացիական ընտանիքների 64 տոկոսը բոլորովին հող չուներ[3]:

Լատիֆունդիաների սիստեմը, որը ֆեոդալիզմի վերապրուկն էր, արգելակում էր երկրի սոցիալ-տնտեսական զարգացմանը: Վիթխարի հողատարածություններ փաստորեն մնում էին անմշակ: Այսպես, մինչև հեղափոխությունը շաքարի լատիֆունդիաներին էր պատկանում 2.400.000 հեկտար հողատարածություն, որից շաքարեղեգի աճեցման համար փաստորեն օգտագործվում էր միայն 1.200.000 հեկտարը (А. И. Хименес, Республика Куба, М., 1963, стр. 79—80), այն դեպքում, երբ Կուբան սննդամթերքի մեծ կարիք ուներ և դրանք ներմուծում էր ԱՄՆ-ից:

Հեղափոխության նախօրյակին ԱՄՆ-ի մոնոպոլիաները իրենց ձեռքում էին կենտրոնացրել Կուբայի էլեկտրաէներգիայի և հեռախոսային ցանցի 90 տոկոսը, երկաթուղային ճանապարհների՝ 50 տոկոսը, վերահսկողություն էին սահմանել վառելիքի մատակարարման և բանկային բոլոր վարկերի վրա:

Ամերիկյան մոնոպոլիաները կարողացել էին խոր արմատներ գցել Կուբայի էկոնոմիկայի տարբեր ճյուղերում և տասնյակ տարիներ շարունակ, զուտ շահույթի ձևով, առասպելական միջոցներ էին դուրս կորզում երկրից, որոնք այնքան անհրաժեշտ էին Կուբայի ժողովրդի կենսամակարդակի բարելավման համար: Ամերիկյան մոնոպոլիաները յուրաքանչյուր 8 տարում Կուբայից արտահանում էին 700 միլիոն դոլար: Եթե 1929—1938 թթ. ամերիկյան մոնոպոլիաները Կուբայում միջին հաշվով ստացել են 40 միլիոն դոլար շահույթ, ապա 1940—1959 թթ. այն գերազանցեց տարեկան 50 միլիոն դոլարից: 1949—1958 թթ. ամերիկյան մոնոպոլիաները Կուբայում ստացել են 505 միլիոն դոլար շահույթ, որից 422 միլիոն դոլարը տեղափոխվել է ԱՄՆ[4]:

---

1 *Սենտրալ— շաքարեղեգի աճեցման և արդյունաբերական վերամշակման հետ կապված պայմանների (հող, գործարան, մեքենաներ, տրանսպորտ, մարդիկ և այլն) կոմպլեքս:*

2. Cuba: Economica y Financiera, Noviembre/Diciembre 1960 Vol. XXXV,N 416—417 La Habana, p. 12.

3. Perfil de Cuba. s. a. La Habana. p. 123

4. Eduardo del Llano. Op. cit. p. 44,45,46.

Նախահեղափոխական Կուբայում գործազրկությունը հասել էր ահավոր չափերի, 1956—1957 թթ. երկրում եղած աշխատունակ բնակչության մեկ երրորդը գործազուրկ կամ կիսագործազուրկ էր:

Շաքարեղեգի պլանտացիաներում և սենտրալներում զբաղված 500 հազար աշխատավորների 90 տոկոսը տարվա միայն 4—5 ամիսն էր ապահովված աշխատանքով: 1958 թվականի վերջերին գյուղատնտեսական բանվորների 65 տոկոսի ամսական եկամուտը չէր հասնում 42 պեսոյի[1]:

Այսպիսով, սկսած XIX դարի վերջերից Կուբայում հաստատված ամերիկյան մոնոպոլիաները, կայուն դիրք գրավեցին նրա էկոնոմիկայում և հատկապես գլխավոր ճյուղում՝ շաքարի արդյունաբերության մեջ: Նրանց շահերը հակասում էին կուբայական ժողովրդի շահերին: Երկրում ուժեղանում էին հակաիմպերիալիստական տրամադրությունները ու մասսայական շարժումը իմպերիալիստական ճնշման ու շահագործման դեմ:

Կուբայի ժողովուրդը, իշխանության գլուխ անցնելով, ժառանգեց մոնոկուլտուրայի արատավոր էկոնոմիկա:

1959 թվականի հունվարին, հեղափոխության հաղթանակից հետո, Կուբայի առջև ծառացան արմատական սոցիալ-տնտեսական վերափոխումներ կատարելու և, առաջին հերթին, կալվածատերերի և ԱՄՆ-ի մոնոպոլիստական կապիտալի տնտեսական դիրքերը ոչնչացնելու խնդիրները: Դրանք դուրս չէին գալիս ընդհանուր դեմոկրատական պահանջների շրջանակներից և ամենաընդհանուր ձևով ձևակերպվել էին դեռևս Մոնկադայի ծրագրում[2]:

Հեղափոխության առաջին էտապի սկզբին մշակվեց և ընդունվեց ագրարային վերափոխումների ծրագիրը: Չնայած, որ այն հեղափոխական-դեմոկրատական բնույթ ուներ, նրա անմիջական նպատակը գյուղատնտեսության մեջ կապիտալիզմը ոչնչացնելը չէր: Այնտեղ մեծ տեղ էր հատկացվում այնպիսի միջոցառումների սիստեմին, որոնց հետևողական իրականացումը երկիրը դուրս էր բերում ոչ կապիտալիստական, սոցիալիստական զարգացման ուղին:

Ագրարային ռեֆորմի վերաբերյալ 1959 թվականի մայիսի 17-ի օրենքի գործնական իրականացումը ապահովեց՝ ա. արմատական փոփոխումը կուբայական հասարակության ողջ դասակարգային կառուցվածքում, երկրում վերացրեց լատիֆունդիստների դասակարգը: բ. տնտեսական հիմք ստեղծեց բանվոր դասակարգի և գյուղացիության դաշինքի համար, գ. նյութական և սոցիալական նախադրյալներ ստեղծեց գյուղի սոցիալիստական վերակառուցման համար, կյանքի կոչելով աշխատանքի հասարակական-տնտեսական կազմակերպման նոր ձևը՝ կոոպերատիվները և ժողովրդական կալվածքները: Պետության սեփականությունը դարձան բոլոր գյուղատնտեսական հողատարածությունների 40 տոկոսը և մեծ քանակությամբ այլ արտադրամիջոցներ, դրանով խիստ կրճատվեց մասնավոր ձեռնարկատիրության ոլորտը:

Լատիֆունդիզմի սիստեմի դեմ մղված պայքարը չէր կարող շուռ չգալ իմպերիալիզմի և կապիտալիստական շահագործման ամբողջ սիստեմի դեմ: «Բավական է առաջին արմատական հարձակումը գործել մասնավոր սեփականության վրա,— գրել է Էնգելսը,— և պրոլետարիատը ստիպված կլինի ավելի հեռու գնալ, ավելի շատ կենտրոնացնել պետության ձեռքում ամբողջ կապիտալը, ամբողջ գյուղատնտեսությունը, ամբողջ արդյունաբերությունը, ամբողջ տրանսպորտն ու ամբողջ փոխանակությունը» (Ф. Энгельс, Принципы коммунизма, 1847, К. Маркс и Ф. Энгельс, Соч., т. 4, стр. 333): Կուբայի հեղափոխության պայմաններում մասնավոր սեփականության վրա առաջին գրոհը ագրարային ռեֆորմն էր, որին հաջորդեց ԱՄՆ-ի մոնոպոլիաների սեփականության ազգայնացումը:

[1]. Io años en la economia. La Hadana. 1969. p. 9.

2 *Մոնկադայի ծրագիրը Ֆիդել Կաստրոն հրապարակել է իր դեմ հարուցված դատավարության ժամանակ, 1953 թվականի սեպտեմբերի 6-ին՝ «Պատմությունը ինձ կարդարացնի» նշանավոր ճառի ժամանակ: Այդ ծրագրի հինգ կետերում նախատեսված էր. 1. Կուբայի ժողովրդին վերադարձնել նրա սուվերենությունը. 2. հողը ձրի և որպես հավիտենական սեփականություն հանձնել բոլոր կոլոններին, ենթակոլոններին, վարձակալներին, ընավարձակալներին, բոլոր նրանց, ովքեր չունեն ձևակերպված պայմանագրեր և մշակում են հինգ և հնգից պակաս կաբալերիա հող (մեկ կաբալերիան հավասար է 13,42 հեկտարի). 3. բանվորներին և ծառայողներին իրավունք վերապահել՝ ստանալու արդյունաբերական, առևտրական, լեռնահանքային և շաքարի բոլոր խոշոր ձեռնարկությունների շահույթների 30 տոկոսը. 4. բոլոր կոլոններին իրավունք վերապահել ստանալու իրենց աճեցրած շաքարեղեգի եկամուտի 55 տոկոսը և շաքարի գործարաններում եղեգի աղացման նվազագույն քվոտան սահմանել 40 արրոբայի չափով (1 արրոբան հավասար է 11,5 կիլոգրամի)՝ տվյալ վայրում երեք և ավելի տարի աշխատող բոլոր մանր կոլոնների համար. 5. բռնագրավել գանձագողերի և զեղծարարների գույքը:*



1960 թվականի հուլիսի 6-ի դեկրետով հայտարարվեց, որ կառավարությանն իրավունք է վերապահվում ազգայնացնել ամերիկյան քաղաքացիների ձեռնարկությունները ու գույքը: Օգոստոսի 6-ին ազգայնացվեցին ամերիկյան ընկերությունների էլեկտրական և հեռախոսային ցանցը, շաքարի ու նավթի գործարանները. սեպտեմբերի 17-ին օրենք հրապարակվեց ամերիկյան բանկերի ազգայնացման մասին: Ազգայնացվեց Կուբայում ԱՄՆ-ի ֆինանսական կապիտալի վերջին սեփականությունը՝ 1960 թվականի հոկտեմբերի 24-ի դեկրետով: Այդ ամենի շնորհիվ Կուբայի պետության սեփականությունը դարձավ մեկ միլիարդ դոլար ընդհանուր արժողությամբ ունեցվածք: Ամերիկյան սեփականության ազգայնացմամբ վերացվեց ԱՄՆ-ի նկատմամբ կուբայական բուրժուազիայի տրադիցիոն կապիտուլյանտական դիրքորոշման՝ պլանտիզմի հիմքը:

Հյուսիսամերիկյան իմպերիալիզմի և տեղական կալվածատիրական օլիգարխիայի տիրապետության տնտեսական հիմքերի վերացմամբ, ընդհանուր դեմոկրատական մյուս վերափոխումների անցկացմամբ (քաղաքային, կրթության ռեֆորմները և այլն) ավարտվեց հակաֆեոդալական, հակաիմպերիալիստական հեղափոխության փուլը: Երկիրը ստացավ տնտեսական անկախ զարգացման հնարավորություն:

Կուբայական բուրժուազիայի գերակշռող մասը հրաժարվեց համագործակցել կառավարության հետ՝ էկոնոմիկայի զարգացման բնագավառում: Ազգային էկոնոմիկան և հեղափոխության նվաճումները պաշտպանելու նպատակով Կուբայի կառավարությունը ձեռք առավ վճռական միջոցներ: 1960 թվականի հոկտեմբերի 13-ի դեկրետով, կուբացի սեփականատերերին պատկանող 382 ձեռնարկություն (այդ թվում շաքարի 105 գործարան), ինչպես նաև մասնավոր բանկերը ազգայնացվեցին:

Այդ ակտը Ֆ. Կաստրոն արդարացի կերպով անվանեց «հեղափոխության երկրորդ փուլ»: 1960 թվականի հոկտեմբերի 13-ի ազգայնացումը Կուբայի սոցիալ-տնտեսական ողջ կառուցվածքին տվեց սոցիալիստական գունավորում և նշանավորեց երկրի անցումը սոցիալիզմի փուլին:

1963 թվականի հոկտեմբերի 3-ի դեկրետով Կուբայում վերացվեցին շահագործող վերջին դասակարգի՝ կուլակների, տնտեսական դիրքերը: Դա խիստ հարված հասցրեց իմպերիալիզմին, քանի որ վերջինս զրկվեց երկրում ունեցած իր վերջին հենարանից: Գյուղատնտեսության մեջ սոցիալիստական սեկտորը դարձավ ո՛չ միայն առաջատարը, այլև գերակշռողը: Բացի այդ, աճեց գյուղական բանվոր դասակարգի տնտեսական ու քաղաքական դերը: Վերացվեց գյուղական բուրժուազիայի գաղափարական ու քաղաքական քայքայիչ ազդեցությունը աշխատավոր գյուղացիների վրա:

Այսպիսով, Կուբայում մնաց երկու սեկտոր, հասարակական-տնտեսական երկու կացութաձև՝ սոցիալիստական և մանր ապրանքային, որոնցում համախմբված են բարեկամական դասակարգերը՝ արդյունաբերական և գյուղատնտեսական բանվորները և աշխատավոր գյուղացիությունը (մանր գյուղացիությունը՝ մինչև 27 հեկտար և միջին գյուղացիությունը՝ 27—67 հեկտար հողատարածությամբ):

Կուբայում սոցիալիզմի կառուցման ներկա փուլի համար բնորոշ է այն փաստը, որ էկոնոմիկայի սոցիալիստական վերակառուցման արդեն ձեռք բերված խորությունը ամենևին միատեսակ չէ ժողովրդական տնտեսության տարբեր ոլորտների համար: Այն ժամանակ, երբ տնտեսության սոցիալիստական ձևերի բաժինը արդյունաբերության համախառն արտադրանքի մեջ, շինարարությունում, տրանսպորտում և առևտրում (մեծածախ և մանրածախ) 1971 թվականին հավասար էր 100 տոկոսի, գյուղատնտեսության մեջ սոցիալիստական ձևերին բաժին էր ընկնում գյուղատնտեսական հողատարածությունների և համախառն արտադրանքի մոտ 70 տոկոսը: Գյուղացիությանը սոցիալիստական շինարարության ոլորտը ներգրավելու ուղին կոոպերացիան է: Ինչպես սոցիալիստական մյուս երկրներում, Կուբայում ևս այդ պրոցեսը սկսվում է գյուղացիների կոոպերատիվ միավորման ամենապարզ ձևերից:

Սակայն, պետք է նշել, որ Կուբայի հեղափոխական կառավարությունն այժմ նպատակ չի դնում հանրայնացնել աշխատավոր գյուղացիության սեփականությունը, ինչպես այդ արվեց կուլակների դասակարգի նկատմամբ: Նըման դիրքորոշումը բացատրվում է ոչ այնքան տնտեսական պատճառներով (արտադրության համակենտրոնացման անբավարար մակարդակը), որքան քաղաքական նկատառումներով: Միաժամանակ, պետք է հաշվի առնել, որ նման միջոցառումը կարող էր լատինաամերիկյան մյուս երկրների գյուղացիության առանձին խավերի շրջանում որոշ անվստահություն սերմանել Կուբայի հեղափոխության նկատմամբ:

Այդ պատճառով էլ հեղափոխական կառավարությունը վարում է մանր գյուղացիությանը համակողմանի աջակցություն ցույց տալու, նը-

րան նոր հասարակարգի կառուցման մեջ ներգրավելու քաղաքականություն: Հաշվի առնելով, որ կուլակության վերացմամբ հակահեղափոխությունը գյուղում կորցրել է իր հենարանը, իսկ հեղափոխությունն ամրապնդել իր դիրքերը, և ելնելով բուն արտադրության ու քաղաքային բնակչության մատակարարման բարելավման շահերից, հեղափոխական կառավարությունը, գնման գների և նյութա-տեխնիկական մատակարարման միջոցով, ձգտում է ավելացնել մանր, մասնավոր սեկտորի գյուղատնտեսական արտադրանքը:

Կուբայի հեղափոխության կարևորագույն առանձնահատկությունն այն է, որ նա ցուցադրեց ընդհանուր դեմոկրատական վերափոխումների և երկրի տնտեսական ու հասարակական կարգը սոցիալիստական հիմքի վրա վերակառուցելու պատմական համատեղելիությունն ու անխզելիությունը:

Կուբայի հեղափոխության ազգային-դեմոկրատական փուլը ընդգրկում է 1959 թվականի հունվարից մինչև 1960 թվականի հոկտեմբերըն ընկած ժամանակաշրջանը, որի ընթացքում վերացվեց շահագործող դասակարգերի տիրապետությունը: Իշխանությունն անցավ աշխատավորների ձեռքը, որոնք ավարտեցին ազգային դեմոկրատական հեղափոխությունը, արմատախիլ արեցին հյուսիսամերիկյան իմպերիալիզմի և տեղական կալվածատիրական օլիգարխիայի տիրապետության տնտեսական հիմքերը, հիմնականում սեփականազրկեցին կապիտալիստների դասակարգին, դրանով իսկ ստեղծելով բոլոր անհրաժեշտ տնտեսական նախադրյալները՝ քաղաքում և գյուղում սոցիալիզմի հիմքերի պլանաչափ կառուցմանն անցնելու համար:

Երբ երկրի սոցիալ-տնտեսական ողջ կառուցվածքում ավարտվեցին արմատական վերափոխումները, հեղափոխական կառավարությունը, երկրի պայմանների և ձեռք բերված փորձի մանրազնին ուսումնասիրությունից հետո, 1963—1964 թթ. սահմանազլխին, առաջիկա 10—15 տարիների համար մշակեց սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման երկարաժամկետ ծրագիր:

Աստիճանաբար իրականացնելով նշված ծրագիրը, Կուբան էական հաջողությունների հասավ տնտեսական շինարարության բնագավառում: Շաքարի հումքի արտադրությունը 1970 թվականին հասավ ռեկորդային մակարդակի՝ ավելի քան 8,5 միլիոն տոննայի (նախորդ ինը տարում տարեկան միջին արտադրությունը կազմեց 5,5 միլիոն տոննա):

Անասնապահության և բուսաբուծության զարգացման համար նյութա-տեխնիկական կայուն բազա է ստեղծվում: Առանձնապես լայն պայմաններ են ստեղծվում բրնձի, սուրճի և ցիտրուսների մշակության համար:

Հիրավի, վիթխարի են հաջողությունները Կուբայի ժողովրդական տնտեսության այնպիսի խիստ կարևոր բնագավառում, ուր ժամանակակից խոշոր հիդրոմելիորատիվ կոմպլեքսներ են կառուցում: Բոլոր ջրամբարների ծավալն այնտեղ 1959 թվականին կազմում էր 29 միլիոն խորանարդ մետր, իսկ 1971 թվականի վերջին այն արդեն հասել էր 2180 միլիոն խորանարդ մետրի (Куба в цифрах, М., 1972, стр. 3): Ստեղծված կառույցները կայուն պատնեշ կդառնան ավերիչ ցիկլոնների և ուժեղ երաշտների դեմ, որոնք հաճախակի են լինում Կուբայում և մեծ վնաս են հասցնում նրա տնտեսությանը:

Զգալի հաջողություններ են ձեռք բերվել նաև նիկելի արդյունահանման, էլեկտրաէներգիայի արտադրության, սեփական մետալուրգիական ու մշակող արդյունաբերության զարգացման համար կայուն բազա ստեղծելու գործում, ինչպես նաև բնակարանային շինարարության ասպարեզում:

Կուբայի ժողովրդի պարծանքն է դարձել հեղափոխությունից հետո ստեղծված ժամանակակից ձկնորսական և առևտրական նավատորմը: Բավական է ասել, որ ներկայումս որսվող ձկան քանակն ավելի քան 6 անգամ գերազանցում է նախահեղափոխական մակարդակը և կազմում ավելի քան 126 հազար տոննա (նույն տեղը, էջ 53):

Կուբայի առևտրական նավատորմի անման տեմպերի մասին են վկայում հետևյալ տվյալները: Նրա բեռնատարողությունը 1970 թվականին հասնում էր 422 հազար տոննայի, որը 7,5 անգամ գերազանցում էր նախահեղափոխական մակարդակը (նույն տեղը, էջ 55): Այսօր դա իր մեծությամբ Լատինական Ամերիկայի հինգերորդ նավատորմն է: Իսկ առևտրական նավատորմի զարգացման տեմպերով Կուբան գրավում է առաջին տեղը ամերիկյան մայրցամաքում:

Սոցիալիստական Կուբայի համար բնորոշ է աշխատավորների ակտիվ մասնակցությունը ժողովրդական տնտեսության կառավարմանը: Ժողովրդական տնտեսության ղեկավարման տեղական ու կենտրոնական օրգաններում նշանակվում են բանվոր դասակարգի, գյուղացիության և ինտելիգենցիայի լավագույն ներկայացուցիչները: Ժողովրդական զանգվածները լայնորեն ու ակտիվորեն մասնակցում են հեղափոխական կառավարության միջոցառումների քննարկմանն ու կենսագործմանը: Դրա լավագույն օրինակն է աշխատանքային կարգապահության բարձրացման մասին օրենքների ընդունումը, որոնք քննարկվեցին հասարակական կազմակերպությունների բոլոր օղակներում և արժանացան համաժողովրդական հավանության:

Վերջին ժամանակներս Կուբայում առանձնապես լայնորեն է ծավալվել արհմիութենական շարժումը, որի մեջ ներգրավվում են աշխատավորների հսկայական զանգվածները: Որպեսզի արհմիությունները գործեն դեմոկրատական հիմունքներով, նրանց աշխատանքը լինի ավելի արդյունավետ ու ներգործուն, աշխատավորական լայն զանգվածների մասնակցությամբ ստեղծվում են աշխատավորների նոր կազմակերպություններ և վերակառուցվում են նախկինում գոյություն ունեցած միավորումները: Արհմիությունները զգալի գործ են կատարում աշխատանքի արտադրողականության բարձրացման, սոցիալիստական էկոնոմիկայի ստեղծման, աշխատավորների դաստիարակության ասպարեզում:

Հիրավի, վիթխարի են Կուբայի կոմունիստական կուսակցության և հեղափոխական կառավարության ձեռնարկած միջոցները, որոնց նպատակն է՝ բարձրացնել աշխատանքի արտադրողականությունը, հասարակական արտադրության արդյունավետությունը, ամրապնդել աշխատանքային կարգապահությունը և կատարելագործել ժողովրդական տնտեսության ղեկավարումը:

Հեղափոխության տարիներին զարգացել և ամրապնդվել է Կուբայի և Սովետական Միության ժողովուրդների բարեկամությունը, որը հիմնված է մարքսիզմ-լենինիզմի և պրոլետարական ինտերնացիոնալիզմի սկզբունքների վրա, զարգացել է նրանց համակողմանի համագործակցությունը: Կուբացիները բարձր են գնահատում Սովետական Միության օգնությունը նոր հասարակարգի կառուցման գործում: Սովետական մասնագետների առաջին խմբի՝ Կուբա ժամանելու 10-րդ տարեդարձի առթիվ Կուբայի հեղափոխական կառավարության ղեկավար Ֆիդել Կաստրոն կուսակցության և կառավարության անունից ամենաանկեղծ երախտագիտություն հայտնեց սովետական մարդկանց: «Իմպերիալիստական բլոկադայի դեմ մղված պայքարի տարիներին,— ասված է ողջույնի խոսքում,— կապիտալիստական շահագործման և ամերիկյան մոնոպոլիաների տիրապետությունից մեզ ժառանգություն մնաց տեխնիկական հետամնացությունն ու աղքատությունը: Դրանց հաղթահարման ընթացքում մեր ժողովրդի համար բացառիկ և վճռական նշանակություն ունեցան սովետական մասնագետների անձնուրաց աշխատանքն ու համեստությունը: Այդ ամենի համար մենք հավիտյանս շնորհակալ ենք լինելու սովետական քաղաքացիական ու զինվորական մասնագետներին, որոնք աշխատել են մեր երկրում»:

Սովետական Միությունը հետևողականորեն վարում է Կուբայի հանրապետության հետ բարեկամական հարաբերությունները զարգացնելու և ամրապնդելու կուրս՝ հանուն սոցիալիզմի, խաղաղության և առաջընթացի: Ինչպես ՍՄԿԿ XXIV համագումարում ասաց Լ. Ի. Բրեժնևը «Սովետական Միության և Կուբայի ժողովուրդները ընդհանուր պայքարում զինակիցներ են, նրանց բարեկամությունը անսասան է» (ՍՄԿԿ XXIV համագումարի նյութերը, էջ 12):

Սոցիալիստական երկրների հետ տնտեսական հարաբերությունների շնորհիվ Կուբան իր էկոնոմիկան պաշտպանում է իմպերիալիզմի տնտեսական դիվերսիաներից և ապահովում ազգային էկոնոմիկայի պլանային ու արագ զարգացման հնարավորությունը: Այդ հարաբերությունների միջոցով Կուբան կարողացավ հաղթահարել տնտեսական բլոկադայի հետ կապված լուրջ դժվարությունները:

Կուբայի և սոցիալիստական երկրների միջև բարեկամության ամրապնդման և նրանց տընտեսական համագործակցության ընդլայնման գործում կարևոր քաղաքական իրադարձություն էր Կուբայի կոմունիստական կուսակցության Կենտրոնական կոմիտեի առաջին քարտուղար, հեղափոխական կառավարության պրեմիեր-մինիստր Ֆիդել Կաստրոյի 1972 թըվականի հունիս-հուլիս ամիսների պաշտոնական այցելությունը Եվրոպայի սոցիալիստական երկրները:

Կուբայի նկատմամբ սովետական կառավարության վարած քաղաքականությունը ամեն կերպ նպաստում է երկու երկրների բարեկամական հարաբերությունների ամրապնդմանը և ընդլայնմանը, նրանց ժողովրդա-տնտեսական պլանների կոորդինացմանը, որի շնորհիվ ավելի է կատարելագործվում սովետա-կուբայական համագործակցությունը և հաջողությամբ են իրականացվում Կուբայի տնտեսական շինարարության խնդիրները:

Հոկտեմբերյան սոցիալիստական մեծ հեղափոխության 55-րդ տարեդարձի առթիվ Կուբայի հեղափոխական կառավարության ուղարկած շնորհավորական հեռագրում նշվում է. «Սովետական Միության եղբայրական և մեծահոգի օգնության շնորհիվ մեր ժողովուրդը հաղթահարում է դժվարությունները և հասնում հաջողությունների բոլոր բնագավառներում» («Պրավդա», 8-ը նոյեմբերի, 1972 թ.):

Բարձր գնահատելով Սովետական Միության

համակողմանի օգնությունը Կուբայի ժողովրդին, Ֆիդել Կաստրոն ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ Մոսկվայում կայացած հանդիսավոր նիստում արտասանած ճառում ասաց.

Հիսուն տարի առաջ ո՞վ կհավատար, որ Կուբայում կհաղթանակի հեղափոխությունը: Ո՞վ կհավատար այն ժամանակ, որ մեր փոքրիկ հայրենիքը Սովետական Միության առատաձեռն օգնության և համերաշխության շնորհիվ կդառնա սոցիալիստական առաջին պետությունը՝ Միացյալ Նահանգներից 90 մղոն հեռավորության վրա... Եթե չլիներ ՍՍՀՄ-ը, ամերիկյան իմպերիալիզմը անարգել կկատարեր ժանդարմի իր չարանենգ դերը: Մենք ուզում ենք կրկին ու կրկին նշել, որ Կուբան կարողացավ ետ մղել պատմության մեջ ամենահզոր իմպերիալիզմի հարձակումը ո՛չ միայն իր ժողովրդի կայունության, անձնազոհության ու վճռականության շնորհիվ, այլև Սովետական Միության անօրինակ համերաշխությամբ... Այս նշանավոր օրը կամենում ենք մի անգամ ևս ընդգծել, որ մենք հավերժ երախտապարտ ենք այդ համերաշխության համար, որը Լենինի մեծ հայրենիքի կողմից ցուցաբերած պրոլետարական ինտերնացիոնալիզմի դրսևորումն է:

1972 թվականի հուլիսի 11-ին Կուբան, դառնալով տնտեսական փոխօգնության խորհրդի անդամ, ընդգրկվեց սոցիալիստական տնտեսական ինտեգրացիայի պրոցեսի մեջ: Այս հանգամանքը, ինչպես նաև Կուբայի միջազգային դիրքերի ամրապնդումը և, մասնավորապես, Չիլիի և Պերուի հետ դիվանագիտական հարաբերությունների վերականգնումը, մեկ անգամ ևս բացահայտեցին ԱՄՆ-ի կողմից Կուբայի նկատմամբ վարած տնտեսական ու քաղաքական մեկուսացման քաղաքականության կրախը:

Արդեն 14 տարի է, ինչ Կուբայի հերոսական ժողովուրդը իրականացնում է սոցիալիզմի կառուցման իր պլանները: Այդ փառավոր պլանների իրականացումը է՛լ ավելի կամրապնդի սոցիալիզմի դիրքերը Կուբայում և ոգևորիչ օրինակ կծառայի Լատինական Ամերիկայի երկրների ժողովուրդների համար:

Ա. Դ. ԲԵԿԱՐԵՎԻՉ

ՍՍՀՄ ԳԱ Լատինական Ամերիկայի ինստիտուտի Կուբայի սեկտորի վարիչ, տնտեսական գիտությունների թեկնածու

Ռ. Խ. ՄԱԹԵՎՈՍՅԱՆ



ՀՈՒՇԱԳՐՈՒԹՅՈՒՆ

Ա. Ի. ՄԻԿՈՅԱՆ

# ՆԻԺՆԻ ՆՈՎԳՈՐՈԴՈՒՄ*

## ՆԱՀԱՆԳԳՈՐԾԿՈՄԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅԱՆ ԱՆԴԱՄ

*Նիժնիում անցկացրած կյանքիս առաջին շաբաթների իմ տրամադրությունը դժվար չէ պատկերացնել, ծանոթանալով իմ այն նամակի թեկուզ մի հատվածին, որ 1920 թվականի հոկտեմբերի 14-ին ուղարկել եմ Մոսկվա՝ Ստեփան Շահումյանի այրի Եկատերինա Սերգեևնային[1]:*

*«Ինչպես և պետք էր սպասել,— հայտնում էի այդ նամակում,— այստեղի «վերնախավերն» իսկույն քողարկված-թշնամական դիրք գրավեցին իմ նկատմամբ՝ որպես «նշանակված գեներալի», որն ուզում է «կարգադրություններ անել» իրենց գլխին:*

*Եվ, ընդհանուր առմամբ, ստեղծվել է շատ տհաճ, հիմար իրադրություն... Առաջին օրերն ինձ ոչ մի աշխատանք չէին տալիս և տասնօրյա մտորումներից հետո, օգտվելով նշանակովիության վերաբերյալ համառուսաստանյան վերջին կոնֆերանսի որոշումներից, հակառակ Կենտկոմի որոշման, վճռեցին ինձ խցկել մի այնպիսի տեղ, որտեղ չկարողանամ ազդել և ղեկավարել կուսակցական աշխատանքը:*

*Նրանք ինձ նշանակել են նահանգգործկոմի նախագահությունում: Եվ եթե ես ամբողջ տասն օր գրեթե ոչ մի աշխատանք չունեի, ապա վերջին երկու-երեք օրում երևան են եկել շատ գործեր. ինձ տվել են նահանգգործկոմի ամենակարևոր և դժվարին բաժինները— նահանգային ժողտնտխորհը, նահանգային ֆինանսական, պարենավորման ու հողային բաժինները և ամեն տեսակ նահանգանտառկոմիտեներ, կինկոմիտեներ, նահանգային վառելիքային կոմիտեներ և այլն:*

*Աշխատում եմ, տեսնենք, թե դրանից ինչ դուրս կգա»:*

*Հիշում եմ, որ ինձ հանձնեցին նաև նահանգային թերթի ղեկավարությունը, հանձնարարեցին անցկացնել «ռազմաճակատին օգնելու» կամպանիան, իսկ նոյեմբերի սկզբին նշանակեցին նահանգկոմի ագիտպրոպբաժնի վարիչ, ինձ վրա դնելով նաև երիտասարդության միության և ազգային բաժնի ղեկավարությունը:*

*Ինձ առաջարկված ոչ մի պարտականությունից չէի հրաժարվում, միայն զարմանում էի, թե ի՞նչ մարդ է Խանովը: Գործկոմի աշխատանքի բոլոր տնտեսական ճյուղերը նա բարդեց իմ ուսին: Արտակարգ հանձնաժողովի և նահանգային զինկոմիսարիատի աշխատանքն անմիջականորեն ղեկավարում էր նահանգկոմի բյուրոն: Կրթության բաժինը գլխավորում էր նահանգկոմի անդամ Տագանովը. նա ուսուցիչ էր և լավ գիտեր իր գործը: Իսկ իրեն՝ Խանովին պրակտիկ գործեր, ըստ էության, չէին մնում:*

*Ես այն ժամանակ ենթադրում էի, որ նա ծանրաբեռնում է ինձ կա՛մ նրա համար, որպեսզի քավության նոխազ ունենա աշխատանքում հնարավոր թերություններ հայտաբերվելու դեպքում, կա՛մ իր ծուլության պատճառով (ինչի մասին լուրեր էին պտտում), գուցե և այդ երկու պատճառները միասին վերցրած: Հավանորեն, հենց այդպես էր իրականում...*

*Ոնց էլ լիներ, բայց ես, ինչպես ասում են,*

* Սկիզբը տես «Լենինյան ուղիով» № № 11, 12, 1972 թ.:

1 Ինձ համար հաճելի է նշել, որ այդ նամակը մի քանի տասնյակ տարի խնամքով պահպանել է Եկատերինա Սերգեևնան. Շահումյանների ընտանիքն այն վերադարձրել է ինձ 1971 թվականին: Իմ յոթանասունամյակի օրը Շահումյանի որդին՝ Սերգեյը, այդ նամակը նվիրեց ինձ, դրանով իսկ մեծ ուրախություն պատճառելով:

միասնական «սոցիալիստական» ճակատի մասին, կառավարության մեջ «սոցիալիստական» խմբերի ներկայացուցիչների մտնելու մասին. գուցե որևէ մեկը կասի՞, թե դրանք ինչ կարմիրբանակային ճառեր են։ Նույնիսկ քաղաքականապես բացարձակ անգրագետ մարդը կճանաչի էսեռա-մենշևիկյան ավանակի երկար ականջները»։

Սակայն ընդհանուր մթնոլորտը կոնֆերանսում արդեն այնպես շիկացած չէր, ինչպես առաջին օրը։ Ուրախացնում էին մի քանի լավ, գործարար ելույթներ, որոնցում կոնկրետ առաջարկներ էին լինում կարմիրբանակայինների կենցաղի ու կենսապայմանների բարելավման մասին։ Ելույթ ունեցողների մեջ կային նաև բանվորներ, որոնք հայտնում էին իրենց տպավորությունները զորանոցներն այցելելու և կարմիրբանակայինների կենցաղը բարելավելու համար ձեռնարկված միջոցների վերաբերյալ։

Կոնֆերանսի պատգամավորների մեծ մասի հայացքներում արդեն որոշակի բեկում էր սկսվել։ Մենք որոշեցինք արտահայտվելու հնարավորություն տալ բոլոր նրանց, ովքեր ուզում էին հանդես գալ. այդ, անշուշտ, որոշ չափով հանգստացրեց մարդկանց։

Նիստը շարունակվեց մի քանի ժամ։

Երբ բոլորն իրենց ասելիքն սպառեցին, ելույթ ունեցավ Իշչենկոն։ Նա կոնֆերանսին հաղորդեց Համառուսաստանյան կենտրոնական գործադիր կոմիտեի ողջույնը, իսկ հետո պատմեց հանրապետության քաղաքական ու ռազմական դրության մասին։

Վերջում նա հայտարարեց. «Թանկագի՛ն ընկերներ։ Խոստանում եմ ձեզ կոնֆերանսի պատգամավորների բոլոր ասածները հաղորդել Համառուսաստանյան Կենտգործկոմին, որն շտապ կարգով միջոցներ կձեռնարկի աղաղակող այլանդակություններին վերջ տալու և մեղավորներին պատժելու համար։ Հավաստիացնում եմ կոնֆերանսին, որ կարմիր բանակի և ողջ աշխատավոր ժողովրդի կարիքները մոտ են սովետական իշխանությանը և նրա բարձրագույն օրգաններին՝ Համառուսաստանյան ԿԳԿ-ին ու Ժողկոմսովետին»։

Երբ դադարեցին միահամուռ ծափահարությունները, նա առաջարկեց պատգամավորներին ընդունել նոր բանաձև այն բանաձևի փոխարեն, որը հանձնարարում էր «թշնամիների դեմ պայքար մղել խոսքով և ոչ թե զենքով»։

Իշչենկոյի ճառից հետո կոնֆերանսի պատգամավորների տրամադրության վաղ սկսված բեկումն ավելի ուժգնացավ. Նրանից հետո հանդես եկած հռետորները քննադատեցին նախկին բանաձևը և պաշտպանեցին նորն ընդունելու վերաբերյալ Իշչենկոյի առաջարկությունը։ Մենք չէինք թաքցնում մեր ուրախությունը և ծափահարում էինք յուրաքանչյուր այդպիսի հռետորի։ Իսկ օթյակներից, որտեղ նստած էին հակակոմունիստորեն տրամադրված պարապլուխները, լսվում էին թշնամական բացականչություններ, սուլոց։

Երբ ձեռնամուխ եղանք նոր բանաձևի քվեարկությանը, դահլիճի մի անկյունից նախագահությունն ստացավ անստորագիր մի գրություն՝ բացահայտ էսեռական բնույթի ուղղումներով։

Կարմիր բանակայիններն աղմկեցին. «Ո՞վ է առաջարկում։ Թո՛ղ բեմ դուրս գա»։

Եվ այն ժամանակ նախագահության սեղանի մոտ հայտնվեց մի մարդ, որի սոսկ տեսքը վճռեց «մենամարտի» ելքը։ Սովահար, ցնցոտիավոր մարդկանց առաջ կանգնած էր ոմն սուբյեկտ՝ գլխարկով և կրկնակոշիկներով։ Նրան թույլ չտվին ոչ մի խոսք ասել, լսվեցին սուլոց ու գոչյուններ՝ «Դո՛ւրս կորի։ Հանի՛ր գլխարկդ։ Դե՛ն նետիր կրկնակոշիկներդ»։

Ձայների զգալի մեծամասնությամբ մերժեցին այդ սուբյեկտի ուղղումը և ընդունեցին առաջարկված բանաձևը (դժբախտաբար, այն չի պահպանվել)։

Կոնֆերանսն ավարտվեց ուշ գիշերին «Ինտերնացիոնալ» երգելով։ Զախողված խռովարարների պարապլուխները հիմնը երգելու ժամանակ ցուցադրաբար նստել էին գլխարկներով, աղմկում ու սուլում էին։

...Այդ օրը մենք հաղթեցինք, բայց չէր կարելի հանգստանալ. դեռ չափազանց շատ բան պետք էր անել՝ դրությունը կայազորում ինչպես հարկն է նորմալացնելու համար։

Այդ պայմաններում իրենց որպես սովետական իշխանության հավատարիմ ջոկատ դրսևորեցին բանվորա-գյուղացիական կարմիր բանակի հրամկազմի նիժնինովգորոդյան հետևակային դասընթացները, որոնք կազմակերպվել էին Վ. Ի. Լենինի ցուցումով։ Այդ տագնապալի օրերին ու գիշերներին կուրսանտները չեկիստների հետ միասին պաշտպանում էին Նիժնի Նովգորոդի միջնաբերդը։ Կատարելով նահանգկոմի ցուցումը, նրանք օգնում էին քաղաքը հակահեղափոխական ակտիվ տարրերից մաքրելու գործին, օր ու գիշեր պարեկություն անում փողոցներում։

Հոկտեմբերյան հեղափոխության եռամյակի տոնի նախօրյակին նահանգկոմն ինձ ուղարկեց կուրսանտների մոտ՝ նահանգում և կայազորում տիրող դրության մասին զեկուցելու։

Ինձ անկեղծորեն ուրախացրեց այն, որ կարմիր բանակի ապագա հրամանատարները ճիշտ էին հասկանում Նիժնիում ստեղծված իրադրությունը։ Մեր ժողովի վերջում նրանք պատրաստեցին հետևյալ կոչը, որով դիմեցին կայազորի բոլոր զորքերին.

«Մենք՝ հրամկազմի նիժնինովգորոդյան հետևակային դասընթացների կուրսանտներս, հայտարարում ենք, որ Վրանգելի դեմ մղվող զինված պայքարը դադարեցնելու պահանջը հակահեղափոխական պահանջ է։ Դա դավաճանական հարված է աշխատավոր ժողովրդի քաջարի պաշտպանների՝ եղբայր-կարմիրբանակայինների թիկունքին, որոնք արյուն են թափում դաժան թշնամիների դեմ մղվող պայքարի ճակատներում։

Սովետական ու կուսակցական կազմակերպություններից պահանջելով ամենաուշադիր վերաբերմունք կարմիրբանակայինների կարիքների նկատմամբ, դրա հետ մեկտեղ մենք կոչ ենք անում հեղափոխության բոլոր ազնիվ զինվորներին, կարմիրբանակայիններին, բանվորներին ու գյուղացիներին՝ անձնատուր չլինել բուրժուազիայի ծպտյալ գործակալների հորդորներին և ավելի խտացնել շարքերը մեր վերջին թշնամու՝ սև բարոն Վրանգելի դեմ անողոք պայքար մղելու համար»։

Կոչը քննարկվեց կայազորի զորամասերում տեղի ունեցած միտինգներում, որոնց մասնակցում էին կուրսանտները, և դա նպաստեց կարգապահության կարգավորմանը զորամասերում։

Մի քանի ամիս անց կուրսանտները նորից գործով ապացուցեցին իրենց նվիրվածությունը հեղափոխության շահերին. Նիժնինովգորոդյան դասընթացների 4-րդ վաշտը, որ կանչվել էր Պետրոգրադ, հաջողությամբ մասնակցեց Կրոնշտադտի հակահեղափոխական խռովության ճնշմանը։

(Շարունակելի)

Թարգմ.՝ Վ. Գ. ԱՎԱԳՅԱՆԸ



# ՄԵՐ ՀՐԱՏԱՐԱԿՈՒՄՆԵՐԸ

## ՆՈՐ ԷՋԵՐ ՍՈՒՐԵՆ ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ԿՅԱՆՔԻՑ ՈՒ ԳՈՐԾՈՒՆԵՈՒԹՅՈՒՆԻՑ

Վ. Ա. ԱՎԵՏԻՍՅԱՆ



1972 թվականի դեկտեմբերի 15-ին լրացավ բոլշևիկյան կուսակցության ականավոր գործիչ Սուրեն Սպանդարյանի ծննդյան 90-ամյակը։

1901 թվականին մտնելով ՌՍԴԲԿ շարքերը, Ս. Սպանդարյանը հեղափոխական բուռն գործունեություն ծավալեց։ Նա մասնակցեց 1905 թվականի Մոսկվայի դեկտեմբերյան ապստամբությանը, այնուհետև, որպես պրոֆեսիոնալ հեղափոխական, գործեց Անդրկովկասի, գլխավորապես Թիֆլիսի ու Բաքվի բոլշևիկյան ընդհատակում։ 1906 թվականին Սպանդարյանը, Ստ. Շահումյանի հետ, գլխավորեց Ալավերդու հանքագործների խոշոր գործադուլը։ Նա ականավոր հրապարակախոս էր, ժուռնալիստ, հռետոր, լենինյան գաղափարների կրակոտ պրոպագանդիստ։ Անդրկովկասում համարյա չկա բոլշևիկյան մի թերթ, որին Սպանդարյանը աշխատակցած և ղեկավարած չլինի։ Մասնակցելով կուսակցության համառուսաստանյան մի շարք կոնֆերանսների ու խորհրդակցությունների, նա աչքի էր ընկել իր ակտիվությամբ և արժանացել Վ. Ի. Լենինի վստահությանը, որի հավատարիմ ու հետևողական աշակերտն էր նա։ Վ. Ի. Լենինը բարձր է գնահատել Սպանդարյանի ծառայությունները կուսակցության հանդեպ, նրան համարելով «նշանավոր հեղափոխական»։ «Ես և կուսակցության կենտրոնի բոլոր աշխատողները Սուրեն Սպանդարյանին ճանաչում էինք 1908—1909 թվականներին։ Շատ գնահատելի և աչքի ընկնող աշխատող էր» (Երկեր, հ. 45, էջ 159)։

1912 թվականի հունվարին «Համակուսակցական VI» («Պրագայի») կոնֆերանսում Սպանդարյանն ընտրվեց կուսակցության Կենտկոմի և Կենտկոմի ռուսական բյուրոյի անդամ։ Կոնֆերանսի ավարտից հետո նա Վ. Ի. Լենինի հետ այցելեց Լայպցիգ, Բեռլին, ապա Փարիզ, որից հետո վերադարձավ Ռուսաստան։ Ռիգայում, Պետերբուրգում, Մոսկվայում, Թիֆլիսում և Բաքվում կայացած կուսակցական գաղտնի ժողովներում նա զեկուցեց Պրագայի կոնֆերանսի արդյունքների մասին, Ե. Ստասովայի հետ կազմակերպեց կոնֆերանսի նյութերի և Կենտկոմի թռուցիկների տպագրությունը։



Սպանդարյանը բազմիցս ձերբակալվել է և աքսորվել։ Վերջին անգամ նա ձերբակալվեց և Մետեխի բերդը նետվեց 1912 թվականի հունիսին։ 1913 թվականին նա Ե. Ստասովայի, Վ. Շվեյցերի, Վ. Խաչատրյանի, Ա. Հովյանի և ուրիշների հետ ցարական դատարանի կողմից դատապարտվեց ցմահ աքսորի։ Իր աքսորավայրից՝ Տուրուխանսկի երկրամասի Մոնաստիրոկոյե գյուղից, Սպանդարյանը նամակագրություն ուներ Վ. Ի. Լենինի, Ն. Կ. Կրուպսկայայի, Ս. Գ. Շահումյանի հետ։ Չնայած աքսորի դաժան պայմաններին և ծանր հիվանդությանը, նա մնաց աներեր իր հեղափոխական դիրքերում և հավատարիմ՝ պրոլետարական ինտերնացիոնալիզմին, մարքսիզմ-լենինիզմին։ Սպանդարյանը վախճանվեց աքսորում, 1916 թվականի սեպտեմբերի 24-ին, երեսունչորս տարեկան հասակում։

Ականավոր հեղափոխականի և հրապարակախոսի գրական ժառանգությունը ըստ ամենայնի հրատարակել է Հայաստանի կոմունիստական կուսակցության պատմության ինստիտուտը։ Լույս են ընծայվել Սպանդարյանի կյանքին և գործունեությանը նվիրված մի շարք աշխատություններ։

Ստորև հրապարակում ենք Սպանդարյանի գործունեությանը վերաբերող նյութեր, որոնք տեղ չեն գտել նրա երկերի ժողովածուներում։

I ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ «Սև-քաղաքի շրջան» հոդվածն է, որ լույս է տեսել «Լ.» ստորագրությամբ Բաքվի բոլշևիկյան «Բակինսկի պրոլետարի» անլեգալ թերթի 1907 թվականի հունիսի 20-ի համարում (№ 1)։ Հոդվածը վերաբերում է Ս. Սպանդարյանի գործունեությանը Բաքվում, ուր նա 1907 թ. հունվարից, բոլշևիկյան Կովկասյան մարզային կենտրոնի որոշմամբ, փոխադրված էր ընդհատակյա աշխատանքի։ Այդ ժամանակ Բաքվի սոցիալ-դեմոկրատական կազմակերպության ղեկավարության մեջ գերակշիռ դիրք էին գրավել մենշևիկները։ Նրանց ձեռքում էր գտնվում ՌՍԴԲԿ Բաքվի քաղաքային գործադիր կոմիտեն։ Սպանդարյանը աշխատանքի անցավ Սև-քաղաքի շրջանում, որպես այնտեղի կուսակցական կազմակերպիչ։ Նրան հաջողվեց թուլացնել Սև-քաղաքում մենշևիկների ազդեցությունը, դուրս մղել նրանց շրջանի ղեկավարությունից։ Սակայն 1907 թ. մայիսի 5-ին, մի խումբ այլ բոլշևիկների հետ, Լուարսար Յաշվիլի կեղծ անվան տակ ձերբակալեցին Ս. Սպանդարյանին և 20 օր պահեցին բանտում։ Դրա համար էլ, ինչպես գրված է հոդվածում «Սև-քաղաքի շրջանում որոշ պատճառներով ընդհատվել էր կանոնավոր կազմակերպչական աշխատանքը»։ «Ժամանակավոր բացակայությունից» հետո (հոդվածի խոսքերն են) Սպանդարյանը դարձյալ շարունակեց իր գործունեությունը Սև-քաղաքում։ Նա միաժամանակ կազմակերպեց «Բակինսկի պրոլետարի» թերթի լույս ընծայումը, որի խմբագիրներից մեկն էր ինքը։ Այս հոդվածը հավանաբար Ս. Սպանդարյանն է գրել. «Լ.» ստորագրությունը գուցե «Լուարսար» անվան հետ է կապված։ Բոլոր դեպքերում հոդվածը լուսաբանում է Ս. Սպանդարյանի գործունեությունը, որպես Սև-քաղաքի կազմակերպչի։

II ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության մարտական դրուժինայի շտաբի հաղորդումն է բնակչությանը ահաբեկող խուլիգանների «Թռուցիկ ջոկատի» ձերբակալման մասին. տպագրելու համար այն ուղարկված էր «Ռյադավոյ» թերթին։ Փաստաթուղթը գրված է Ս. Սպանդարյանի ձեռքով (տե՛ս լուսանկարի պատճեն), ըստ երևույթին, 1907 թվականին։ Հայտնի է, որ 1907—1908 թթ., հեղափոխության անկման շրջանում, Բաքվում, Թիֆլիսում և Անդրկովկասի այլ քաղաքներում իրենց գործունեությունն աշխուժացրին անարխիստական զանազան խմբեր, որոնք ո՛չ միայն տեսականորեն պրոպագանդում էին անարխիզմի ուսմունքը, այլև գործնականում լայնորեն դիմում էին տեռորի, սպանությունների և կողոպուտների, ու դրանք ներկայացնում էին որպես պայքար կապիտալիստների դեմ։ Դրանից օգտվում էին ամեն կարգի բախտախնդիրներն ու կողոպտիչները։ Բռնության և կողոպուտի վարդապետությունը և պրակտիկան խիստ բացասաբար էր անդրադառնում բանվորների գիտակից, կազմակերպված հեղափոխական պայքարի վրա։ Բոլշևիկներն ամենավճռական պայքար հայտարարեցին բանվորների դասակարգային գիտակցությունը մթագնող և նրա հեղափոխական շարժումը կազմալուծող անարխիստների դեմ։

Ս. Սպանդարյանն այդ թվականներին նույնպես հանդես եկավ մի շարք հոդվածներով՝ անարխիստների ահաբեկիչ ու կողոպտիչ գործողությունների դեմ։ 1907 թ. փետրվարի 10-ին «Օրեր» թերթում (հրատարակվում էր Բաքվում) նա տպագրեց հատուկ հոդված՝ «Կազմակերպությո՞ւն, թե բռնի ուժ» խորագրով, որի մեջ նշավակում էր անարխիզմի տեսությունն ու պրակտիկան, ցույց տալիս դրանց վնասակարությունը բանվորական շարժման համար։ «Իսկական բանվորական քաղաքականությունը, ճշմարիտ դասակարգային կռիվը,— գրում էր նա այդ հոդվածում,— հեռու է այդպիսի վայրենի միջոցներից, հեռու սպանություններից ու կողոպուտներից» (Երկեր, հ. 1, Երևան, 1959, էջ 147)։

Բաքվի կոմիտեն (որի ակտիվ անդամներից էր Ս. Սպանդարյանը 1907—1909 թթ.) ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության «մարտական դրու-

ժինան» (որն ստեղծվել էր հեղափոխության շրջանում զինված ապստամբության նպատակով) օգտագործում էր տեռոր ու կողոպուտ կատարող խմբերի սանձարձերծման համար։

III ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ Ս—Ս-յան ստորագրությամբ «Բակինսկոյե էխոում» (1908, հունվարի 22, № 18) տպագրված «Օրվա հարցեր» վերնագրով հոդվածն է։ Մենք հավանական ենք համարում, որ դա գրել է Ս. Սպանդարյանը։ С—С-ЯН ստորագրությամբ նա գրել է հոդվածներ 1908 թ. «Գուդոկ» թերթում (նույնպես Բաքվում լույս տեսնող)։ Վերոհիշյալ հոդվածում շոշափվում է նույն անարխիստական, տեռորիստական գործողությունների դեմ պայքարի հարցը։ Հոդվածը կրում է լեգալ մամուլի կնիքը, թեև այնտեղ դարձյալ վճռականորեն դատապարտվում են «կոմունիստ անարխիստները» և «տեռորիստ անարխիստները»։ Այն համահնչուն է Սպանդարյանի նույն թեմային նվիրված այլ հոդվածներին։

IV ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ Ս. Սպանդարյանի ելույթն է նավթարդյունաբերական բանվորների լիազորների երկրորդ ժողովում՝ 1908 թ. ապրիլի 6-ին, որը համառոտակի տպագրվում է Բաքվում լույս տեսնող «Անիվ» լեգալ շաբաթաթերթում։ Նավթարդյունաբերական բանվորների լիազորների խորհուրդը Բաքվում բազմիցս նիստեր ունեցավ, ուր քննարկվեց նավթարդյունաբերողների հետ կոլեկտիվ պայմանագրի կնքման համար խորհրդակցություն գումարելու հարցը, մշակվեց այդ առթիվ նավթարդյունաբերողներին ներկայացվելիք բանվորների պահանջները։

Առաջին ժողովը տեղի ունեցավ 1908 թ. մարտի 30-ին (հ. տ.), ապա՝ ապրիլի 6-ին, 10-ին, 26-ին, 29-ին։ Լիազորների ժողովներին մասնակցում էին բանվորական շարժման ներսում գործող տարբեր կուսակցություններ։ Խորհրդակցության հարցի շուրջը դրսևորվեցին երեք հիմնական հոսանք՝ ա) մասնակցել խորհրդակցությանը բանվորական երաշխիքներով կամ ոչ մի խորհրդակցություն, բ) անպայման մասնակցել խորհրդակցությանը, գ) չմասնակցել խորհրդակցությանը, անպայման բոյկոտի ենթարկել այն։ Առաջին տեսակետը պաշտպանում էին բոլշևիկները։ Նրանք համաձայն էին նավթարդյունաբերողների հետ խորհրդակցության գնալ միայն այն պայմանով, եթե բանվորներին տրվեին երաշխիքներ՝ 1. ազատ քննարկելու իրենց պահանջները, 2. գումարելու բանվորական լիազորների խորհուրդ, 3. օգտվելու իրենց միությունների ծառայություններից, 4. ընտրելու խորհրդակցության բացման պահը, 5. կնքելու մի ընդհանուր կոլեկտիվ պայմանագիր նավթարդյունաբերական բանվորների հետ։

Առաջադրելով նավթարդյունաբերողների հետ խորհրդակցության գնալու այս նախնական պայմանները (երաշխիքները), բոլշևիկները ձգտում էին բանվորներին է՛լ ավելի համախմբել իրենց միությունների շուրջը, ամրապնդել նրանց միասնությունը և խորհրդակցությունը ռեակցիայի պայմաններում վերածել ցարիզմի ու բուրժուազիայի դեմ պայքարի զենքի։ «Առանց որևէ երաշխիքի խորհրդակցությանը մասնակցելու» տեսակետը պաշտպանում էին մենշևիկները, իսկ բոյկոտինը՝ սոցիալիստ հեղափոխականները և դաշնակցականները։

Բաքվի բանվորների ճնշող մեծամասնությունը հավանություն տվեց բոլշևիկների տակտիկային։ Բանվորական լիազորների խորհուրդը, իր ժողովներում քննարկելով կապիտալիստներին ներկայացվելիք պահանջները, մեծամասնությամբ (199 հոգի) ձայն տվեց բոլշևիկների առաջարկին (խորհրդակցության երաշխիքներով), բոյկոտի առաջարկի օգտին քվեարկեցին 124 հոգի։ Բոյկոտիստները (սոց. հեղափոխականներ և դաշնակցականներ) ձախողվելով՝ հեռացան խորհրդի նիստերից։

Ս. Սպանդարյանը խորհրդակցական կամպանիայի ընթացքում՝ ակտիվ պաշտպանում էր բոլշևիկյան տակտիկան։ Մենշևիկյան և էսեռա-դաշնակցական տակտիկայի հիմնավոր քննադատությունը նա տվել է իր մի շարք հոդվածներում, որոնք տպագրվել են «Գուդոկ» թերթում («Դրժողների ողբը», «Մեղավորների որոնումները» և մանավանդ՝ «Երեք հոսանք» հոդվածում, տե՛ս Երկեր, հ. I)։ Սպանդարյանը դրանցում ցույց տվեց, որ մենշևիկների տեսակետը՝ անպայման մասնակցել խորհրդակցությանը, «համաձայնությունների ու կոմպրոմիսների, գործարքների ու չարչիության քաղաքականություն է», իսկ «ձախ» «հեղափոխական» ֆրազներով քողարկված սոց. հեղափոխականների և դաշնակների տեսակետը՝ անպայման բոյկոտ, «թեթևամիտ, ավանտյուրիստական», բանվորական շարժման հետ կապ չունեցող քաղաքականություն է։ Խոսելով բոյկոտիստների մասին Սպանդարյանը գրում էր.

«Նախընտրական կամպանիայի ժամանակ նրանք հանդես էին գալիս «աշխատանքի և կապիտալի շահերի անհաշտելիությունն ապացուցող» ճառերով, «տնտեսական ընդհանուր ապստամբության» վերաբերյալ ամպագորգոռ ֆրազներով։ Ապարդյուն էին այն մատնանշումները, թե ոչ ոք չի էլ մտածում հաշտեցնել անհաշտելին, իզուր էին նրանց այն բանում համոզելու փորձերը, թե դասակարգային պայքարը միմիայն «ապստամբություն» չէ, թե բանվորական շարժումը զինի կապիտալիզմի դեմ մղվող պայքարի զանազան ձևեր, այս կամ այն ձևի կիրառումը կախված է այն պայմաններն ըմբռնելուց, որոնց մեջ տվյալ պահին գտնվում են բանվորները։ Ցույց պայմանները թելադրում են պայքարի պարտիզանական, մասնակի ելույթների ձևը, ցույց ավելի ձեռնտու է բուրժուական ամրոցների տևական պաշարումը, բլոկադան և ոչ թե շտուրմը, մասսայական գրոհը։ Պետք է ըմբռնել այս բոլոր հարցերը, պետք է լրջորեն քննարկել ու կշռադատել յուրաքանչյուր քայլը և ոչ թե երկրպագել պայքարի միակ և սրբագործված ձևը՝ «տնտեսական ապստամբությունը»» (Երկեր, հ. I, էջ 184)։

Բաքվի բանվորական լիազորների ապրիլի 6-ի ժողովում Սպանդարյանի (Տիմոֆեյի) ելույթը, ինչպես տեսնում ենք, ուղղված է բոյկոտիստների (դաշնակցականների և սոց. հեղափոխականների) դեմ, ի պաշտպանություն «երաշխիքներով խորհրդակցություն» բոլշևիկյան տակտիկայի։

V ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ Ս. Սպանդարյանի նամակն է՝ գրված Ռոստով, Վերա Լազարևնա Շվեյցերին (1887—1950)։ Վ. Լ. Շվեյցերը բոլշևիկ էր 1905 թ.։ Նա գործել է Պետերբուրգում, Ռոստովում, Թիֆլիսում և Բաքվում։ Նամակը գրված է 1911 թ. դեկտեմբերի 29-ին, Պետերբուրգից, ուր Սպանդարյանը մեկնել էր VI համակուսակցական (Պրագայի) կոնֆերանսի նախապատրաստման համար, որպես Ռուսաստանյան կազմակերպչական հանձնաժողովի (ՌԿՀ) անդամ։ Այդ հարցում Պետրոգրադում Սպանդարյանին օգնում էր Վ. Շվեյցերը, որը դեկտեմբերին մեկնեց Ռոստով։ Նամակում հիշատակվող Նադ. Կոն.— Նադեժդա Կոնստանտինովնա Կրուպսկայան է։ Նա նամակով պահանջել էր Սպանդարյանից շտապ մեկնել Պրագա, մասնակցելու VI կոնֆերանսին, որպես ՌԿՀ անդամ և Բաքվի սոց.-դեմ. կազմակերպության պատգամավոր։ Սպանդարյանը, ինչպես երևում է, դրամական միջոցների սղության պատճառով, չի կարողանում անհապաղ մեկնել։ Սոսոն— Ի. Վ. Ստալինն է։ Նա գտնվում էր Պետերբուրգի բանտում և 1911 թ. դեկտեմբերի 14-ին աքսորվեց Վոլոգդա։ Նիկ. Գրիգորևը, ըստ երևույթին, պետական III դումայի անդամ, բոլշևիկ Ն. Գ. Պոլետաևն է։ Դանուշը՝ 1902 թ. ՌՍԴԲԿ անդամ Դանուշ Շահվերդյանն է։ Վ. Շվեյցերը 1912 թ. ձերբակալվել և Ս. Սպանդարյանի, Ե. Ստասովայի և ուրիշների հետ 1913 թվականին դատապարտվել էր ցմահ աքսորի՝ Սիբիր։

VI ՓԱՍՏԱԹՈՒՂԹԸ 1912 թ. Պրագայի կոնֆերանսից հետո Ս. Սպանդարյանի գրած ՌՍԴԲԿ Կենտկոմի մի նամակն է, որը, ըստ երևույթին, ուղղված է Կ. Կաուցկուն։ Այդ ժամանակ Ս. Սպանդարյանը, որպես Կենտկոմի անդամ, Վ. Ի. Լենինի հանձնարարությամբ բանակցություններ էր վարում «պահողների» (держатели) հետ ՌՍԴԲԿ միջոցները Պրագայի կոնֆերանսում ընտրված Կենտկոմին հանձնելու մասին։ Դա անհրաժեշտ էր մանավանդ IV պետական դումայի նախընտրական կամպանիայի ծավալման համար։ «Պահողները» գերմանական սոցիալ-դեմոկրատական կուսակցության ներկայացուցիչներ Կ. Կաուցկին, Կ. Ցետկինը և Ֆ. Մերինգն էին, որոնց, Կենտկոմի 1910 թ. հունվարյան պլենումի որոշմամբ, ժամանակավորապես պահ էին տրվել ՌՍԴԲԿ միջոցները։ «Պահողները» պարտավորվել էին բոլշևիկներին պատկանող գումարները անհապաղ վերադարձնել, եթե լիկվիդատորներն ու օտզովիստները չարձակեին իրենց ֆրակցիաները։ Սակայն վերջիններս չկատարեցին հիշյալ պայմանը, շարունակեցին պահպանել իրենց ֆրակցիոն կենտրոններն ու օրգանները, ուստի, բոլշևիկները «պահողներից» պահանջեցին վերադարձնել իրենց պատկանող գումարները։ Բայց Կ. Կաուցկին, որը պաշտպանում էր լիկվիդատորներին, դիմադրում էր բոլշևիկների օրինական պահանջին։

Կուսակցության Պրագայի կոնֆերանսը հատուկ որոշում ընդունեց «Նախկին պահողի» ձեռքում գտնվող գույքի ու դրամական հաշվետվությունների մասին», որով հանձնարարում էր նորընտիր Կենտկոմին՝ անհապաղ միջոցներ ձեռք առնել գումարները «պահողներից» ետ ստանալու համար։

Պրագայի կոնֆերանսի վերոհիշյալ որոշման համաձայն, Ս. Սպանդարյանը, Ն. Պոլետաևը և Օ. Պյատնիցկին Կ. Կաուցկու հետ Բեռլինում բանակցություններ վարեցին։ Բանակցությունների ընթացքին հետևելու համար Բեռլին ժամանեց նաև Վ. Ի. Լենինը։ Բանակցությունները բավական երկար տևեցին։ Կաուցկին հրաժարվում էր վերադարձնել բոլշևիկներին պատկանող գումարները։

Ն. Գ. Պոլետաևը իր հիշողություններում այսպես է նկարագրել այդ հանդիպումը.

«Կաուցկին ինձ և ինձ հետ եկած կովկասցի ընկերոջը (Ն. Պոլետաևը նկատի ունի Ս. Սպանդարյանին) ընդունեց շատ սիրալիր, խոսեցինք Ռուսաստանի, դումայի ս.-դ. ֆրակցիայի մասին, բայց հենց որ շոշափվեց գումարների հարցը, խոսակցությունը բարձր տոն ընդունեց, առանձնապես տաքանում էր կովկասցի ընկերը։ Տեսնելով, որ այդ բանակցությունները ոչ մի արդյունք չեն տալու, ես առաջարկեցի զրույցն ավարտել, և մենք բաժանվեցինք Կաուցկուց» (Н. (Г. Полетаев, У колыбели «Звезды» и «Правды», журнал «Пролетарская революция, 1923 г., стр. 4—5):

Այս նամակը, ըստ երևույթին, սևագիրն է։ Այն գրված է սև մատիտով, ծոցատետրի թղթի վրա։ Թիֆլիսի դատաստանական պալատի էքս-

*պերտիզան հաստատել է, որ դա Ս. Սպանդարյանի ձեռագիրն է և դատարանը վերագրել է նրան։*

*Ստորև բերվում են փաստաթղթերը։*

I ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

## ՍԵՎ-ՔԱՂԱՔԻ ՇՐՋԱՆ

Ինչպես հայտնի է անցած ամսին մեր շրջանում որոշ պատճառներով ընդհատվել էր կանոնավոր կազմակերպչական աշխատանքը։ Գործադիր կոմիտեից ուղարկված մենշևիկ-կազմակերպիչը չկարողացավ բավարարել բանվորների պահանջներն ու ձգտումները, այդ պատճառով շրջանային պատգամավորական ժողովում այս ամսի սկզբներին, համարյա միաձայն, կազմակերպիչ ընտրվեց բոլշևիկ ընկ.-ը, որը նոր էր վերադարձել կարճատև բացակայությունից։ Ժամանակավոր կազմակերպիչ-մենշևիկը այդ ժողովում հայտարարեց, որ քիչ է մնում կուսակցությունից դուրս գա բոլշևիկների կողմից իր «արգասավոր» գործունեության դեմ սարքած խոչընդոտների պատճառով և այլն, բայց, իհարկե, ոչ մի փաստ չկարողացավ բերել հապացույց բոլշևիկների դավերի. սակայն, ինչպես հայտնի է, կյանքում խոսքն ու գործը հաճախ իրարից հեռանում են։ Իր խոսքից հեռացավ նաև ընկ. մենշևիկը։ Իրականում նա մեր շրջանում ընդհատակյա աշխատանք էր ծավալում, առանց մեր շրջանի ընտրովի օրգանների (շրջանային կոմիտեի պատգամավորական ժողովի), ինչպես նաև պարտկազմակերպչի գիտության, միանգամայն անտեսելով նրանց։

Երբ վերջին պատգամավորական ժողովում բանվորները բացահայտեցին նրա գործունեության այդպիսի եղանակի անթույլատրելիությունը, նա ձգտում էր, ըստ սովորության, դեմագոգիա անել, պատմելով բոլշևիկների կողմից կենտրոնական հիմնարկությունները ինչ-որ բոյկոտի ենթարկելու մասին և այլն։ Բայց նա տեղն ու տեղը մերկացվեց ընկ. բանվորի կողմից. վերջինս նրան ցույց տվեց, որ ընդհատված կապը վերականգնելու համար շրջանը Գործկոմում մի բանվոր է ընտրել խորհրդակցական ձայնով, բայց նա ոչ մի անգամ չի հրավիրվել Գործկոմի նիստի։ Դրա պատճառն այն է, որ բանվորը բոլշևիկ է եղել։ Այնուհետև, պատգամավորական ժողովը, ճնշող մեծամասնությամբ, ի ցույց դրեց ընկ. մենշևիկին, որ ժողովը չի հանդուրժի ընդհատակյա աշխատանք և որ ամեն մի աշխատանք պետք է գտնվի շրջանի ընտրովի օրգանների և պատասխանատու կազմակերպչի հսկողության տակ։ Չնայած ընկ. ընկ. բանվորների այդ ոռոշակի կարծիքին, ընկ. մենշևիկը շարունակում է իր կազմալուծիչ աշխատանքը. առանց պատասխանատու կազմակերպչի և շրջանային կոմիտեի գիտության, բջիջներին գրականություն է մատակարարում։ Նրա այդ վարքագիծը չափազանց զայրացնում է առաջավոր գիտակից ընկ. բանվորներին։ Ընկ. ընկ. բանվորներին պակաս չի զայրացնում նախկին բոլշևիկ կազմակերպչի նկատմամբ սուտն ու զրպարտանքը, սուտ, որով իր էջերը զարդարեց մենշևիկյան «Ռաբոչի» թերթի առաջին իսկ համարը։ Նախկին ընկ. կազմակերպիչը, իրենից անկախ պատճառներով, չի կարող պատասխանել այդ զրպարտանքին, և մենք լիազորված ենք հայտարարելու, որ նրա կողմից ընտրությունները հետաձգելու մասին պընդումը բացարձակ կեղծիք է։ Ընդհանրապես բանվորները չափազանց դժգոհ են ինչպես այդ ընտրություններից, այնպես էլ այդ իսկ սիստեմից— դա փաստ է։ Փաստ է նաև այն, որ դրանք ոչ թե ընտրություններ են եղել, այլ կոմեդիա (2 16 թեկնածու), որոնք բոլորովին չեն արտահայտում, մի կողմից՝ ֆրակցիաների ուժերի իսկական հարաբերակցությունը, մյուս կողմից՝ այլ շրջանների օգնությամբ շրջաններ ի վզին են փաթաթում «կազյոննի», իրենց համար անհաճելի ներկայացուցիչների ձայներ՝ կենտրոնում։ Շրջանում այժմ աշխատանքն աշխուժացել է։ Կանոնավոր կերպով դասախոսություններ են կարդացվում, որոնց հաճույքով հաճախում են նաև անկուսակցականները, բանվորական շրջաններից պրոպագանդիստներ ու ագիտատորներ պատրաստելու համար կազմակերպվել է բարձրագույն խմբակ։ Նախատեսվում և հաստատվում են նոր կապեր։

Դումայի ցրումը բավական սառն ընդունվեց բանվորական զանգվածների լայն շերտերի կողմից, որոնք մինչ այդ արդեն հիասթափվել էին նրանից և դադարել որևէ իրական հույս կապել, «Ռաբոչիի» առաջին համարի թևավոր արտահայտությամբ ասած՝ «ռուսական սահմանադրության քնքուշ ծաղկի» հետ։ «Ինչ ասած... ինչպես երևում է խոսքով ոչինչ չես ստանա... հարկավոր է ուժով...»,ահա բանվորների սովորական խոսքը։ Վճռականորեն գերիշխում է III Դումայի հանդեպ լիակատար անտարբերությունը և ընտրությունների նկատմամբ բոյկոտող տրամադրությունը։ Բավական է, իբր, կոմեդիա խաղալ. ձանձրացել ենք...

**Լ.**

«Бакинский пролетарий», № 1.

20 հունիսի, 1907 թ.

II ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

Խնդրում ենք տպագրել.



Ռուս. ս. դեմ. բանվ. կուսակցության Բաքվի կազմակերպության Մարտական դրուժինայի շտաբը, տեղեկանալով Բաքվում գտնվող Թիֆլիսի խուլիգանների «թռուցիկ ջոկատի» մասին, որը բնակչության մեջ խուճապ էր առաջացնում, հանձնարարեց դրուժինիկներին ձերբակալել շանտաժիստներին, որն և անհապաղ կատարված է։

Հարցաքննությունից հետո համոզվելով, որ ձերբակալվածները սովորական ժուլիկներ են, որոնք դեռ չպարզված երրորդ անձերի ձեռքին լոկ զենք են ծառայում, բոլորը ազատ են արձակված, նախազգուշացվելով, որ խաղաղ քաղաքացիների վրա հարձակվելու փորձերը կրկնվելու դեպքում նրանց դեմ շտաբի կողմից կձեռնարկվեն ամենավճռական միջոցներ։



Նման վիճակ է սպասվում ընդհանրապես նաև բոլոր շանտաժիստներին։

*ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ Վրացական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 8, ց. 5, գ. 243, թ. 10։*

III ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

## ՕՐՎԱ ՀԱՐՑԵՐ

Իմ առջև է այն չարաբաստիկ նամակներից մեկը, որ Բաքվի խեղճ բնակիչներին այնպես առատորեն ուղարկում են զանազան, այսպես կոչված՝ «անարխիստ-կոմունիստները» ու «անարխիստ-տեռորիստները» և ես չեմ կարող լռությամբ անցնել դրանց կողքով, թեև մեր առօրյա կյանքում դա դարձել է սովորական երևույթ։

Չեմ կարող, որովհետև ամոթ եմ զգում և սիրտս դառնանում է նման դեպքերում, հիշելով այն մեծ, թեպետ և իրենց հայացքներով ուտոպիստ մարդկանց, որոնց սրտերը տրոփել են քաղաքացիների երջանկության համար, որոնց բուռն ու խելահեղ գործունեությունը ծառայել է միմիայն սոցիալական զրկանքներ կրած եղբայրների բարօրությանն ու ուրախությանը։

Բայց tempora, o mores.

Ժամանակները փոխվում են ու դրանց հետ մեկտեղ փոխվում են և մարդիկ ու, համոթ մեզ, դեպի վատն են փոխվում։

Եվ այժմ, նայելով ահա այս նամակին, ես ակամա անիծում եմ այն խղճուկ ու ճղճիմ մարդկանց, որոնք ունակ են միայն նսեմացնելու մարդու սուրբ կոչումը և ի վիճակի չեն ստորությունից բացի ստեղծել որևէ լավ բան։

Վերին աստիճանի անգրագետ ու անճոռնի, նոր միայն գրագիտություն սովորողի ձեռքով ու ոճով թխված այս նամակը հասցեագրված է արդյունագործական խեղճ ծառայողին, որն իր չնչին աշխատավարձով հազիվ է պահում իրեն ու իր բազմանդամ ընտանիքը։

Ընթերցողին եմ թողնում հասկանալու դըժբախտ հասցեատիրոջ վիճակի ամբողջ ողբերգությունը։

Չէ որ, ինչպես ապացուցում է պրակտիկան, այս զգայացունց պատմությունների մեծ մասը ողբերգական վախճան է ունենում։

Իսկ ի՞նչ կլինի այնժամ դժբախտ ընտանիքի և փոքրիկների հետ։

Ինչ կլինեն փոքրիկներն առանց միակ կերակրողի, ձեզ եմ հարցնում, ընթերցող։

Մենք այդ լավ գիտենք։ Կհամալրվեն անտունների ու քաղցածների առանց այն էլ խիտ շարքերը։

Մի՞թե դրանք գաղափարազուրկ մարդիկ չեն և մի՞թե այս չէ անարխիզմի հաղթանակը։

Եվ ուզում եմ ես գոռալ այդ մարդուկների վրա. «դե՛ն նետեք դիմակները»...

Այո՛, դիմակները հանելու ժամանակն է, որովհետև մենք շատ լավ ճանաչեցինք ձեզ, ամեն կարգի և երանգի պարոնայք «անարխիստներ»։

Դուք հարյուր անգամ ցածր եք կանգնած մեծ ճանապարհների ավազակներից։

Գոնե նրանք վերցնում են ունևորներից և չեն թաքնվում անարխիզմի դիմակով, որի մասին, ես համոզված եմ, աղոտ պատկերացում անգամ դուք չունեք։

Դեն նետեք դիմակները...

Ձեր տեղը միայն մեծ ճանապարհներն են:

Հանգիստ թողեք բնակիչներին, պպ. «անարխիստներ» թեկուզ և հանուն հենց նույն անարխիզմի:

Բ ա վ ա կ ա ն  է  վ ի շ տ  ո ւ  ա ր ց ո ւ ն ք:

Մենք մինչև ծնկներս արյան մեջ ենք, շնորհիվ ձեզ և ձեր անարխիզմի.

Թ ո ղ ե ք...

Ս. Ս-յան

«Бакинское эхо», № 18, 1908, 22 января, стр. 4.

IV ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

## ԱՇԽԱՏԱՎՈՐՆԵՐԻ ԿՅԱՆՔԻՑ

### ՆԱՎԹԱՐԴՅՈՒՆԱԲԵՐԱԿԱՆ ԲԱՆՎՈՐՆԵՐԻ ԼԻԱԶՈՐՆԵՐԻ ԵՐԿՐՈՐԴ ԺՈՂՈՎԸ

**Կիրակի, ապրիլի 6-ին, Սև-քաղաքի ժողովրդական տան դահլիճում կայացավ բանվորական լիազորների երկրորդ ժողովը: Այս անգամ լիազորներից համեմատաբար քիչ էին (մոտ 200 հոգի), հյուրեր կային մոտ 100 մարդ:**

**Նախընթաց ժողովի նախագահ՝ Տրոնովը բաց անելով նիստը ժամը 12-ին հայտնեց, որ այսօրվա հերթական նախագահ, բոյկոտիստ Բ. Գրիգորյանցն է:**

**Իսկ երրորդ նախագահ Պերովի տեղ, որը մի քանի լիազորների հետ ձերբակալված է, մեխանիկների միության առաջարկությամբ ճանաչել ընկ. Շչեդրինին:** Մեխ. միության ներկայացուցիչը **բողոքեց այն բանի դեմ, թե ինչու նախագահը բոյկոտիստ է լինելու. այսօրվա նախագահությունը իրավունքով պատկանում է իրենց ներկայացուցչին, քանի որ իրենք ընտրված են 10.000-ի, իսկ բոյկոտիստները 8000 բանվորների կողմից:**

**Նավթ. բանվոր. Մ[իության] ներկ. առաջարկեց այդպիսի մանր մունր բանով չզբաղվել, նախ ընտրողների թիվը ճիշտ հաշված չէ, երկրորդ ընկերական համերաշխությունից դրդված, մենք այսօրվա նախագահությունը պիտի զիջենք բոյկոտիստներին, որովհետև մեխանիկները նույնպես խորհրդակցության կողմնակիցներ են:**

**Դրվեց քվեարկության երկու բանաձև. ա) բոյկոտիստ նախագահի, բ) մեխանիկներից ընտրված նախագահի: Ձայների ճնշող մեծամասնությամբ (144-ի ընդդեմ 28-ի) անցավ առաջին բանաձևը:**

**Լիազորներից մեկը հարց բարձրացրեց, թե ինչու են բանտարկված նախագահ Պերովը և լիազորներից մի քանի հոգի: Մեխանիկների** Մ[իության]* ներկ. տվեց բացատրություն:

## Ս. ՍՊԱՆԴԱՐՅԱՆԻ ԵԼՈՒՅԹԸ

Ընկեր Տիմ.

**Ընկերներ. Այստեղ բոյկոտիստական երկու կարծիք կա: Առաջինը ծանրանում է գլխավորապես քաղաքական ներկա պայմանների վրա:**

**Գլխավոր սխալը նրանում է, որ նրանք կարծում են, թե այս խորհրդակցությունը կապիտալիստների տվածն է: Խորհրդակցությունը Բաքվի պրոլետարիատի կռվի արդյունքն է: Նա իր կռվով ստիպեց նրան ճանաչելու իրեն իբրև մի կողմն և ստիպված հրավիրեցին խորհրդակցությունը:**

**Մեզ ասում են, որ կապիտալիստների նպատակն է քանդել, բաժանել պրոլետարիատին, խաբել և այլն, բայց դրան կհակադրենք մերը և նրա տվածից կօգտվենք մեր տեսակետով: Բիսմարկը Գերմանիայում մի շարք սոցիալական օրենքներ հրատարակեց բանվորությանը իր կողմը քաշելու համար, բայց ո՞վ կմտածեր հրաժարվել դրանցից: Ընտրողական իրավունք են տալիս, մի՞թե չպետք է օգտվել:**

**Պետք է բուրժուազիայի տվածներից օգտվել, ենթարկելով նրանց մեր շահերին և նպատակներին: Ասում են, որ բանվորությունը անգիտակից և անկազմակերպ է: Բայց չեն ասում թե ինչպե՞ս կռվել դրա դեմ, բոյկոտ, բոյկոտ ասելով խոմ չի կարելի կազմակերպել և գիտակցության բերել: Տգիտությունը հանկարծակի չի վերանում: Մի՞թե կռվի ժամանակ չեն կարող կապիտալիստները փեշքեշով բանվորության մի մասը իրենց կողմը քաշել: Մենք խորհրդակցության գնալով հիմք ենք դնում լավ կազմակերպության և դրա համար պահանջում ենք երաշխավորություններ և այլն: Մենք բուրժուական ինտելիգենցիային կհակադրենք պրոլետարական ինտելիգենցիան, որ բանաձևի նրա պահանջները. այս ամենի մասին գրվում է մամուլի օրգաններում, խոսվում է այստեղ, այստեղից անցնում է մասսան. ահա դրանով մենք նրա գիտակցությունը բարձրացնում ենք և կազմակերպում: Ուրեմն կազմակերպելու համար անհրաժեշտ են այդ երաշխավորությունները (գարանտիան):**

**Իսկ ինչ վերաբերվում է ընկերների բռնվելուն, շատ ենք ցավում, բայց դա չպետք է ստիպի մեզ ձեռքերս ծալել ու նստել:**

(Բուռն ծափահարություններ):

**«Անիվ», № 7,**
**13 (26) ապրիլի, 1908 թ.**

---

* *Մեխանիկների արհմիությունը գործում էր մենշևիկների ղեկավարությամբ (Վ. Ա.):*



V ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

## ՆԱՄԱԿ Վ. Լ. ՇՎԵՅՑԵՐԻՆ

**(29 դեկտեմբերի, 1911 թ.)**

**Թանկագի՛ն Վերա. Ստացա ձեր նամակը. ահա ինչքան երկար է նամակը տեղ հասնում: Անասելի ուրախացա, որպես քիչ թե շատ մոտիկ մարդուց ստացած լուրի (չեմ գրում ուղղակի «մոտիկ», վախենալով ձեր բողոքից): Այստեղ ինձ համար չափազանց ձանձրալի է ու ծանր: Դուք գոնե ձեր ներկայությամբ ու զարմանալի օպտիմիզմով ջերմացնում էիք անմիտ կերպով իմ այստեղ նստելը: Բայց բավական է լիրիկան: Այն ինձ սազական չէ: Ձեր սենյակը ձեր մեկնելու հենց մյուս օրը տրվեց Նուշիկ Զավարյանին, այնպես որ այժմ ես ապրում եմ Իվան Եգորիչի հետ, մտերմացել ենք, զրուցում ենք, կարդում ենք Կլյուչևսկուն և ընդհանրապես ես նրան մի քիչ հունից հանել եմ: Մի անգամ նրա հետ մենք մինչև գիշերվա ժամը 3-ը Ապոստոլի մոտ նստեցինք և այլն: Հաճախ էինք ձեզ հիշում, իհարկե, ամենալավ կողմից: Աննա Իվանովնայի հետ ոչինչ չի ստացվում, նա շարունակ նամակներ է գրում, իսկ թե երբ պատասխան կստանա, միայն Ալլահը գիտե: Ինձ այդ քաշքշուկը ձանձրացրել է, և ես նրան տվի իմ հասցեն, բայց նա չի գալիս: Անմիջապես կապի մեջ մտնելու փորձը ձախողվեց, որովհետև Վասոստրը փոխադրվել է ինչ-որ նոր բնակարան, իսկ Ան. Իվ. նրա ուղղակի հասցեն չունի և չի էլ փորձում, ինչպես երևում է, փնտրել: Այսպես, Պիտերում, երկու շրջանների միջև գրագրություն կա, ինչպես արտասահմանի և Ռուսաստանի միջև: Ծիծաղելի է, տըխրալի և տհաճ: Սոսոն մեկնեց, ուստի ես ծախսերի և նույնիսկ պարտքի տակ ընկա: Համարյա և ձեր նամակի հետ միասին ստացա նաև Նադ. Կոնստ.-ից, պահանջում է, որ ես անհապաղ մեկնեմ: Բայց ինչով մեկնես: Ձեռնափայտո՞վ: Այդ ամբողջը ինձ հուզում է, ճնշում և ակամա նվնվում ես: Գնացի-եկա, խնդրեցի, աղաչեցի— բոլորն էլ ողորմելի երկչոտներ են... Սպասում եմ ձեր ծանոթին, ինչպես հրեան անապատում երկնային մանանային: Լիդիա Մարկ.-ի մոտ երկու անգամ եղա և պետք է այսօր պատասխանի գնամ Նիկ. Գրիգորևից: Նա ախր դեռ այնտեղ չի եղել: Իզուր եք ինձ վիրավորում, Վերա: Ես բնավ էլ չար չեմ... Ես չար չեմ, այլ հիմարության հասնող բարի երիտասարդ, միայն թե կատակում եմ հաճախ շատ սուր և հենց նրա համար, որպեսզի թաքցնեմ սենտիմենտալ էությունս: Եվ այսպես, կեցցե՛ սիրելի Վերան, և թող նրա քաշը չանցնի 3,5 փթից: Ինչպես է ձեր** maman-ի **առողջությունը: Ինչո՞ւ ոչինչ չեք գրում այդ մասին: Թեպետ ձեր նամակի տոնից ամեն ինչ բարեհաջող է երևում: Կ-ի համար, իհարկե, պետք է. Օդ.-ի համար նույնպես պետք է: Նամակս վերջացնում եմ նոր տարվա շնորհավորանքով: Մի բան կտա՞ այն: Թեպետ այս բոլորը պայմանականություն է, բայց արդեն միս ու արյուն է դարձել: Ուղարկում եմ ձեզ իմ կերպարանքը պատահական կամպանիայի մեջ: Դանուշը, նա և ես: Դանուշը, որի սենյակում գրում եմ, խոնարհվում է ձեզ:**

**Սեղմում, սեղմում եմ ձեր ձեռքը**

**ձեր Սուրեն:**

*ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ Վրացական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 31, գ. 229, թթ. 1—3:*

VI ՓԱՍՏԱԹՈՒՂԹ

**Թանկագի՛ն ընկեր.**

**ՌՍԴԲԿ Կենտրոն. կոմիտեն վերջնականապես կազմվեց և սկսեց ղեկավարել կուսակցական գործերը: Առաջին հերթին IV դումային նախապատրաստվելն է: Կենտկոմն այդ կապակցությամբ շատ բան է արել, բայց դեռ շատ անելիք ունի: Մինչդեռ նրա տրամադրության տակ մնացած գումարները չեն բավարարի ընտրական կամպանիան շարունակելու, առավել ևս այն մինչև վերջ հասցնելու համար: Նկատի ունենալով այդ, Կենտկոմը, ՌՍԴԲԿ Հունվարյան կոնֆերանսի որոշման համաձայն, ըստ որի կուսակցության ունեցվածքը պետք է կենտրոնացվի Կենտրոնական կոմիտեի ձեռքը, կրկին անգամ դիմում եմ Ձեզ, այս անգամ գրավոր խնդրանքով, որպեսզի Կենտրոնական կոմիտեին հանձնեք Ձեզ մոտ պահվող մեր՝ կուսակցական դրամը: Զգալով, որ առանց վերջինիս Կ. կոմիտեն հարկադրված կլինի ընդհատելու արդեն սկըսված ընտրական կամպանիան և համոզված լինելով, որ Դուք չեք ցանկանա թույլ տալ այդ խայտառակությունը,— Կենտկոմը հույս ունի, որ Դուք կբավարարեք նրան հնարավորին չափ շուտ: Սպասում ենք:**

**Ընկերական ողջույններով:**

**ՌՍԴԲԿ ԿԿ**

**Վերջում գրված է** «дата»:

*ՍՄԿԿ Կենտկոմին կից ՄԼԻ Վրացական ֆիլիալի կուսարխիվ, ֆ. 31, գ. 82, թթ. 42—43:*

## Հաղթանակած ԲԱՐԵԿԱՄՈՒԹՅՈՒՆ

# ԻՆՏԵՐՆԱՑԻՈՆԱԼԻԶՄԸ ԿՅԱՆՔՈՒՄ

Հայաստանում սովետական կարգերի հաստատումից մի քանի ամիս անց դրվեց մեր հանրապետության բարձրագույն կրթության զարգացման հաստատուն հիմքը— բացվեց Երևանի պետական համալսարանը: Հայաստանը չուներ գիտական մտավորականություն և, ահա, մեր Միության տարբեր քաղաքներից, հատկապես Մոսկվայից, Լենինգրադից, Կազանից եկան, այստեղ հավաքվեցին հայ և այլազգի բազմաթիվ գիտնականներ՝ խութեր հաղթահարող ոգևորությամբ: Եկան նրանք, սիրեցին մեր ուսումնատենչ ժողովրդին, նվիրվեցին նրա գիտության առաջընթացին, ժողովրդի լուսավորության, կրթության գործին, խթանեցին մեր երկրի տնտեսական վերելքը, դարձան շատ լավ գործերի նախաձեռնողներ...

Հողագործական մեր երկիրը, ողջ Անդրկովկասը մասնագետների՝ գյուղատնտեսների, անասնաբույժ-անասնաբույծների մեծ կարիք ուներ:

— Անհրաժեշտ է հիմնել ուսումնական մի հաստատություն, որն ապահովի Անդրկովկասն այդպիսի մասնագետներով: Սկզբի համար անհրաժեշտ է այդ բնագավառին ծանոթ գեթ 60 հոգի,— այս էր Անդրկովկասի գյուղատնտեսության ու տնտեսական վիճակն ուսումնասիրող հանձնաժողովի եզրակացությունը:

ՀԿ(բ)Կ Անդրերկրկոմի որոշմամբ, 1928 թ., Երևանում կազմակերպվեց Անդրֆեդերացիայի անվան Անդրկովկասյան անասնաբուժական ինստիտուտը, որի հիման վրա բացվեց Անդրկովկասյան անասնաբուծական ինստիտուտը (1930 թ.). իսկ 1931 թ. միավորվեցին դրանք և ըստեղծվեց համամիութենական անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտը. 1932 թ. այն կոչվեց Երևանի անասնաբուծական-անասնաբուժական և այժմ գտնվում է ՀՍՍՀ գյուղատնտեսության մինիստրության տնօրինության տակ:

Ինստիտուտի առաջին ուսանողները դասախոսությունները լսում, գործնական աշխատանքներն անց էին կացնում պետական համալսարանի գյուղատնտեսական ֆակուլտետի լսարաններում, հակաժանտախտային կայանի լաբորատորիաներում, նրա գոմերում, որոնք վերածվեցին ուսանողական հանրակացարանների՝ ցեմենտածածկ հատակով, խոնավ ու ցուրտ, ձմռանը՝ հաճախ առանց վառելիքի...

Դիրեկտորը՝ դոկտոր-պրոֆեսոր Բորիս Գրիգորևիչ Մասինոն, ավարտել էր Կազանի անասնաբուժական ինստիտուտը: Սիրով, երախտագիտությամբ են հիշում գլխովին իր գործին նվիրված էնտուզիաստ ղեկավարին այդ ինստիտուտի սաները, որոնք այժմ գիտական բարձր կոչումներ են վաստակել, անվանի մարդիկ են դարձել... Բարձրահասակ, թիկնեղ, փոքր-ինչ գեր, բարի աչքերով, գեղեցիկ արտաքինով, ուժեղ կամքի տեր մարդ էր նա. ոչինչ չէր վրիպում նրա աչքից: Օգնում էր՝ ում ինչով կարող էր:

Երբ Ալեքսանդր Թամանյանի նախագծով սկըսեցին կառուցել ինստիտուտի գլխավոր մասնաշենքը, Մասինոն համարյա բոլորովին չէր հեռանում շինհրապարակից. ինքն էլ որոշ չափով հասկանում էր շինարարությունից և բանիմաց տանտիրոջ նման հոգում, որ ամեն ինչ տեղին ու ճիշտ լինի: Նույն ձևով հսկում էր և հանրակացարանի շենքի կառուցմանը: Իսկ բազմազգ ուսանողությունը հանգստի պահերին, թևքերը քշտած, ոտաբոբիկ, քար էր տաշում, շաղախ պատրաստում, քար ու ջուր կրում... Երբ ավարտվեց հանրակացարանի կառուցումը, Մասինոն տեղավորեց այնտեղ բոլոր դասախոսներին, իսկ ինքը մնաց շենքի բակում գտնվող գետնամած տան մեջ:

Նրա նախաձեռնությամբ ու հրավերով Մոսկվայից, Լենինգրադից, Կազանից, Խարկովից, Թիֆլիսից Երևան եկան ականավոր գիտնականներ— պրոֆեսորներ Ն. Գ. Նիկիտինը, Ֆ. Ա. Միխայլովը, Բ. Ն. Միխայլովը, Ս. Մ. Սմիրնեսկին, Ս. Ա. Շչերբակովը, Վ. Բիցկին, Լ. Վ. Յակուշկինը, Ի. Կալուգինը, Ն. Տրոիցկին, Ս. Վելլերը, գերմանացի Օտտո Յուլևիչ Գերմանը և ուրիշներ: Ուսումնական ու գիտական գործով Մասինոյի տեղակալն էր հմուտ մանկավարժ ու



գիտնական Ի. Ռ. Բախրամիևը, որին իրենց ապագան են պարտական նաև բժշկական ինստիտուտի մեր շատ ականավոր սաներ: Հայրենի երկրի անասնաբուծության վերելքին, նորաստեղծ Միությունն անասնաբույժ մասնագետներով ապահովելու գործին նվիրվեցին և հայ ականավոր գիտնականներ Ա. Բեդելյանը, Ա. Թամամշևը, Ա. Քալանթարը, Պ. Քալանթարը, Ս. Ղամբարյանը, Գ. Մեղնիկյանը, Ս. Փիրումյանը... Ռուսաստանում, արտասահմանում կրթություն ստացած այս երախտավորներն իրենց հետ բերեցին զարգացած մտավորականի բարձր կուլտուրա, խստապահանջություն իրենց և շրջապատի նկատմամբ: Այդ հատկությունները բարերար ազդեցություն ունեցան ուսանողների վրա:

Երեկոները հանրակացարանում միասին հանգստանում էին դասախոսներն ու ավելի քան 20 տարբեր ազգությունների ուսանողներ: Հավաքվում, մեկտեղ երգում, պարում, արտասանում էին... Դասախոսները կազմակերպում, ղեկավարում և ակտիվ մասնակցում էին շաբաթօրյակներին, բերքահավաքներին: Նման միջոցառումները մերձեցնում, առավել անկեղծ ու սրտամոտ էին դարձնում դասախոսների և ուսանողների փոխհարաբերությունները...

— Չնայած իրար լեզու դեռ կարգին չգիտեինք, բայց իրար լավ էինք հասկանում: Ի՞նչ կարևոր էր ազգությունը: Միևնույն պայմաններում, նույն ձգտումներով ապրող մարդիկ էինք, որ աշխատում էինք իրար օգնելով որքան հնարավոր է շատ բան իմանալ, որքան հնարավոր է շուտ օգտակար դառնալ մեր ժողովրդին ու հայրենիքին. ամենքիս միացնում էր այդ նըվիրական նպատակը,— հիշում են այն ժամանակների ուսանողները— այժմ ակադեմիկոսներ, դոկտոր-պրոֆեսորներ, կառավարական բարձր պարգևների արժանացած գիտության վաստակավոր գործիչներ:

Մասինոյի մեծագույն ծառայություններից մեկն այն էր, որ, ինստիտուտը համալրելով բանիմաց դասախոսներով, նրանց հետ մեկտեղ նա ամեն ինչ անում էր ազգային մասնագետ կադրերի պատրաստման, որքան հնարավոր է նրանց շատ ու կայուն գիտելիքներով զինելու համար:

Իբրև լավագույն մասնագիտական ուսումնական հաստատություններից մեկը, ինստիտուտը շուտով լայն ճանաչում գտավ ո՛չ միայն Անդրկովկասում, այլև ողջ Միությունում: Եվ 1935 թ. ինստիտուտի գիտական խորհրդին իրավունք տրվեց շնորհելու գիտության թեկնածուի, իսկ 1944-ից՝ դոկտորի կոչում: Այդ ժամանակներից մինչև օրս 498 թեկնածուական, 80 դոկտորական դիսերտացիա է պաշտպանվել այս ինստիտուտում, պաշտպանել են այստեղ Սարատովից, Վոլոգդայից, Աշխաբադից, Ստավրոպոլից, Վորոնեժից, Բաքվից, Կիրովաբադից, Նովոչերկասկից, Թբիլիսիից, Էնգելսից, Կույբիշևից, Պոլտավայից գործուղված շատ մասնագետներ:

Այստեղ ուսանելու էին գալիս Անդրկովկասի, ողջ Միության ամենատարբեր վայրերից, գալիս, ուսանում ու վերադառնում էին՝ դառնալով նորաբաց մի ինստիտուտի դիրեկտոր, ռեկտոր, ամբիոնի վարիչ, կոլտնտեսության նախագահ, սովխոզի դիրեկտոր, երբեք չմոռանալով ինստիտուտն ու ընկերներին, դասախոսներին... այդ են վկայում նրանց չընդհատվող նամակագրական կապերը, հեռագրերը, հաճախակի, տարբեր առիթներով կազմակերպվող հավաքները... Այստեղ, Երևանում ևս չեն մոռացել նրանց՝ Մ. Ֆ. Բելոուսովին, Վրաստանի անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտի ռեկտոր Վլադիմիր Մամատելաշվիլուն, Ադրբեջանի պետպլանի նախագահի տեղակալ Ալի Հասանովին, ֆրանսուհի Իրինա Ցոլլեին, որն ավանդում է Թբիլիսիում, Պենզայի գյուղատնտեսական ինստիտուտի կերակրման ամբիոնի դոցենտ Գալինա Յակովլևնա Ստրիբակին, ակադեմիկոս Կադիմով Աբդուլային, որի որդին՝ Ռաուն ևս այստեղ է պաշտպանել դոկտորականը...

Երևանի անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտում Մասինոյին փոխարինել են նույն ինստիտուտի սաները— Մ. Մարտիրոսյանը, անասնաբուժական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Գ. Շաքարյանը, կենսաբանական գիտությունների դոկտոր-պրոֆեսոր Գ. Քամալյանը, իսկ այժմ՝ գյուղատնտեսական գիտությունների թեկնածու Հ. Մաղոյանը:

Քառասունհինգ տարեկան է ինստիտուտը: Հիմնադրման առաջին տարում ընդամենը 12 դասախոս (2 պրոֆեսոր, 4 ասիստենտ, 6 դասախոս), 115 ուսանող ունեցող ինստիտուտում այժմ սովորում են 2617 հոգի, պրոֆեսորադասախոսական կազմը հասել է 173-ի, որոնց մեծ մասը ինստիտուտի սաներն են— 31 պրոֆեսորներ, 98 գիտության թեկնածուներ, լաբորանտներ... Հիմնադրման օրից մինչև օրս 7957 մասնագետ է պատրաստել ինստիտուտը, որոնցից 3662-ը անասնաբույժներ, 4073-ը գիտնական-անասնաբույծներ, 222-ը ինժեներ-տեխնոլոգներ են:

ԵՐԲ խոսք է լինում ինստիտուտի ինտերնացիոնալ կապերի մասին, շատերն ամենից առաջ հիշատակում են կաթնագործության ամբիոնի վարիչ, դոկտոր-պրոֆեսոր, գիտության վաստակավոր գործիչ Զ. Ք. Դիլանյանին, որի գիտական կապերը չեն սահմանափակվում Միության սահմաններով. կաթնագործության միջազգային

ֆեդերացիայի՝ տաք երկրների գծով էքսպերտ հանձնաժողովի պրեզիդենտ է. մասնակցել է ֆեդերացիայի՝ Լոնդոնում, Կոպենհագենում, Մյունխենում, Ավստրալիայում, Տոկիոյում կայացած կոնգրեսներին ու նիստերին: 1960 թ. ինստիտուտում հիմնադրված կաթի և կաթնամթերքների ինժեներ-տեխնոլոգների բաժանմունքը 1964 թ. դարձավ ֆակուլտետ, որն այժմ մասնագետներ, հատկապես պատրաստում է Անդրկովկասի, Ստավրոպոլի, Կրասնոդարի, Ալթայի երկրամասերի համար: Այդ է պատճառը, որ ամենից շատ այլազգիներ այդ ֆակուլտետում կան: Պրոֆեսորի ղեկավարությամբ դիսերտացիաներ են պաշտպանել հայեր, ռուսներ, կաբարդինո-բալկարներ:

Նրա ջանքերով ստեղծվեց կաթնագործության հարցերը հետազոտող պրոբլեմային լաբորատորիան, որը գիտա-հետազոտական գործունեության ոլորտում սերտ համագործակցում է Ռուսաստանի, Վրաստանի, Ուկրաինայի, Ղազախստանի, Լիտվայի գիտնականների, ինչպես և Լեհաստանի, ԳՖՀ-ի, ԳԴՀ-ի, Անգլիայի, Ֆրանսիայի ու Բուլղարիայի կաթնագործների հետ:

Ավելի քան 200 գիտական աշխատությունների, 5 գյուտերի հեղինակ է Զավեն Դիլանյանը. նրա ղեկավարությամբ 25 հոգի դարձել են գիտության թեկնածուներ, որոնք, միշտ և ամենուր սիրով են հիշում հմուտ մանկավարժ գիտնականին, հոգատար ղեկավարին:

Դեռևս 1959 թ. *Կաթնագործության* դասագրքի համար Ալետիք Քալանթարի անվան մրցանակի արժանացած գիտնականը պարգևատրվել է Լենինի, Աշխատանքային կարմիր դրոշի, Պատվո նշան շքանշաններով: Դրանք արժանի գնահատականն են այն աշխատանքի, որ կատարել է պրոֆեսորը սովետական ժողովրդի բարօրության համար:

ԱԽՏԱԲԱՆԱԿԱՆ ֆիզիոլոգիայի հիմնադիր պրոֆեսոր Ի. Բախրամիևի ասպիրանտն էր Մարգարիտ Գրիգորյանը: Ղարսեցի ծնողների ութ երեխաներից մեկն էր նա, որ Ռուսաստանից գալով Երևան՝ սովորում էր այս ինստիտուտում: «Թոռնիկ» էր ասում թխադեմ, սևաչյա, աշխույժ աղջկան ականավոր ֆիզիոլոգ, պրոֆեսոր, գիտության վաստակավոր գործիչ Ս. Ս. Շչերբակովը՝ Բախրամիևի ուսուցիչը: Ահա պրոֆեսոր Գրիգորյանի աշխատասենյակը: Դռան տակ իր գրասեղանն է, իսկ աշխատասենյակի վերնամասում՝ մի ուրիշը, որի վրա, դեմքով դեպի ամբիոնի այժմյան վարիչի սեղանը, դրված է նախկինի՝ ֆիզիոլոգ, պրոֆեսոր Հայկ Ստեփանյանի նկարը. Շչերբակովի լավագույն սաներից էր նա: Երբ միացվեցին ֆիզիոլոգիայի և ախտաբանական ֆիզիոլոգիայի ամբիոնները, Հայկ Ստեփանյանի մահից հետո ամբիոնի ղեկավարը դարձավ պրոֆեսորի պրոֆեսոր կինը:

Հանելի է զրուցել գիտության վաստակավոր գործիչ Մարգարիտ Սերգեևնայի՝ մեր լավագույն ախտաբան ֆիզիոլոգներից մեկի հետ, որը սիրում է գիրքը, արվեստը, երգը, երաժշտությունը և, խոսելով գիտական թեմաների շուրջ, իր խոսքն ավարտում է մի սրամիտ անեկդոտով՝ Բեռնարդ Շոուի մասին:

ԵՐԵՎԱՆՅԱՆ մայր ինստիտուտում եմ 1962 թ. պաշտպանել դոկտորական դիսերտացիաս,— գրում է Բաքվից պրոֆեսոր Յաղուբ Իոսիֆովիչ Բաբաևը, թեկնածուականը ևս պաշտպանել եմ այդտեղ, 1932 թ.:

Ամենին էլ գեղեցիկ խոսքեր ասելու համար չեմ գրում,— շարունակում է նա,— թե Անդրֆեդերացիայի անվան այս ինստիտուտի հիմնումը Անդրկովկասում ապրող ժողովուրդների ինտերնացիոնալ բարեկամության, հոգեհարազատության, փոխադարձ սիրո ու նվիրվածության, նրանց նկատմամբ Ռուսաստանի հոգատարության ամենավառ արտահայտությունն է:

Առանձին ջերմությամբ է նա հիշում ինստիտուտի դիրեկտոր Բ. Գ. Մասինոյի, Հայաստանի հողժողկոմ Ա. Երզնկյանի ամենաակտիվ մասնակցությունն ինստիտուտի հիմնադրմանը, ապա այնպիսի ականավոր գիտնականների, ինչպիսիք են՝ Ա. Բայբուրթյանը, Վ. Հայրապետյանը, Կ. Ռահիմովը...

Մոտ 70 գիտական աշխատությունների, երեք մենագրությունների հեղինակ է հարգելի պրոֆեսորը, որն այժմ ղեկավարում է Ադրբեջանի անասնաբուժական ինստիտուտի բիոքիմիայի և ֆիզիոլոգիայի բաժինը:

1930 թ. «Մանկալ» թերթի համարներից մեկում հրապարակված էր Բ. Մասինոյի հոդվածը Անդրֆեդերացիայի անվան անասնաբուժական ինստիտուտի մասին: Այդ հոդվածը կարդաց նաև Լեջանի ուսուցիչ, տեղի Կամոյի անվան կոլտնտեսության կազմակերպիչ Ս. Սաֆանյանը: Գյուղի տնտեսական ծանր կյանքից կփած ուսումնատենչ երիտասարդը որոշում է սովորել այդ ինստիտուտում, նվիրվել այդ ժամանակներում խիստ կարևոր մի գործի— իր ուժերի չափով օգնել հայրենիքին՝ հաղթահարելու տնտեսական ծանր կացությունը: Ինստիտուտն ավարտելուց հետո, մի քանի լավագույն ուսանողների հետ, նրան ևս պահում են ասպիրանտուրայում: Իսկ թեկնածուական դիսերտացիան պաշտպանելուց հետո նա ավարտում է նաև բժշկական ինստիտուտը:

— Բանակում ես մի անգամ ևս համոզվեցի, թե որքան շատ եմ սիրում մանկավարժությունը,— պատմում է պրոֆեսորը,— աշխատում եմ ողջ իմացածս, ամեն օր լրացնելով, տալ ուսանողներին: Չէ՛ որ մարդը ինչ տա, էն կշահի: Իսկ ես չեմ ուզում ոչինչ կորցնել:



Եվ նա տվել է դեղագործության առաջին հայերեն դասագիրքը, հեղինակ է 166 գիտական հոդվածների, 2 ուսումնական ձեռնարկի, 3 մենագրության, պատրաստել, թեկնածուական ատիճանի է հասցրել 15 շնորհալի ուսանողների, որոնց մեջ, անշուշտ շատ կան և այլազգիներ:

1930 թ. հոկտեմբերին, դասակի հրամանատարի կոչումով կարմիր բանակից զորացրվեց երիտասարդ Սահակը, Հայկական դիվիզիայում ամենքն էին նկատել խելացի, ուշիմ երիտասարդի ուսումնատենչությունը:

— Քեզ երաշխավորում ենք սովորելու ռազմա-բժշկական ակադեմիայում, որի ղեկավարն է մեր մեծ հայրենակիցը՝ Լևոն Օրբելին,— ասաց նրան դիվիզիայի հեծյալ գնդի հրամանատար Հովհաննես Բաղրամյանը:

Քննությունները հաջող հանձնելուց հետո պարզվեց, որ առողջության պատճառով ընդունվել այդտեղ չի կարող: Եվ նրան ուղարկեցին Երևանի անասնաբուժական ինստիտուտը, ուր դասերը ռուսերեն էին: Պրոֆեսոր Զենցովին լսելուց հետո նա քայլերն ուղղեց ինստիտուտի դիրեկտորի աշխատասենյակը.

— Ես ոչինչ չկարողացա հասկանալ, խնդրում եմ ազատել ինձ. այս ինստիտուտում սովորել չեմ կարող...

— Հայ ուսանողներից ռուսերեն քիչ թե շատ դու գիտես, ոչ մի դեպքում չեմ կարող ազատել քեզ, գնա՛, սովորիր. այդ կանցնի, լեզվին էլ կտիրապետես,— հորդորեց ու լսարան ուղարկեց Սահակին պրոֆեսոր Մասինոն:

Այդ օրը նա խնդրեց Զենցովի ասիստենտին՝ Նիկոլայ Նիկոլաևիչին, իր համար կրկնել պրոֆեսորի դասախոսությունը, իսկ մի քանի ամիս անց լեզվական դժվարությունը հաղթահարված էր:

Հասարակական աշխատանքում, ուսման գործում շատ շուտ աչքի ընկած երիտասարդն ընտրվեց ինստիտուտի արհմիութենական կազմակերպության նախագահ, իսկ որոշ ժամանակ անց՝ բազմազգ ուսանողություն ունեցող ինստիտուտի կուսակցական կազմակերպության կոմիտեի քարտուղար:

Ավարտել էին ինստիտուտը, քաղաքի ակտիվի հավաքն էր:

— Մեր կուրսի 33 շրջանավարտները պատրաստ են աշխատանքի մեկնելու շրջանները:

— Հապա մյուս ֆակուլտետնե՞րը,— հարցրեց տեղից Աղասի Խանջյանը:

— Բացի մի քանիսից, նրանք էլ առողջական պատճառներով, մնացած բոլորը պատրաստ են մեկնելու:

Պատասխանը գոհացուցիչ էր:

Մեր երկրի ականավոր գիտնականներից պրոֆեսոր Ի. Ի. Կալուգինն էր նրա ղեկավարը, որին մինչև օրս էլ ջերմորեն է հիշում պետական, կուսակցական բարձր պաշտոններ վարած, մեր ականավոր ֆիզիոլոգ Ս. Կարապետյանը, միշտապես իր հոգևոր ուսուցիչը համարելով Լ. Օրբելուն, որի անվան ֆիզիոլոգիայի ինստիտուտի ղեկավարն է նա այսօր: Երախտագիտությամբ հիշելով դասախոսներին, դժվարին օրերի նրանց վարակիչ խանդավառությունն ու ոգևորությունը, ակադեմիկոսը չի մոռանում ազգակից ու այլազգի դասընկերներին:

— Հպարտ եմ այն ժամանակվա կոլեկտիվի համար: Հայաստանում, Վրաստանում, Ադրբեջանում աշխատող պրոֆեսորներից, ամբիոնների վարիչներից շատերն այն տարիների շրջանավարտներն են: Նրանք հիանալի դրսևորեցին իրենց գիտության, արտադրության, հասարակական գործունեության ոլորտում: Դարձան ականավոր գիտնականներ, տեղական կուսակցական պատասխանատու գործիչներ, բայց ո՛ւր էլ եղան, երբեք չկտրեցին կապերն իրենց ինստիտուտից, ամեն պատեհ առիթով, իրենց կարյաց չափ, օգնեցին նրան:

ԵԹԵ չիմանայի հյուսվածքաբանության ամբիոնի վարիչի ազգանունը, և ինձ չասեին, որ ռուս է, մտքովս իսկ չէր անցնի, թե նա հայ չէ— այնքա՜ն մաքուր հայերենով էր խոսում... Քի՞չ հայեր կան չիկահեր, կապուտաչ: Լենինականում է ծնվել Եվգենի Վսեվոլոդովիչ Կադիլովը, որ 1923 թվականից Հայաստանի պատկոմական կազմակերպության անդամ է: Բաքումից գալով Երևան, 1931 թ. նա ընդունվում է անասնաբուծական-անասնաբուժական ինստիտուտը: Նոր էր պաշտպանել թեկնածուական դիսերտացիան, երբ սկսվեց մեծ հայրենականը, և նա մեկնեց ռազմաճակատ, ուր մնաց մինչև պատերազմի ավարտը: 1953 թ., պաշտպանելով դոկտորական դիսերտացիան, մինչև օրս ղեկավարում է հյուսվածքաբանության ամբիոնը: Ինստիտուտում էլ հանդիպել է Ջաֆաքալայից եկած ուսանողուհուն՝ Լյուսյա Բաղալյանին, ամուսնացել և ընդմիշտ իր բախտը կապել Հայաստանի, այս ինստիտուտի հետ, որը համարում է իր տունը, իրենը: Լյուսյան ևս պաշտպանել է թեկնածուականը և դոցենտ է ֆիզիոլոգիայի ամբիոնում:

— Այն նեղ օրերին ամենքս էլ հարազատի պես իրար հասել ենք, և այսօր էլ, երբ պետք է լինում, կանչում ենք իրար, ու նորից միասին ենք լինում,— ասում է Կադիլովը՝ ինստիտուտի ինտերնացիոնալ բարեկամության ակումբի՝ «Առագաստի» ակտիվ անդամը:

ՄԱՆԿԱԲԱՐՁՈՒԹՅԱՆ, արհեստական սերմնավորման ամբիոնի վարիչն է դոկտոր-պրոֆեսոր, գիտության վաստակավոր գործիչ Ա. Մանասյանը: Նրա աշխատասենյակի պատին փակցված են

իր ուսուցչի՝ Ա. Պ. Ստուդենցովի, ամբիոնի լսարանի պատին՝ ամբիոնի նախկին վարիչներ՝ Ն. Գ. Նիկիտինի, Մ. Մ. Դյոմինի, Գալինա Զվերյովայի, վաղամեռիկ Ի. Ռ. Բախրամիևի լուսանկարները, որոնց նա հիշում է մեծ երախտագիտությամբ:

Պրոֆեսորը, որն այժմ ծննդագիտության և գինեկոլոգիայի գծով Ադրբեջանի և Վրաստանի կոնսուլտանտն է, ամեն կերպ օգնում է այլ հանրապետություններում գիտնական մասնագետների պատրաստմանը:

ԻՆՍՏԻՏՈՒՏԻ երախտավորներից է դոկտոր-պրոֆեսոր Գ. Շաքարյանը— առույգ, գործունյա, իր մասնագիտությանը սիրահարված մի մարդ, որ 13 տարի՝ 1942—55 թթ. հմտորեն վարել է ինստիտուտի դիրեկտորի պաշտոնը, իսկ այժմ միկրոբիոլոգիայի ամբիոնի վարիչն է: Հիշելով ռուս և այլազգի դասախոսներին, որոնք անգնահատելի դեր են խաղացել ինստիտուտի հիմնադրման, ազգային կադրերի պատրաստման գործում, նա սիրով է մտաբերում տարբեր ազգերի դասընկերներին՝ դոկտոր-պրոֆեսորներ Դ. Գելովանիին, Գ. Բեդենաշվիլուն, Վ. Նանոբաշվիլուն, ադրբեջանցի Հ. Կազիևին, Ի. Մանաֆովին, Մ. Քասումզադեին, Ա. Կադիմովին և այլոց:

— Սերտ, ջերմ հարաբերությունները պահպանվում են ո՛չ միայն մեր և մեր ուսանողական ընկերների, այլև նրանց սաների միջև,— պատմում է պրոֆեսորը:

1971 թ. համաշխարհային անասնաբուժական 19-րդ կոնգրեսի առաջին կարգի դիպլոմ հանձնվեց սովետական 10 վկայականների, արտասահմանյան 2 արտոնագրերի հեղինակ Ս. Գ. Մելիքսեթյանին: 1940 թ. պաշտպանել է թեկնածուական դիսերտացիան: Դեռ ուսանելու տարիներին նրան մտահոգում էին խոշոր եղջերավոր անասունների ֆիզիոլոգիայի, ախտաբանության հարցերը: Կերի հետ անասունների օրգանիզմն էին թափանցում մետաղի կտորներ, որոնք հարուցում էին զանազան հիվանդություններ, պատճառ դառնում կորուստների: Վիրահատությունները միշտ չէ, որ հաջողությամբ էին պսակվում: Եվ սկսվում են տքնաջան պրպտումները, փորձերը... Մագնիսական զոնդ, մագնիսական օղակ, մետաղաինդիկատոր: Մետաղակիր անասունների բուժման մագնիսական այս համալիրը մեծ արդյունավետությամբ փորձարկվեց Միության ամենատարբեր վայրերում. շուտով այն լայն ճանաչում գտավ և արտասահմանյան մի շարք երկրներում, արտոնագրվեց ԳՖՀ-ում, Շվեյցարիայում և այլուր: Այդ գյուտի համար, առանց դիսերտացիոն աշխատություն ներկայացնելու, Լենինգրադի անասնաբուժական ինստիտուտի գիտխորհուրդը Ս. Մելիքսեթյանին շնորհեց անասնաբուժական գիտությունների դոկտորի աստիճան: Բազմավաստակ գիտնականը շարունակում է գիտական ուսումնասիրություններն ու որոնումները և, անշուշտ, նորանոր հայտնագործություններով կշարունակի ուրախացնել իր գործընկերներին:

ԻՆՍՏԻՏՈՒՏԻ անասնաբուժական մասնաշենքում ենք, Միության առաջնակարգ ամբիոններից մեկի՝ գյուղատնտեսական կենդանիների բուժման ամբիոնի վարիչ, Լենինի անվան համամիութենական գյուղատնտեսական ակադեմիայի իսկական անդամ Ա. Ա. Ռուխկյանի աշխատասենյակում: Մեր հանրապետության գենետիկների ու սելեկցիոներների ընկերության նախագահն է նա: Առանձին ջերմությամբ է հիշում ակադեմիկոսներ Մ. Ֆ. Իվանովին, Ն. Կ. Կոլցովին, Ա. Ս. Սերեբրովսկուն, Ա. Ի. Նիկոլաևին և շատ այլ ռուս գիտնականների, որոնց հետ աշխատել, բարեկամացել է: Իր սերնդակիցների նման նա ևս երբեք չի մոռանում եղբայրական այն մեծ օգնությունը, որ ինստիտուտի հիմնադրման տարիներին ցույց տվեց ռուս ժողովուրդը:

— Մոսկվայից, Լենինգրադից, Կազանից եկած գիտնականները մեծ դեր խաղացին մեր երկրի անասնաբուծական-անասնաբուժական գիտության զարգացման, գիտական կադրերի պատրաստման մարզում,— ասում է նա:

Ոչխարաբուծության զարգացմանը, այդ ասպարեզի լավագույն մասնագետների պատրաստման գործում մատուցած ծառայությունների համար Ռուխկյանը պարգևատրվել է Պատվո նշան, Աշխատանքային կարմիր դրոշի, ապա՝ Լենինի շքանշաններով, Միչուրինի մեդալով, իսկ 1961 թ. նրան շնորհվել է ՀՍՍՀ գիտության վաստակավոր գործչի կոչում:

ՀԱՅՐԵՆԱԿԱՆ պատերազմի ավարտից հետո, բանակից վերադառնալով, երկար ժամանակ ինստիտուտի բիոքիմիայի ամբիոնի վարիչն է եղել Գ. Քամալյանը: Ինստիտուտում լավ էին հիշում գործունյա, աշխատասեր գիտնականին, որ ավարտելուց հետո (1936) ինստիտուտի կուսկազմակերպության քարտուղարն էր: Պաշտպանելով դոկտորական դիսերտացիան՝ մոտ 16 տարի ինստիտուտի ռեկտորն է եղել նա, իսկ այժմ ղեկավարում է նյութափոխանակության պրոբլեմային լաբորատորիան, զբաղվում բիոլոգիական խթանիչների ուսումնասիրությամբ:

ՍՈՎՈՐԵԼ, օգտակար լինել հայրենիքի տնտեսական վերելքին. այս ձգտումով երևանյան մեր ինստիտուտն էին գալիս շատ երիտասարդներ. նրանց հետ 1931 թ. Բաքվից եկավ և Մ. Քարամյանը: Ավարտեց ինստիտուտը, ապա մեկնեց բանակ, մասնակցեց մեծ Հայրենականին... վերադառնալով, նա երկար ժամանակ իբրև դոցենտ աշխատեց ինստիտուտում. 1952 թ. նրա նախաձեռնությամբ կազմակերպվում է ինստիտուտի մանր անասնաբուծության ամբիոնը, որը և մոտ տասը տարի ղեկավարում է նա: Դոկտորական դիսերտացիան պաշտպանելուց մի քանի տարի անց (1958 թ.) Մ. Գ. Քարամյանը նշանակվում է ինստիտուտի գիտական մասի պրոռեկտոր:

Չենք կարող այստեղ չհիշել նաև բազմավաստակ գիտնական, ինստիտուտի անասնահամաճարակային ամբիոնի վարիչ, գիտության վաստակավոր գործիչ, դոկտոր-պրոֆեսոր Հ. Բ. Բոյախչյանին, ինչպես և Ե. Ս. Ղազարյանին. վերջինս, երկար ժամանակ կուսակցական, սովետական ղեկավար աշխատանքներ տանելուց հետո, այժմ ղեկավարում է ինստիտուտի գյուղատնտեսության և բուսաբուծության ամբիոնը:

ԽՈՇՈՐ անասնաբուծության ամբիոնում ենք, դոցենտ Գ. Ապինյանի մոտ: Թիֆլիսի պոլիտեխնիկական ինստիտուտի այն սաներից է նա, որ առաջինն արձագանքեց Ռ. Դաշտոյանի՝ Հայաստան գալու, քայքայված հայրենի երկրի տնտեսության վերականգնմանը մասնակցելու կոչին: Աշխատելով Հայաստանի նորաստեղծ կոլտնտեսություններում, շրջանների անասնապահական ֆերմաներում, նա զգալի գործ է կատարել փորձնական անասնաբուծության բնագավառում: Բավական է միայն հիշել, Բայբուրթյան-Ապինյան մեթոդը, որը համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսում արժանացավ Ոսկե մեդալի:

ՄԻՈՒԹՅԱՆ բարձրագույն ուսումնական հաստատությունների լավագույն թանգարաններից մեկում ենք— ինստիտուտի անատոմիայի թանգարանում, որն ունի ավելի քան 100 էքսպոնատ: Կենդանական աշխարհի բոլոր դասերի կմախքներ, խրտվիլակներ, առանձին օրգաններ, անոմալիկ ձևեր... Թանգարանի հարստացման, կահավորման գործում մեծ երախտիք ունեն Յ. Իզմայիլովը, Կ. Դալը, Ռ. Հովհաննիսյանը: Վերջինս վեցերորդ տարին է, ինչ թանգարանի վարիչն է: Ամենուրեք նկատելի է իր գործը սիրող, բարեխիղճ, սրտացավ մարդու ձեռքը, ճաշակը: 1946 թ. պրոֆեսոր Սմիրենսկու ղեկավարությամբ, նա պաշտպանել է թեկնածուական դիսերտացիա և 1966 թվականից իր տան պես հոգում է կարիքներն այս թանգարանի, որով հիանում են ո՛չ միայն մեր Միության, այլև արտասահմանյան այցելուները:

— Տեղ չունենք, թե չէ թանգարանը կարելի է շատ ավելի հարստացնել,— սրտացավությամբ ասում է Հովհաննիսյանը:

Այսպես, Միության լավագույն գիտնականները եկել, իրենց արժանի փոխարինողների մի մեծ բանակ են ստեղծել, օգնել անասնապահ-անասնաբույժների պատրաստմանը:

— Այժմ մեր ինստիտուտը ջանում է փոխհատուցել ստացածի համար, պարտական չմնալ,— ասում է ինստիտուտի կուսկոմիտեի քարտուղար, դոկտոր-պրոֆեսոր Գ. Գրիգորյանը,— նրա սաները, բացի Հայաստանից աշխատանքի են մեկնում Միության ամենատարբեր վայրերը: Փոխվել, այլ բնույթ են ստացել այժմ մեր ինստիտուտի ինտերնացիոնալ կապերը: Այն հանրապետությունները, որոնց կադրերի դարբնոցն էր մեր ինստիտուտը, այժմ ունեն իրենց համանուն ուսումնական հաստատությունները, որոնց պրոֆեսորա-դասախոսական կազմի զգալի մասը երևանյան սաներն են, և այժմ նրանց շնորհալի ուսանողները թեկնածուական, դոկտորական դիսերտացիաներ պաշտպանելու են գալիս մեզ մոտ: Փոխադարձաբար ընդդիմախոսում են մեր և Միության այլ հանրապետությունների գիտնականները: Նամակագրական սերտ կապ կա նրանց միջև. հանդիպում են նրանք միջազգային գիտական կոնգրեսներում, միութենական, միջհանրապետական կոնֆերանսներում, գիտական համագումարներում, մտքեր փոխանակում, խորհրդակցում, համոզում և համոզվում, օգնում իրար...

Անշուշտ, հնարավոր չէ մեկ ակնարկում հիշատակել մեր հանրապետության ժողովրդական տնտեսության զարգացման մարզում կարևոր նշանակություն ունեցող այս ինստիտուտում աշխատող բոլոր երախտավորներին. չմոռանանք միայն ասել, որ նրանց համատեղ աշխատանքի շնորհիվ ինստիտուտը երբեք անգամ լայն ցուցադրմամբ մասնակցել է ՍՍՀՄ ժողովրդական տնտեսության նվաճումների ցուցահանդեսին, շատ աշխատակիցներ արժանացել են դիպլոմների, ոսկե և արծաթե մեդալների, դասախոսներից շատերը պարգևատրվել են կառավարական շքանշաններով ու մեդալներով:

ԷՄՄԱ ՍԱՐՈՅԱՆ

# ՆԱՄԱԿՆԵՐ ԵՎ ԹՂԹԱԿՑՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ՊԱՀՊԱՆԵՆՔ ԼԱՎ ԱՎԱՆԴՈՒՅԹՆԵՐԸ

Հայաստանի կուսակցական կազմակերպությունները սովետական մարդկանց ինտերնացիոնալ դաստիարակության ուժեղացման և ժողովուրդների բարեկամության ամրապնդման վերաբերյալ կուսակցության XXIV համագումարի պահանջների կատարման համար անցկացնում են բազմաբնույթ միջոցառումներ, դրանք ծառայեցնում ժողովրդական տնտեսության հետագա առաջընթացին, աշխատավորների բարեկեցության բարձրացմանը։ Այս ասպարեզում կուսակազմակերպությունների կուտակած դրական փորձի ընդհանրացմանն էր նվիրված վերջերս ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի ու ագիտացիայի բաժնի և ՀԿԿ Թումանյանի շրջկոմի նախաձեռնությամբ Ալավերդի քաղաքում անցկացված հանրապետական փնջային սեմինար-խորհրդակցությունը։ Սեմինարի մասնակիցները, որոնց թվում էին կուսշրջկոմների քարտուղարներ, պրոպագանդայի և ագիտացիայի բաժինների վարիչներ, շրջանային թերթերի խմբագիրներ, կուլտուրայի բաժինների վարիչներ և խոշոր կուսակազմակերպությունների քարտուղարներ, մեծ հետաքրքրությամբ ունկնդրեցին քննարկվող հարցի առթիվ ՀԿԿ Թումանյանի շրջկոմի առաջին քարտուղար Բ. Գյողալյանի զեկուցումը։

Ինտերնացիոնալ դաստիարակությունը պահանջում է գործադրել ամենօրյա, տևական ջանքեր, ժողովուրդների բարեկամության ամրապնդման միջոցառումներն անցկացնելիս ցուցաբերել դիֆերենցված մոտեցում, հաշվի առնել Սովետական Միության ազգերի ու ազգությունների առանձնահատկությունները, տվյալ շրջանում, ձեռնարկությունում ու տնտեսությունում ապրող նրանց ներկայացուցիչների նախասիրությունները և սովորույթները։ Զեկուցողը և ելույթ ունեցողները ներկաներին ծանոթացրին ինտերնացիոնալ դաստիարակության ասպարեզում կուսկազմակերպությունների կիրառած ձևերին ու մեթոդներին, կուտակած հարուստ փորձին։ Այդ աշխատանքում ուրույն տեղ է գրավում ՍՍՀՄ կազմավորման 50-ամյակի առթիվ միութենական հանրապետություններին նվիրված օրերի, շաբաթի ու ամսվա անցկացումը հանրապետության շրջաններում։ Դրանք առիթ են ծառայել, որպեսզի աշխատավորները ծանոթանան տվյալ հանրապետության տնտեսական և կուլտուրական կյանքին, նվաճումներին ու զարգացման հեռանկարներին, ունկնդրեն տարբեր ազգությունների ներկայացուցիչների ելույթները, ինտերնացիոնալ ծրագրով կազմված համերգները։ Եղբայրական հանրապետություններին նվիրված տոնահանդեսների ընթացքում արտադրական կոլեկտիվները հյուրընկալել են նաև նրանց պատվիրակություններին, նրանց հետ միասին հիմնել բարեկամության ծառուղիներ, այգիներ։

Զեկուցողը, Բ. Գյողալյանը, նշեց, որ կուսակազմակերպությունների հետևողական գործունեության շնորհիվ շրջանում հաղթահարվել են ազգային սահմանափակվածության ու սնապարծության, տեղայնության ու նացիոնալիզմի երևույթները։ Ինտերնացիոնալիզմը խոր արմատներ է ձգել մարդկանց գիտակցության մեջ, այն վառ կերպով դրսևորվում է Ալավերդի քաղաքում ամեն տարի անցկացվող բարեկամության երեկոներում, մարդկանց աշխատանքում ու կենցաղում։ Վաղուց ի վեր ասպարեզից դուրս են մղվել հնավանդ վնասակար սովորույթներն ու ծեսերը, դրանց փոխարինել են մեր առօրյային, սոցիալիստական համակեցությանը բնորոշ սովորույթներ ու ավանդույթներ։

Սեմինար-խորհրդակցությունում նշվեց, որ հանրապետության աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության գործում կարևոր դեր են խաղում նրանց հանդիպումները եղբայրական հանրապետությունների արտադրական կոլեկտիվների պատվիրակությունների, արվեստի ու գրականության գործիչների հետ։ Վերջին մեկ տարում անցկացվել են այդ բնույթի զանազան միջոցառումներ, ինչպես օրինակ, Թումանյանի շրջանում՝ պոեզիայի օրեր, Իջևանի շրջանում՝ արվեստի շաբաթ, Դիլիջանում՝ կինոլեկտորիում, Նոյեմբերյանի շրջանում՝ եղբայրության օրեր, Նաիրիի շրջանում՝ ժողովուրդների բարեկամության երեկոներ և այլն։ Առանձնապես հետաքրքրական են եղել ակումբներում ու մշակույթի տներում կազմակերպված եղբայրական հանրապետությունների ժողովրդական տրնտեսության նվաճումներն արտացոլող ցուցահանդեսները։ Հայաստանի, Ադրբեջանի և Վրաստանի հարևան շրջանների կուսակցական և կոմերիտական կազմակերպություններն անցկացնում են ժողովուրդների բարեկամության ամրապնդմանը նպաստող համատեղ միջոցառումներ՝ գիտական նստաշրջաններ, մերձեցման ու երիտասարդական երեկոներ և այլն։

Ինտերնացիոնալ դաստիարակությունը ենթադրում է միջոցառումների մի ամբողջ կոմպլեքս։ Այն ընդգրկում է կուսկազմակերպությունների պրոպագանդիստական ու ագիտացիոն ողջ գործունեությունը՝ կուսակցական ու կոմերիտական ուսուցման սիստեմը, դասախոսական պրոպագանդան ու ագիտացիոն-մասսայական աշխատանքը։ Սեմինար-խորհրդակցությունում ելույթ ունեցողները նշեցին, որ կուսկազմակերպություններն ու կուլտուր-լուսավորական հիմնարկությունները հաճախակի են կազմակերպում ժողովուրդների բարեկամության թեմաներով դասախոսություններ ու զրույցներ, ինտերնացիոնալ դաստիարակության համար օգտագործում գաղափարական աշխատանքի բազմազան ձևեր։

Սեմինար-խորհրդակցությունում ընդգծվեց այն իրողությունը, որ Սովետական Միության ժողովուրդները ինտերնացիոնալ դաստիարակության շնորհիվ ստեղծել են եղբայրական համագործակցության, փոխադարձ օգնության ու վստահության լավ ավանդույթներ, որոնք արդի ժամանակաշրջանում ավելի են զարգանում, ստանում նոր որակ ու բովանդակություն։ Այդ ամենը նրանք հիմնավորեցին տեղական կոնկրետ փաստերով, կուսկազմակերպությունների գործունեության կենդանի օրինակներով։

ՀԿԿ Կենտկոմի պրոպագանդայի և ագիտացիայի բաժնի վարիչ Կ. Դալլաքյանը, հանգամանորեն խոսելով աշխատավորների ինտերնացիոնալ դաստիարակության խնդիրների մասին, սեմինար խորհրդակցության մասնակիցների ուշադրությունը հրավիրեց ստեղծված լավագույն ավանդույթների ըստ ամենայնի օգտագործման ու զարգացման, դրանք կուսակցության կողմից երկրի առջև դրված նոր պահանջների կատարմանը ծառայեցնելու անհրաժեշտության վրա։ Հեղափոխական ու ինտերնացիոնալ դաստիարակության ավանդույթները՝ տոկունությունը, հանուն բարեկամության անձնազոհությունը և ուրիշ շատ դրական հատկանիշներ, ներկա սերնդի համար պետք է դառնան ոգեշնչման աղբյուր։

Հեղափոխական, ինտերնացիոնալ բարեկամության ավանդույթների հարուստ պատմություն ունի Ալավերդի քաղաքը։ Պղնձահանքերում և պղնձաձուլարանում վաղուց ի վեր կողք-կողքի աշխատում են բանվորների ինտերնացիոնալ կոլեկտիվներ։ Տարբեր ազգերի ներկայացուցիչներն այստեղ միասին են կրել իրենց ուսերին նախահեղափոխական կյանքի դժվարությունները, միասին են պայքարի դրոշ պարզել՝ հանուն իրենց ազատության ու նոր կյանքի։

Սովետական կարգերի հաստատումից հետո հանքագործ ու պղնձագործ բանվորների ինտերնացիոնալ բարեկամությունն է՛լ ավելի ամրապնդվեց։ Նրանց համատեղ ջանքերով արմատապես վերակառուցվեց պղնձաձուլական գործարանը և, իրեն միավորելով մի քանի ձեռնարկություններ, վերածվեց ժամանակակից տեխնիկայով հագեցած հզոր կոմբինատի։ Բազմազգ կոլեկտիվ ունեցող այս ձեռնարկությունն իր արտադրանքն է ուղարկում եղբայրական յոթ հանրապետություններ ու սոցիալիստական մի շարք երկրներ, փոխադարձաբար օգնություն ստանում նրանցից։ Հատկանշական է, որ կոմբինատի վերակառուցման, Սովետական Միությունում եզակի գերհզոր էլեկտրաձուլման և արտացոլիչ վառարանների կառուցման ժամանակ նրա մարդկանց օգնության ձեռք մեկնեցին մի շարք հանրապետությունների մետալուրգիական ձեռնարկություններ ու գիտահետազոտական ինստիտուտներ։

Ընկ. Դալլաքյանը նշեց, որ ժողովուրդների բարեկամությունը ոչ միայն բարոյական, այլև նյութական կատեգորիա է։ Մեր երկրի առաջընթացը ՍՍՀՄ բոլոր ժողովուրդների բարեկամության նյութականացված արտահայտությունն է։ Այդ բարեկամության արգասիք են խամ ու խոպան հողերի նվաճումը, խոշոր հիդրոէլեկտրակայանների, Տոլյատի քաղաքի ավտոգործարանի, Արփա—Սևան թունելի և ուրիշ շատ խոշոր կառույցների շինարարությունը։

ՍՍՀՄ, այդ թվում Հայաստանի, ցանկացած անկյունում կարելի է հանդիպել պատմության մեջ ցայսօր չտեսնված բարեկամական համագործակցության վառ օրինակի։ Դրանցից մեկի մասին պատմեց Կիրովականի քիմիական մանրաթելի գործարանի կուսկոմիտեի քարտուղար Ս. Սարուխանյանը։ Այս ձեռնարկությունը ինտերնացիոնալ ջանքերի կոնկրետ արդյունք է։ Այն կառուցվել է եղբայրական հանրապետությունների նախագծային ինստիտուտների կազմած նախագծերով։ Շինմոնտաժային աշխատանքներին մասնակցել են 12 հանրապետու-

*թյունների և մարզերի 23 ազգությունների ներկայացուցիչներ, մոտ 100 մոնտաժային վարչություններ և շինարարական կազմակերպություններ։ Այժմ գործարանի հումքն ու օժանդակ նյութերն ստացվում են Միության ութ հանրապետությունների քաղաքներից, իսկ պատրաստի արտադրանքն առաքվում է Միության 126 քաղաքներ։*

*Մեր օրերում նոր բովանդակություն է ստացել սոցիալիստական մրցությունը, որը վաղուց ի վեր ընդլայնել է իր շրջանակները, դարձել ինտերնացիոնալ բարեկամության նոր ձևերի ու մեթոդների տարածման և արմատավորման, փոխադարձ օգնության լավագույն պայման։ Իր այս նոր դերով սոցիալիստական մրցությունը ծառայում է տնտեսական խնդիրների հաջող լուծմանը, հանրային արտադրության արդյունավետության բարձրացմանը։*

*Այս խնդիրները կոնկրետ օրինակներով պարզաբանեցին զեկուցողն ու ելույթ ունեցողները։ Ընկ. Գյոզալյանը նշեց, որ Թումանյանի շրջանի և հարևան հանրապետությունների ձեռնարկությունների և տնտեսությունների միջև ծավալված սոցիալիստական մրցությունը էապես նպաստում է բարեկամական ու տնտեսական կապերի ամրապնդմանը, հնարավորություն ընձեռում ընդօրինակել լավը և ուսանելին։ Այս տեսակետից ուշագրավ է Վրաստանի Զեստաֆոնի և Թումանյանի շրջանների մրցությունը, որը երկու տասնամյակից ավելի պատմություն ունի և ծայր է առել Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի ու Զեստաֆոնի ֆերոձուլվածքների գործարանի մրցության հիման վրա։ Այդ մրցությունն ու բարեկամությունը երկու կողմերի համար էլ օգտակար ու շահավետ են։ 1972 թ. Շնողի սովխոզում Զեստաֆոնից բերած խաղողի վազը տվեց առաջին բերքը, Ալավերդու պղնձարջասպն արժանացել է մրցակիցների բարձր գնահատականին։ Զեստաֆոնի կաբելի գործարանն աշխատում է Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի արտադրած պղնձով։ Շրջանի սոցիալիստական մրցության մեջ հաղթած տնտեսությանը տրվում է Զեստաֆոնի կուսշրջկոմի և շրջսովետի գործկոմի փոխանցիկ կարմիր դրոշը։ Ավանդական մրցության մեջ են նաև «Ախթալշին» և եղբայրական Ուկրաինայի Կիևի մարզի «Բելոցերկովքիմշին» շինարարական տրեստները։ 1972 թ. շրջանի յոթ կոլեկտիվներ սոցիալիստական մրցության մեջ են մտել եղբայրական հանրապետությունների համասեռ ձեռնարկությունների ու տնտեսությունների հետ։*

*Սոցիալիստական մրցությունը բարեկամական և տնտեսական կապերի ամրապնդման լավագույն միջոց է նաև Ղափանի և եղբայրական Ադրբեջանի Ջագիլարի, Քաջարանի պղնձամոլիբդենային կոմբինատի և Կոլա թերակղզու Սևերոնիկել կոմբինատի, Նոյեմբերյանի և Ադրբեջանական ու Վրացական հանրապետությունների Ղազախի ու Մարնեուլի շրջանների, Ստեփանավանի և Կրասնոդարի երկրամասի Տիմոշևսկի շրջանների, Դիլիջանի և Բորժոմի, Նոյեմբերյանի շրջանի Շավարշավան, Ոսկեպար, Դոստլու, Ղալաչա և Ղազախի շրջանի Դաշսալահլի, Աքսիբուրա, Կայմախլի և Քյամուրլա գյուղերի տնտեսությունների համար։ Մրցակիցներն իրար օգնում են սերմացուով, տեխնիկայով, անասուններով, կերով, ծանոթանում միմյանց նվաճումներին ու առաջավոր փորձին։ Ստեփանավանցիները սննաժի պատրաստման տեխնոլոգիան սովորել են իրենց կրասնոդարցի մրցակիցներից։*

*Խորհրդակցությունում շեշտվեց այն ճշմարտությունը, որ ինտերնացիոնալ դաստիարակությունը պետք է ծառայի սովետական մարդկանց կողմից իրենց ինտերնացիոնալ պարտքի կատարմանը։ Այդ նշանակում է համատեղ ջանքերով ավելացնել նյութական բարիքների արտադրությունը, հաջողությամբ լուծել ՍՄԿԿ XXIV համագումարի մշակած տնտեսական շինարարության խնդիրները։*

*Ալավերդու պղնձաքիմիական կոմբինատի ինտերնացիոնալ կոլեկտիվը իններորդ հնգամյակի առաջին տարվանից սկսած զգալի չափով ավելացրել է թանկարժեք պղնձի արտադրությունը։ 1934 թ. 66 և 1946 թ. 600-ի փոխարեն այժմ շրջանում կա երեք հազար հեկտար պտղատու և խաղողի այգի։ 1940 թ. համեմատությամբ գրեթե երեք անգամ ավելացել է հացահատիկի բերքատվությունը, կրկնակի անգամ՝ անասունների գլխաքանակը, մսի և կաթի արտադրությունը։ Ինտերնացիոնալ պարտքի կատարման լավագույն օրինակներ են տալիս Ղափանի, Նոյեմբերյանի, Ստեփանավանի շրջանների ինտերնացոնալ կոլեկտիվները։*

*Սովետական մարդկանց ինտերնացիոնալ դաստիարակության և ժողովուրդների բարեկամության ամրապնդման ասպարեզում վճռական դեր է խաղում մամուլը։ Մամուլի էջերում լուսաբանվում են կոմկուսակցության ազգային քաղաքականության նվաճումները, տարբեր ազգերի ու ժողովուրդների մերձեցման ու բարեկամության, սոցիալիստական մրցության ձևերն ու մեթոդները։ Այս խնդիրներն արժանացան խորհրդակցության մասնակիցների առանձնահատուկ ուշադրությանը։ Քննարկվող հարցի կապակցությամբ շրջանային մամուլի դերի մասին ուշագրավ ելույթ ունեցավ Նոյեմբերյանի շրջանի «Ծիածան» թերթի խմբագիր Ջ. Եգանյանը։ Նա նշեց, որ թերթը պարբերաբար հոդվածներ, նպատակային էջեր, համարներ է նվիրում ժողովուրդների բարեկամությանը, նամակով կապեր է հաստատել բոլոր հանրապետությունների հեռագրական գործակալությունների հետ և ստացած հարուստ նյութերի հրապարակմամբ շրջանի աշխատավորներին հաղորդակից դարձրել եղբայրական հանրապետությունների արտադրական ու կուլտուրական նվաճումներին։*

*Թումանյանի շրջանային «Լոռի» թերթը բարեկամությանը նվիրված համարներ է փոխանակել Վրացական ՍՍՀ Զեստաֆոնի շրջանային «Լենինելի», Լատվիական ՍՍՀ Էլգավայի շրջանային «Դարբա ուզվարա» («Աշխատանքի հաղթանակ»), Եվպատորիայի քաղաքային «Եվպատորսկայա զդրավնիցա» թերթերի հետ, ընթերցողներին հարուստ նյութ մատուցել եղբայրական հանրապետությունների բազմաբովանդակ կյանքի մասին։*

*Սեմինար-խորհրդակցության մասնակիցները ունկնդրեցին նաև Դսեղի սովխոզի կուսկոմիտեի քարտուղար* **Ա. Անտոնյանի** *զեկուցումը՝ ըստ բնակության վայրի տարվող քաղաքական-դաստիարակչական աշխատանքի մասին։ Այս ասպարեզում կուսկազմակերպության ձեռք բերած հաջողությունն այն է, որ գյուղը բաժանել է միկրոթաղամասերի, ագիտացիոն-մասսայական աշխատանքի արդյունավետության նպատակով հայցում է գյուղի մյուս կուսկազմակերպությունների (դպրոցի, արտադրական ձեռնարկությունների) օգնությունը, օգտագործում նրանց կոմունիստների ուժերը։*

*Սեմինար-խորհրդակցության գլխավոր արդյունքը ինտերնացիոնալ դաստիարակության և ժողովուրդների բարեկամության ամրապնդման ասպարեզում ձեռք բերած հաջողությունների ու ստեղծված ավանդույթների ընդհանրացումն էր, լավագույն ձևերի ու մեթոդների բացահայտումը։ Խորհրդակցությունը հույժ անհրաժեշտ համարեց շարունակել ու կատարելագործել դրանք, հայտաբերել ու կիրառել նորերը, բարձրացնել ինտերնացիոնալ կապերի ընդլայնմանն ու բարեկամության ամրապնդմանը նվիրված միջոցառումների բովանդակությունը։*

Ա. Մ. ՍԱՔԱՆՅԱՆ



## ՀԱՄԱՌՈՏ ԱՆՈՏԱՑԻԱ

### ՄԻՈՒԹՅՈՒՆԸ 50 ՏԱՐԵԿԱՆ Է

Պատմական գիտությունների դոկտոր Վ. Մ. Շապկոն աշխարհում առաջին բազմազգ սոցիալիստական պետության ստեղծմանն է նվիրել իր *Միությունը 50 տարեկան է* գիրքը: Այն հրատարակել է Մոսկվայի քաղաքական գրականության հրատարակչությունը:




Գրքում համառոտակի լուսաբանված են Սովետական Միության կազմավորման, զարգացման ու ամրապնդման հիմնական փուլերը. այն բաղկացած է հետևյալ գլուխներից— *Սովետական հանրապետությունների միավորման ճանապարհին, ՍՍՀՄ կազմավորումը լենինյան ազգային քաղաքականության հաղթանակն է, Ժողովուրդների սովետական համագործակցությունը սոցիալիզմի և կոմունիզմի հաղթանակի համար մղվող պայքարում*: Գրքում հանգամանորեն ցույց է տրված մեր երկրի ազգային պետական կառուցվածքի և ՍՍՀՄ կազմի մեջ իրավահավասար ժողովուրդների կամավոր միավորման համաշխարհային-պատմական նշանակությունը: Ընթերցողը որոշակի պատկերացում է ստանում, թե ինչպես Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո, կոմունիստական կուսակցության ղեկավարությամբ, Ռուսաստանում լուծվեց ազգային հարցը, վերացան ազգային ճնշման բոլոր ձևերը, պայմաններ ստեղծվեցին ժողովուրդների ինքնորոշման, կատարյալ իրավահավասարության, նրանց ազատ զարգացման ու մերձեցման համար: Սովետական հայրենասիրության, սոցիալիստական ինտերնացիոնալիզմի վառ արտահայտությունն ու արգասիքն էր մեր երկրի աննախընթաց հաղթանակը Հայրենական մեծ պատերազմում. «Մենք չենք կարող Սովետական Միությունը՝ մեր մեծ հայրենիքը, պատկերացնել առանց արևաշող Ուզբեկստանի,— գրել է ուզբեկ զինվորը ռազմաճակատից.— մեր արյամբ օծված Վոլգայի ափերը, Ուկրաինայի ու Բելոռուսիայի տափաստանները, այդ ամենը մեր հայրենիքն են»: Այսպես, մեր երկրի ամենատարբեր ծայրերում ապրող ժողովուրդները երկրի իսկական տերերն են զգում իրենց:



Адрес редакции. — Ереван-33, Барекамутян, 59-г.

Խմբագրության հասցեն՝ Երևան—33, Բարեկամության 59 գ.: Հեռախոսներ՝ գլխավոր խմբագրի տեղակալ և պրոպագանդայի բաժին՝ 27—25—29, պատ. քարտուղար և էկոնոմիկայի բաժին՝ 27—37—80, կուսակցական կյանք և կուլտուրայի բաժիններ՝ 27—19—80, գրական աշխատող՝ 27—60—64:

*ՎՖ 05611 Պատվեր 2253 Թղթի չափսը 70×108 1/16, Տիրաժ 14.300 Գինը 25 կոպ.*

*Տպ. 7 մամուլ, մամուլում 68840 նիշ: Ստորագրված է տպագրության՝ 15/I 1973 թ.*

*ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: Ալ. Խասհակյան փող. № 28:*

# ՁԵԶ ՀԱՄԱՐ ԸՆԹԵՐՑՈՂՆԵՐ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

ԲՐԵԺՆԵՎ Լ. Ի.— Լենինյան կուրսով: *Ճառեր և հոդվածներ. Երրորդ հատոր, Մ.,* Политиздат, *1972:*

ՍՈՒՍԼՈՎ Մ. Ա.— Հատընտիր: *Ճառեր և հոդվածներ, Մ.,* Политиздат, *1972:*

ԽՍԵՆ Մ. Մ.— Հանդիպումներ Լենինի հետ, *Մ.,* Политиздат, *1972:*

Տնտեսական գիտելիքների հիմունքներ *(կոլտնտեսականների և սովխոզների բանվորների համար). Մ.,* Политиздат, *1972:*

*Տնտեսագիտական կրթության համար նախատեսված ուսումնական այս ձեռնարկը պատրաստել են Կ. Ա. Տիմիրյազևի անվան ակադեմիայի դասախոսները:*

ՍՄԿԿ տնտեսական քաղաքականության հարցերը ժամանակակից փուլում *(կուսուսուցման և տնտեսագիտական կրթության սիստեմի համար: Մ.,* Политиздат, *1972:*

ԺԻՐՈՎՈՎ Բ.— «Լավ» և «վատ» սոցիալիզմի առասպելը: *Մ.,* Политиздат, *1972:*

*Մեր հակառակորդների գաղափարական զինանոցում ակներև տեղ է գրավում «լավ» և «վատ» սոցիալիզմի մասին առասպելը: Ըստ բուրժուական գաղափարախոսների և ռևիզիոնիստների «վատ» սոցիալիզմը աշխատավորների պայքարով ձեռք բերված իսկական, ռեալ սոցիալիզմն է, իսկ «լավը»՝ մարդասիրական դատողություններով պճնվող, այսպես կոչված՝ «դեմոկրատական» լիբերալ բուրժուական կարգն է:*

Էսթետիկայի հարցեր— *Հոդվածների ժողովածու. գիրք երկրորդ: Կազմեց Յա. Խաչիկյանը. «Հայաստան» հրատ., 1972:*

*Ժողովածուում զետեղված են՝ Էդ. Ջրբաշյանի «Վ. Ի. Լենինի «Փիլիսոփայական տետրերը» և գեղարվեստական պատկերի պրոբլեմը», Հ. Ապրեսյանի «Սոցիալիստական ստեղծագործության լենինյան էսթետիկան», Յա. Խաչիկյանի «Արվեստի նշանակության մի քանի հարցեր» և այլ հոդվածներ:*

Արվեստը և հասարակությունը: Գեղագիտությունն արտասահմանում: Գեղագիտությանը նվիրված վեցերորդ համաժողովը: *Մ.,* «Наука» *հրատ., 1972:*

ԴՈԼՈՍՈՎ Վ. Ֆ.— Փիլիսոփայության առարկայի խնդիրը մարքսիզմ-լենինիզմի կլասիկների ժառանգության մեջ: *Ուսումնական ձեռնարկ, Կրասնոյարսկ, 1971:*

ՕՐԺԵԽՈՎՍԿԱՅԱ Ֆ. Մ.— Երևակայական հանդիպումներ: *Պատմվածքներ Շումանի, Շոպենի, Լիստի, Վագների մասին: «Հայաստան» հրատ., 1972:*

ՀԵՄԻՆԳՈՒԵՅ Է.— Հրաժեշտ զենքին: *«Հայաստան» հրատ., 1972:*

ՄՈՒՀԱՄԵԴՋԱՆՈՎ Մ. Մ.— Երիտասարդությունը և հեղափոխությունը *(Միջազգային հեղափոխական երիտասարդական շարժման ակունքների մոտ), Մ.,* «Мысль» *հրատ., 1972:*

*Այս մենագրությունն արտացոլում է այն անլեգալ ու փառավոր ուղին, որով անցել է հեղափոխական երիտասարդությունը մինչև կոմունիստական երիտասարդական ինտերնացիոնալի ստեղծումը:*

Արևմտահայ գրողների նամականի: *Գրական ժառանգություն: Գիրք 6, պրակ 1: Կազմեց և ծանոթագրեց Գ. Աղնաուրյանը: Երևանի համալսարանի հրատ., 1972:*

*Ժողովածուում զետեղված են արևմտահայ ականավոր գրողներ Թլկատինցու, Գր. Զոհրապի, Տ. Կամսարականի, Լ. Բաշալյանի, Ե. Օտյանի, Ռ. Զարդարյանի, Ռ. Որբերյանի, Սիամանթոյի, Վ. Թեքեյանի, Զ. Եսայանի, Ռ. Սևակի և այլոց 300 նամակները:*

Գինը 25 կ.:



# ԳԻՏՈՒԹՅԱՆ ԵՎ ՏԵԽՆԻԿԱՅԻ ՆՈՐՈՒԹՅՈՒՆՆԵՐ

## ԳՐԱՄԵՔԵՆԱ՝ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐԻՆ

*Ֆիզիկոսների և մաթեմատիկոսների համար պատրաստված անգլիական գրամեքենան ունի երկու ստեղնաշար։ Դրանցից մեկը սովորական է, տառային, իսկ մյուսն ունի մաթեմատիկայում և ֆիզիկայում գործածվող նշաններ և սիմվոլներ։ Գրամեքենայի գլանիկը մեկ ստեղնաշարից տեղաշարժվում է մյուս ստեղնաշարի վրա։*

## ԳԻՏՈՒԹՅՈՒՆԸ՝ ԲԺՇԿՈՒԹՅԱՆԸ

*Վերջերս ԳԴՀ-ում սկսեց գործել մի լաբորատորիա, ուր պատրաստվում է ռևմատիզմի բուժման ներգործուն դեղամիջոց, որի համար հումք է ծառայում գայլաձկների տեսակներից մեկի թույնը։ Ուշագրավ է, որ գայլաձկները համեմատաբար շատ թույն են արտադրում, երբ նրանց ներվային կենտրոններն են մտցրվում միկրոէլեկտրոդներ, որոնց միջով բաց է թողնվում էլեկտրական թույլ հոսանք։*

## ԷԼԵԿՏՐՈՆԱՅԻՆ ԱՉՔ

*Ի տարբերություն մարդու, էլեկտրոնային այդ սարքը չի սխալվում առարկաների գույները որոշելիս։*

*Չհպվելով զննող առարկային, սարքը «շոշափում է» այն հեռավորության վրա, գունային ազդանշանները վերափոխելով էլեկտրական իմպուլսների, որոնք անցնում են ԷՀՄ-ի մեջ, ուր և մշակվում է ստացված ինֆորմացիան։ Սարքը տարբերակում է լույսն անդրադարձնող ծածկույթների, մետաղների, ողորկ թղթի, պլաստմասսայի և այլ առարկաների գույների նույնիսկ ամենաաննշան երանգները։ Սարքն արտադրվում է ԳՖՀ-ում։*

## ԼՈՒՍՆԱՀՈՂԻ ՄԱՍԻՆ

*Գիտնականները լուսնահողի մեջ ցրել են մի քանի տեսակ մանրէներ, որպեսզի զննեն դրանց վարքագիծը։ Այդ մանրէները արտակարգ կենսունակ են և կայուն անտիբիոտիկների նկատմամբ։ Գերազանց կերպով տանում են շրջապատող միջավայրի զանազան փոփոխությունները։ Ահա թե ինչու ամերիկյան մանրէագետները շատ զարմացան, երբ այդ մանրէները Լուսնի Անդորրության ծովի խառնարանից բերված լուսնահողում ցնելուց 10 ժամ հետո ոչնչացան։ Առավել զարմանալի է, որ որոշ բույսեր ավելի լավ են աճում լուսնահողի մեջ, քան երկրային հողում։ Մանրէների այդ տարօրինակ վարքագիծը բացատրվում է նրանով, որ լուսնահողում որոշ քանակությամբ քրոմի և այլ մետաղների առկայությունը նպաստում է առանձին բույսերի աճին, բայց և ոչնչացնում է մանրէները։*

## ՈՒՄ ՍԻՐՏՆ Է ԴԻՄԱՑԿՈՒՆ

*«Նյու-Յորք թայմս» թերթը հրապարակել է տվյալներ այն մասին, որ 1950 թվականից սկսած մինչև օրս 25—44 տարեկան ամերիկացի տղամարդկանց մահացությունը՝ սրտային հիվանդությունների պատճառով, աճել է 14 տոկոսով։ Նույն ժամանակաշրջանում սրտային հիվանդությամբ տառապող նույն տարիքի կանանց մահացությունը նվազել է 8 տոկոսով...*

## ՈՐՔԱՆ ՊԵՏՔ Է ՔՆԵԼ

*Ամերիկացի բժիշկ Ուեբը գտնում է, որ ժամանակակից մարդիկ քնում են ավելի քիչ, քան քնում էին մեր նախնիները։ Շատերը քնում են օրական 6—7 ժամ, մինչդեռ մեզ նախորդող երկու-երեք սերունդները քնում էին օրական ինը-տասը ժամից ոչ պակաս։*

*Ինչպես նկատել է Ուեբը, քնի ժամկետի կրճատումը չի վնասում առողջությանը։ Վերջին հետազոտությունները վկայում են, որ մեր երեխաները, 1917 թվականի նույն տարիքի խմբի հետ համեմատած, քնում են 90 րոպե պակաս։ Սակայն այդ հանգամանքը նրանց վրա բացասաբար չի անդրադարձել։ Ուեբի ասելով, ամեն մարդ ինքը պետք է որոշի՝ օրական քանի ժամ հատկացնել քնելուն, որպեսզի չնվազի իր աշխատունակությունը։*